Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1 ՀՈՒՆՎԱՐ · 1965
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 44-րդ ՏԱՐԻ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении
ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



## Բովանդակություն

# *Содержание*







# ՂԵԿԱՎԱՐԵԼ ԲԱՆԻՄԱՑ ԵՎ ԿՈՆԿՐԵՏՈՐԵՆ

Ավարտվեցին հաշվետու-ընտրական ժողովները ռեսպուբլիկայի սկզբնական պարտիական կազմակերպություններում: Դրանք անցան քաղաքական ու արտադրական վերելքի, պարտիայի և ժողովրդի աննախընթաց միասնության, պարտիայի և նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը բոլոր աշխատավորների սերտ համախմբվածության պայմաններում:

Սովետական ամբողջ ժողովրդի հետ ուս-ուսի՝ նոր բնագծեր է նվաճում նաև մեր ռեսպուբլիկայի աշխատավորությունը: Դրա վառ վկայությունը հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական ու տրանսպորտային կազմակերպությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատանքի արդյունքներն են:

Գերակատարելով 1963 թվականի ժողովրդական տնտեսության զարգացման պետական առաջադրանքներն ու սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները, ռեսպուբլիկայի աշխատավորներն անհրաժեշտ նախադրյալներ ստեղծեցին յոթնամյակի վեցերորդ տարին արտադրական բարձր ցուցանիշներով ավարտելու համար: Արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման տարեկան պլանը կատարվեց 103 տոկոսով: Չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին, ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները կատարեցին պետությանը հացահատիկի, մսի, կաթի և այլ մթերքների հանձնման ու վաճառքի պլանները: Պետական կապիտալ ներդրումների, ինչպես նաև անհատական բնակարանային շինարարության հաշվին շահագործման հանձնվեց ավելի քան 500 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն:

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները, կոմունիստներն ու բոլոր աշխատավորները հաշվետու-ընտրական կամպանիան դիմավորեցին իրենց պարտավորությունների կատարման գործում ձեռք բերած զգալի նվաճումներով:

Կոմունիզմի կառուցման բոլոր բնագավառներում նվաճած հաջողությունները աշխատավորության լայն զանգվածների ճիշտ կազմակերպման և նրանց ստեղծագործ կորովի նպատակամղման համար պարտիական կազմակերպությունների լարված գործունեության արդյունք են: Այս ճշմարտությունը ցայտուն դրսևորվեց պարտիական հաշվետու-ընտրական ժողովներում, ժողովներ, ուր կոմունիստներն օբյեկտիվ և ճիշտ գնահատական տվին իրենց ընտրած պարտիական ղեկավար օրգանների կատարած աշխատանքին:

Հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստների ուշադրությունը գլ-
խավորապես բևեռված էր ոչ այնքան կատարված աշխատանքի ու նվաճում-
ների գնահատման, որքան տնտեսական ու կուլտուրական շինարարության աս-
պարեզում դեռևս չլուծված հարցերի վրա: Եվ այդ բնական է ու հասկանալի:
Պարտիան սովորեցնում է՝ երբեք չարբենալ ձեռք բերածով, չռասգտանալ
դափնիների վրա, այլ ձեռնամուխ լինել մեր առջև ծառացած նոր, բազմաթիվ
հարցերի լուծմանը:

Ահա թե ինչու արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական ժո-
ղովները միահամուռ նշեցին, որ խոշոր թերություն է, երբ ժողտնտխորհի 32
արտադրական կոլեկտիվներ չեն կատարել համախառն արտադրանքի թողարկ-
ման պլանը: Ժողովներում ճիշտ նշվեց, որ կոմունիստներին և բոլոր աշխատա-
վորներին անհանգստացնում է այն հանգամանքը, որ 80 ձեռնարկությունների
վատ գործունեության հետևանքով 4,3 միլիոն ռուբլով թանկացել է թողարկված
արտադրանքը: Միայն խոտանից գոյացած կորուստները և ոչ արտադրողական
ծախսերը 1964 թվականի 9 ամիսներում կազմեցին 1627 հազար ռուբլի, հսկա-
յական չափերի են հասնում բանվորական օրերի կորուստները և աշխատուժի
հոսունությունը:

Գյուղական պարտիական կազմակերպություններին լրջորեն անհանգստաց-
նում է հացահատիկի պետական գնման պլանի թերակատարումը: Պարտիական
կազմակերպությունները չեն կարող չանհանգստանալ այն իրողությամբ, որ մի
քանի շրջաններում պակասեց խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը,
որոշ տնտեսություններում զգալի չափով նվազեց կովերի կաթնատվությունը:

Դեռևս անհանդուրժելի դանդաղկոտություն և ձգձգումներ են թույլ տրվում
կապիտալ ներդրումների իրացման, նոր կարողությունների շահագործման
հանձնման, ինչպես նաև բնակարանային ու կուլտուր-կենցաղային շինարա-
րության գործում: Սրանք թերություններ էին, որոնք չէին կարող լուրջ անհան-
գստություն չպատճառել յուրաքանչյուր կոլեկտիվի, առավել ևս՝ նրա պար-
տիական կազմակերպությանը: Պարտիական կազմակերպությունների հաշվետու-
ընտրական ժողովները, որոնք ընթացան կազմակերպված ու գաղափարական
բարձր մակարդակով, գործարար մթնոլորտում քննադատաբար վերլուծեցին
գործերի վիճակը յուրաքանչյուր ձեռնարկությունում, հիմնարկությունում և, կո-
մունիստների հսկայական ակտիվության պայմաններում, գործնական որոշում-
ներ ընդունեցին առաջադրված խնդիրները հաջողությամբ լուծելու համար:

Հաշվետու ժողովների բնորոշ կողմերից մեկն էլ այն էր, որ հարցերի
քննարկմանը մասնակցողներն արել են խիստ արժեքավոր և կոնկրետ առա-
ջարկություններ:

Գործարար մթնոլորտում անցավ Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարա-
նի պարտիական կազմակերպության հաշվետու-ընտրական կոնֆերանսը:
Երևելի և շատ նախաձեռնությունների հեղինակ է կոմունիստականի բարձր կո-
չում նվաճած այս գործարանի կոլեկտիվը: Ինչպես միշտ, հաշվետու ժամանա-
կաշրջանում ևս այստեղ հաջողությամբ են ընթացել գործերը: Ուշագրավն այն
է, որ համոզիչ փաստերով հիմնավորելով ձեռք բերված հաջողությունները՝ կո-
մունիստներն իրենց կոնֆերանսում հատկապես նշեցին առկա թերությունների
վերացման անհրաժեշտությունը: Պարտիական կոնֆերանսը հարկ համարեց
կոնկրետ միջոցառումներ կիրառել գործարանի նոր կարողությունների իրաց-



ման խոչընդոտների վերացման, ինչպես և ոչ արտադրական ծախսերը մինի-
մումի հասցնելու ուղղությամբ:

Աշխատանքային լուրջ նվաճումներով դիմավորեցին իրենց կոնֆերանսը
Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի կոմու-
նիստները: Հաղթահարելով տևական ետ մնալը, տեքստիլագործները՝ պարտիա-
կան կազմակերպությունների գլխավորությամբ, կարճ ժամանակամիջոցում
դուրս եկան ռեսպուբլիկայի առաջավոր կոլեկտիվների շարքը:

Հաշվետու ժամանակաշրջանում կոմբինատի պարտիական կազմակերպու-
թյան ու կոլեկտիվի լուրջ նվաճումը կոմբինատը շահութաբեր դարձնելն է: Բայց
կոմբինատում դեռևս հսկայական ռեզերվներ կան, որոնց խելացի օգտագոր-
ծումը մեծապես կնպաստի աշխատանքի արտադրողականության բարձրացմանն
ու ինքնարժեքի իջեցմանը:

Կազմակերպված, քննադատության ու ինքնաքննադատության պայմաննե-
րում անցան կոնֆերանսներն ու հաշվետու ժողովները նաև Երևանի
Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի, Կիրովականի Ա. Մյաս-
նիկյանի անվան քիմիական, Ղափանի պղնձահանքային կոմբինատների և այլ
պարտիական կազմակերպություններում: Այս ամենից հետևում է, որ սկզբնա-
կան պարտիական կազմակերպությունների անցած հաշվետու-ընտրական ժո-
ղովների բնորոշ առանձնահատկությունը նրանց բարձր կազմակերպվածու-
թյունն էր, սկզբունքային և գործարար քննադատությունը. դրսևորվեց կոմու-
նիստների բարձր պահանջկոտությունը պետական ու պարտիական կարգա-
պահության ամրապնդման, պարտիական կազմակերպությունների դերի հետա-
գա բարձրացման գործում:

Հաշվետու-ընտրական ժողովները մեկ անգամ ևս ցույց տվին այն դրույթի
բացարձակ ճշմարտությունը, որ յուրաքանչյուր ձեռնարկությունում, կոլտնտե-
սությունում ու սովխոզում կամ կուլտուրական հիմնարկությունում գործերի հա-
ջողությունն առաջին հերթին կախված է պարտիական հմուտ ղեկավարությու-
նից, մասսաների շրջանում տարվող կազմակերպական ու քաղաքական աշխա-
տանքների ճիշտ զուգակցումից, նրանց թափից ու մակարդակից:

Այդ բանում կարելի է համոզվել թեկուզ Բասարգեչարի **Կարմիր նոյեմբեր**
կոլտնտեսության օրինակով: Պարտիական կազմակերպության բանիմաց ղե-
կավարության և կադրերի ճիշտ տեղաբաշխման շնորհիվ երբեմնի ետ մնացող
այդ տնտեսությունն այս տարի հեկտարից ստացել է 18 ցենտներ հացահատիկ
և 23 ցենտներ ծխախոտ, կատարել է պետական մթերման և վաճառքի պլանը:

Կարելի է նման բազմաթիվ օրինակներ բերել: Սակայն, ինչպես երևաց
հաշվետու-ընտրական ժողովներում, դեռևս ոչ բոլոր պարտիական կազմակեր-
պություններն են կանգնած աշխատավոր մասսաների ղեկավարողի և ուղղու-
թյուն տվողի դիրքերում: Քիչ չեն օրինակները, երբ պարտիական կազմակեր-
պությունների բյուրոներն ու նրանց քարտուղարները հաշտվում են ձեռնար-
կության գործունեության մեջ տեղ գտած թերությունների հետ, ցուցաբերում
անճարակություն՝ հասունացած հարցերի լուծման գործում:

Կիրովականի մանվածքային ֆաբրիկան ինչպես 1963 թվականին, այնպես
էլ անցյալ տարի, չապահովեց պետական առաջադրանքների կատարումը: Ասոր-
տիմենտի հիմնական տեսակի՝ թելի արտադրության 9 ամսվա պլանը կատար-
վեց ընդամենը 89,2 տոկոսով: Ինչո՞ւ: Այս հարցին պատասխանեց հաշվետու-
ընտրական ժողովը: Ֆաբրիկայում ընկած է աշխատանքային կարգապահու-

թյունը: Մեծ չափերի են հասնում մանող բանվորների բացակայություններն ու ուշացումները, անբավարար է վարպետների ու ենթավարպետների պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, սոցիալիստական մրցությունը կրում է ձևական բնույթ, գործավարձով աշխատող բանվորների 20 տոկոսը չի ապահովում արտադրական նորմաների կատարումը, հաճախակի խախտվում է տեխնոլոգիական ռեժիմը, մեքենաների ու սարքավորումների նկատմամբ անփույթ ու անհոգի վերաբերմունքի պատճառով լինում են պարապուրդներ: Պարտիական կազմակերպության՝ այդ հարցերի լուծմանը վերաբերող որոշումները մնացել են թղթի վրա:

Պարտիական հաշվետու-ընտրական ժողովներում պարզվեց, որ վատ են գործել Կալինինի շրջանի Ղըլըդաշ, Վեդու շրջանի Ենգիջա գյուղերի կոլտնտեսությունների, Իջևանի շրջանի Ուլունթալա գյուղի միջնակարգ դպրոցի, Երևանի 26 կոմիսարների անվան շրջանի երկրորդ հեռակա դպրոցի և այլ պարտիական կազմակերպությունների բյուրոներն ու քարտուղարները:

Այն էական բազում թերությունները, որ բացահայտվեցին նշված պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում, թելադրում են անհրաժեշտ հետևություններ անել:

Մեր պարտիայի կյանքում, հանուն կոմունիզմի կառուցման նրա մղած պայքարում հսկայական է սկզբնական պարտիական կազմակերպությունների դերը: Նրանք գործում են այնտեղ, ուր անմիջականորեն ստեղծվում է կոմունիզմի նյութատեխնիկական բազան, ուր ձևավորվում են հասարակական նոր հարաբերությունները և դաստիարակվում է կոմունիստական ապագայի մարդը: Եվ, որպեսզի հաջողությամբ լուծվեն ՍՄԿՊ XXII համագումարի առաջադրած խնդիրները, անհրաժեշտ է ամեն կերպ ուժեղացնել սկզբնական պարտիական կազմակերպությունների ղեկավարությունը, նրանց տրվող օգնությունը:

Հայաստանի կոմունիստական պարտիայի կենտրոնական կոմիտեն վերջին ժամանակներս ընդունեց մի շարք գործնական որոշումներ պարտիական-կազմակերպական աշխատանքի վիճակը բարելավելու վերաբերյալ: Այդ որոշումներում նշված են պարտիական մի շարք կազմակերպությունների աշխատանքի կատարելագործման կոնկրետ ուղիները: Անհրաժեշտ է, որ պարտիական կոմիտեներն անշեղորեն իրագործեն դրանք, այդ մեծ չափով կբարձրացնի կազմակերպությունների մարտունակությունը:

Պարտիական կազմակերպությունների ինքնագործունեության ու նախաձեռնության զարգացման կարևոր նախադրյալներից մեկը լենինյան նորմերի և սկզբունքների անվերապահ պահպանումն է: Անհրաժեշտ է արմատախիլ անել հանձնարարված գործի նկատմամբ բյուրոկրատական, ձևական մոտեցման ամեն մի դրսևորում, վճռականորեն հանդես գալ ղեկավարման՝ լենինիզմի ոգուն խորթ մեթոդների դեմ:

Մեր պարտիայի համար չկա ավելի բարձր նպատակ, քան սովետական ժողովրդի կենսամակարդակի անշեղ բարձրացումը: Այդ կարևոր խնդրի իրականացումը պետք է գտնվի յուրաքանչյուր պարտիական կազմակերպության ուշադրության կենտրոնում: Արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման արմատական պրոբլեմների լուծման հետ միասին, որից առաջին հերթին կախված է ժողովրդի բարեկեցությունը, պարտիական կազմակերպությունները պարտավոր են ուշի-ուշով քննարկել և լուծել այն բոլոր հարցերը, որոնք ուղղակի կամ անուղղակի առնչվում են ժողովրդի կուլտուր-կենցաղային սպասարկման



հետ: Առևտրի և հասարակական սննդի կազմակերպումը, կանայան կուլտուր-լուսավորական և կոմունալ հիմնարկությունների գործունեության բարելավման և ցանցի ընդլայնման հարցերը, մանկապարտեզների ու մանկամսուրների շինարարության և շատ այլ հարցեր պետք է դառնան պարտիական կազմակերպությունների լուրջ հոգատարության առարկան:

Պարտիական կազմակերպությունների մարտունակության բարձրացման կարևոր նախապայմաններից է նաև նրա ղեկավար օրգանների և, հատկապես, քարտուղարի ճիշտ ընտրությունն ու դաստիարակումը: Պետք է գոհունակությամբ նշել, որ պարտիական կազմակերպությունների ղեկավար օրգանների և քարտուղարների ընտրությունը հաշվետու-ընտրական ժողովներում հիմնականում հաջողությամբ կատարվեց: Նկատելիորեն բարելավվել է պարտիական կազմակերպությունների քարտուղարների որակական կազմը: Պարտիական կազմակերպությունների 3711 քարտուղարներից 1711-ն ունեն բարձրագույն և թերի բարձրագույն, 1479-ը՝ միջնակարգ կրթություն: Արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական ու տրանսպորտային կազմակերպությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների պարտիական կազմակերպությունների քարտուղարների գերակշռող մասը ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի մասնագետներ են: Անցյալ տարիների համեմատությամբ զգալիորեն ավելացել է կանանց, բանվորների և կոլտնտեսականների թիվը պարտիական կազմակերպությունների քարտուղարների կազմում:

Սակայն կադրերի ճիշտ ընտրությունը՝ դա գործի մի մասն է միայն: Պակաս կարևոր չէ նրանց ուսուցման կազմակերպումն ու դաստիարակումը: Նոր ընտրված քարտուղարների կազմում կան մեծ թվով փորձված կազմակերպիչներ, սակայն չպետք է մոռանալ, որ պարտիական աշխատանքում ամեն տարի առաջ են քաշվում մեծ թվով երիտասարդներ, որոնք չունեն պարտիական աշխատանքի փորձ և անհրաժեշտ գիտելիքներ:

Բավական է նշել, որ հաշվետու-ընտրական վերջին ժողովներում առաջին անգամ սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարներ են ընտրվել 2355 կոմունիստներ կամ քարտուղարների ընդհանուր կազմը նորացվել է 63,5 տոկոսով: Այս հանգամանքը հրամայական պահանջ է ներկայացնում բոլոր քաղկոմներին և շրջկոմներին՝ հոգ տանել սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների և, մասնավորապես, նոր ընտրված քարտուղարների ուսուցման և որակավորման մասին:

Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման արդի պայմաններում, երբ անչափ աճել է մեր պարտիայի դերը, առանձնահատուկ նշանակություն են ստանում պարտիական ղեկավարության հետագա բարելավումը կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում, պարտիական ու պետական կյանքի լենինյան սկզբունքների և նորմերի հետևողական կիրառումը:

Հավատարիմ մնալով մեր պարտիայի լենինյան սկզբունքներին՝ ՍՄԿՊ Կենտկոմի 1964 թվականի նոյեմբերյան պլենումը որոշեց. «Կոմունիստական շինարարության գործում պարտիայի ու նրա տեղական օրգանների ղեկավար դերն ուժեղացնելու, յուրաքանչյուր մարզի, երկրամասի և ռեսպուբլիկայի տնտեսական ու կուլտուրական զարգացման խնդիրներն ավելի հաջող լուծելու նպատակով անհրաժեշտ համարել վերադառնալ պարտիական կազմակերպությունները և նրանց ղեկավար օրգանները տերիտորիալ-արտադրական հատկանիշով կառուցելու սկզբունքին, որը որպես կարևորագույն բաղկացուցիչ մաս,

մտել է պարտիայի XXII համագումարի ընդունած ՍՄԿՊ կանոնադրության մեջ»:

Կենտկոմի պլենումի որոշմամբ այն մարզերում, որտեղ պարտիական կազմակերպությունները բաժանվել էին արդյունաբերականի և գյուղականի, նորից վերամիավորվել են, երկրային, մարզային պարտիական կազմակերպություններում նորից ստեղծվել է պարտիական միասնական երկրամասային, մարզային կոմիտե. պլենումն անհրաժեշտ համարեց վերացնել արդյունաբերական արտադրական (զոնալ) կոմիտեները, իսկ կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչությունների պարտիական կոմիտեները վերակազմել պարտիայի շրջանային կոմիտեների:

ՍՄԿՊ Կենտկոմի անցյալ տարվա նոյեմբերյան պլենումի որոշումները ողջ պարտիայի, ամբողջ ժողովրդի հավանությանն արժանացան: ՀԿՊ Կենտկոմի 1964 թվականի նոյեմբերին տեղի ունեցած պլենումը, ելնելով ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումից, անհրաժեշտ գտավ ռեսպուբլիկայում կոլտնտեսային և սովխոզային արտադրական վարչությունների պարտիական կոմիտեները վերակազմել Հայաստանի կոմպարտիայի շրջանային կոմիտեների, դրանցում կենտրոնացնելով տվյալ շրջանի տերիտորիայում գտնվող բոլոր պարտիական կազմակերպությունների, այդ թվում արդյունաբերական ձեռնարկությունների և կառույցների կազմակերպությունների ղեկավարումը. վերացնել արդյունաբերական-արտադրական (զոնալ) պարտիական կոմիտեները, որոնք առաջ ստեղծվել էին ռեսպուբլիկայի գյուղական շրջանների տերիտորիայում:

Համաձայն պարտիայի Կենտկոմի պլենումի որոշման, ռեսպուբլիկայում անցկացվեցին պարտիայի շրջանային կոնֆերանսներ, ուր ընտրվեցին նոր շրջկոմներ: Տերիտորիալ-արտադրական սկզբունքով կառուցված պարտիայի շրջանային կոմիտեների առջև լուրջ և պատասխանատու խնդիրներ են դրված. նրանք կոչված են գլխավորելու սկզբնական պարտիական կազմակերպությունների, սովետական օրգանների, կոմերիտական ու արհմիութենական կազմակերպությունների աշխատանքը, նրանց միջոցով մոբիլիզացնելու բոլոր աշխատավորներին՝ կոմունիստական շինարարության խնդիրները հաջողությամբ կատարելու համար:

Պարտիայի շրջանային կոմիտեները պետք է բանիմաց ու կոնկրետորեն ղեկավարեն սկզբնական պարտիական կազմակերպություններին, ամեն կերպ բարձրացնեն նրանց մարտունակությունն ու կոմունիստների ավանգարդային դերը: Նրանք սկզբնական պարտիական կազմակերպությունների միջոցով բոլոր օղակներում պետք է լայնորեն ծավալեն կազմակերպական ու քաղաքական աշխատանքը և անդադրում պայքար տանեն նորանոր հաջողությունների հասնելու համար:

Ինչպես միշտ, այնպես էլ այսուհետև Հայաստանի կոմունիստները, հավատարիմ մնալով Լենինի մեծ գործին, անշեղ կկատարեն ՍՄԿՊ XX, XXI և XXII համագումարների որոշումներն ու անդուլ կմարտնչեն պարտիայի ծրագրի կենսագործման համար:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ


Ռ. ՄՈՎՍԻՍՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու


## ՊԱՅՔԱՐԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՊԱՅՔԱՐ Է ՀԱՆՈՒՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ

*Պատերազմի և խաղաղության հարցը արդիականության ամենահրատապ պրոբլեմն է, ժամանակակից համաշխարհային քաղաքականության առանցքային հարցը: Մարդկության պատմության ընթացքում պատերազմների կանխման և խաղաղության պահպանման հարցը երբեք այնքան սուր բնույթ չի կրել և միլիոնավոր մարդկանց այնպես չի հուզել, ինչպես այժմ: Տեխնիկայի աննախընթաց զարգացման շնորհիվ մեծապես աճել է պատերազմի կործանիչ ուժը. ջերմամիջուկային պատերազմը մարդկության համար մեծագույն վտանգ է դարձել, որն սպառնում է ոչնչացնել ոչ միայն հասարակության դարերով ստեղծած նյութական և հոգևոր բարիքները, այլև ամբողջ պետություններ ու ժողովուրդներ: Ռեակցիոն բուրժուազիան կապիտալիստական հասարակական սիստեմը վերջնական կործանումից փրկելու և սոցիալիզմը ոչնչացնելու հիմնական միջոցը պատերազմն է համարում և ամեն կերպ ձգտում է սանձազերծել այն: Մյուս կողմից, առաջ են եկել հասարակական-քաղաքական այնպիսի հզոր ուժեր, որոնք ի վիճակի են խափանելու համաշխարհային նոր պատերազմների սանձազերծումը և դրանով իսկ փրկելու մարդկությանը նոր արհավիրքներից:*

*Կարելի՞ է արդյոք կանխել պատերազմը, թե՞ այն ճակատագրական անխուսափելիություն է: Այդ հարցին ճիշտ պատասխան տալ հնարավոր է միայն պատերազմի ու խաղաղության հարցը գիտական վերլուծության ենթարկելով, պատերազմի և խաղաղության կողմնակիցների ուժերի հարաբերակցությունը բացահայտելով:*

### ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԸ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Պատերազմի հարցի ուսումնասիրությունն առաջին անգամ գիտական հողի վրա են դրել մարքսիզմի հիմնադիրները: Խորապես ուսումնասիրելով մարդկության ողջ պատմությունը, Մարքսն ու Էնգելսը ցույց են տվել, որ պատերազմը պատմական կատեգորիա է, հասարակական-սոցիալական մի երև-*

վույթ, որը ծագել է մասնավոր սեփականության առաջացման, հասարակության անտագոնիստական դասակարգերի բաժանվելու հետ միասին և լիովին կանհետանա դասակարգերի լիկվիդացման, անդասակարգ կոմունիստական հասարակարգի հաղթանակի պայմաններում:

Պատերազմն այս կամ այն դասակարգի և նրա շահերը պաշտպանող պետության քաղաքականության շարունակությունն է բռնի միջոցներով: Պատերազմի ծագումը պայմանավորված է սոցիալ-տնտեսական կարգի բնույթով: Հետևապես այն հատուկ է որոշ տնտեսական ու քաղաքական կարգերի: Պատերազմները ծագում են շահագործողական հասարակարգերում և պայմանավորված են արտադրության միջոցների մասնավոր սեփականությամբ: Ինչպես չկա ապադասակարգային քաղաքականություն, այնպես էլ չկա պատերազմ, որը չհետապնդի որոշակի դասակարգային նպատակ: Դրանով էլ որոշվում է պատերազմի բնույթը: Այն պատերազմները, որոնք տեղի են ունեցել աշխարհի վերաբաժանման, գաղութների ձեռքբերման, ժողովուրդների ճնշման ու թալանի, նրանց ստրկացման համար, ուղղված են աշխատավորների դեմոկրատական ազատությունների և իրավունքների դեմ, եղել ու մնում են անարդարացի պատերազմներ: Այն պատերազմները, որոնց նպատակն է եղել ազգերի և ժողովուրդների սուվերենության, նրանց ազատության ու դեմոկրատական իրավունքների պահպանումը, կրել են ազգային-ազատագրական կամ ռևոլյուցիոն բնույթ, եղել և մնում են արդարացի պատերազմներ:

Կոմունիստները վճռականապես դեմ են անարդարացի պատերազմներին, որովհետև դրանք կասեցնում են հասարակության զարգացումը, ոչնչացնում արտադրողական հսկայական ուժեր և կուլտուրական արժեքներ, ուժեղացնում ճնշված դասակարգերի ու ժողովուրդների շահագործման լուծը: Կոմունիստները միշտ կողմնակից են եղել արդարացի ռևոլյուցիոն պատերազմներին և մնում են այդ տեսակետին: Նրանք ամեն կերպ աջակցում են նրանց ծավալմանն ու հաղթանակին:

Արդի դարաշրջանում պատերազմների ծագման աղբյուրը իմպերիալիզմի բուն էության մեջ է: Չնայած համաշխարհային արենայում կատարված արմատական փոփոխություններին, պատերազմների ծագման պատճառները չեն վերացել, որովհետև կապիտալիզմի զարգացումը տեղի է ունենում անհամաչափ կերպով, թռիչքաձև, որովհետև տնտեսական ճգնաժամերն ավելի են խորանում, ընդգրկում կապիտալիստական էկոնոմիկայի բոլոր ճյուղերը, վերածվում կապիտալիզմի համաշխարհային տնտեսական ու քաղաքական սիստեմի ճգնաժամի, որովհետև ավելի են սրվում հակասությունները կապիտալի և աշխատանքի միջև, մետրոպոլիաների և կախյալ ու գաղութային երկրների միջև, մոնոպոլիական տարբեր խմբավորումների ու տարբեր պետությունների միջև, կապիտալիզմի և սոցիալիզմի միջև: Այդ բոլորից բխում է, որ քանի մնում է իմպերիալիզմը, հետևապես և մնում է պատերազմների ծագման պոտենցիալ հնարավորությունը՝ ինչպես իմպերիալիստական պետությունների միջև, այնպես էլ իմպերիալիստական պետությունների և սոցիալիստական երկրների միջև:

Բայց պատերազմների ծագման պոտենցիալ հնարավորության առկայությունը դեռևս չի վկայում դրանց ճակատագրական անխուսափելիության մասին: ՍՄԿՊ XX համագումարը, վերլուծելով երկրորդ համաշխարհային պատերազմից հետո միջազգային կյանքում կատարված արմատական փոփոխու-



թյունները և ստեղծագործորեն զարգացնելով լենինիզմը, եկավ այն եզրակացության, որ արդի դարաշրջանում պատերազմները ճակատագրական անխուսափելիություն չեն, դրանք կարելի է կանխել: Այդ եզրակացությունները հավանության արժանացան կոմունիստական բոլոր պարտիաների կողմից, հաստատվեցին կոմունիստական և բանվորական պարտիաների 1957 և 1960 թվականների մոսկովյան խորհրդակցություններում, նոր հիմնավորում ստացան ՍՄԿՊ ծրագրում:

## ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԻ ԿԱՆԽՄԱՆ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ

Մարքս-լենինյան ուսմունքը իմպերիալիզմի դարաշրջանում պատերազմների անխուսափելիության մասին ելակետ ունի ոչ միայն նրա տնտեսական հիմքը, այլև դասակարգային, հասարակական ու քաղաքական ուժերի հարաբերակցությունը, մարդկանց կազմակերպվածության և գիտակցականության աստիճանը, որովհետև պատերազմը միայն տնտեսական երևույթ չէ:

Մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը դրանց անխուսափելիության մասին մարքս-լենինյան դրույթները բացարձակապես ճիշտ էին, որովհետև, նախ, իմպերիալիզմը համապարփակ համաշխարհային սիստեմ էր, երկրորդ, պատերազմով չշահագրգռված հասարակական ու քաղաքական ուժերը թույլ էին, չկազմակերպված և չէին կարող իմպերիալիստներին ստիպել հրաժարվել պատերազմներից: Դրությունն արմատապես փոխվել է այժմ և չնայած դեռևս մնացել է պատերազմների ծագման տնտեսական հիմքը, սակայն միջազգային կյանքում հասարակական-քաղաքական ուժերի հարաբերակցության մեջ այնպիսի արմատական փոփոխություններ են կատարվել, որ ռեալ հնարավորություն է ստեղծվել կանխելու պատերազմը:

Այդ ի՞նչ ուժեր են, որ հնարավորություն են տալիս կանխելու պատերազմը: Վճռականն ու գլխավորն այստեղ սոցիալիստական համաշխարհային սիստեմի առկայությունն է: Մարդկության մեկ երրորդը, վերացնելով կապիտալի իշխանությունը երկրագնդի տերիտորիայի ավելի քան մեկ երրորդ մասում, դարձել է տնտեսական, քաղաքական, ռազմական ու բարոյական այնպիսի հզոր ուժ, որ կարողանում է վճռական ազդեցություն գործել համաշխարհային զարգացման վրա և հարկադրել պատերազմամոլներին հաշվի նստել իր կամքի հետ: Խորտակվել է իմպերիալիզմի գաղութային սիստեմը: Նրա փլատակների վրա առաջ է եկել դեմոկրատական և սուվերեն պետությունների մի ամբողջ խումբ՝ հարյուր միլիոնավոր բնակչությամբ, հսկայական տերիտորիայով ու նյութական հարստություններով: Այն նույնպես ակտիվորեն պայքարում է պատերազմի դեմ հանուն խաղաղության: Երևան է եկել և հզոր գործոն դարձել խաղաղության կողմնակիցների համաշխարհային շարժումը, որ չկար առաջներում: Հզոր ուժ են դարձել և չտեսնված վերելք են ապրում բանվորական շարժումը կապիտալիստական երկրներում և ազգային ազատագրական շարժումները գաղութներում, որոնք նույնպես ուղղված են իմպերիալիզմի, պատերազմի դեմ: Աճել ու ամրապնդվել են կոմունիստական պարտիաները, որոնք գլխավորում են դեմոկրատական բոլոր ուժերի պայքարը հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի: Այդ ուժերի առկայությունը երաշխիքն է այն բանի, որ մինչև երկրագնդի վրա սոցիալիզմի լիակատար հաղթանակի

հասնելը, հասարակական կյանքից հնարավոր է բացառել համաշխարհային պատերազմը, կարելի է պահպանել խաղաղությունը։

ՍՄԿՊ XX համագումարի տեսական այդ եզրակացությունը հաստատվում է վերջին տասնամյակում պատերազմական կոնֆլիկտները կանխելու բազմաթիվ օրինակներով։ Պատերազմը կանխելու հնարավորության ցայտուն օրինակ էր իմպերիալիստական պետությունների կողմից զենքի ուժով Եգիպտոսի անկախության վերացման փորձի ձախողումը, Սիրիայի ազգային անկախության դեմ իմպերիալիստների ոտնձգության կանխումը, և վերջապես, Կուբայի անկախության դեմ արված ամերիկյան իմպերիալիզմի ինտերվենցիայի կանխումը։

Արդի դարաշրջանում պատերազմների կանխման և խաղաղության պահպանման գործը սերտորեն կապված է սոցիալիստական տարբեր սիստեմներ ունեցող երկրների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքի հետևողական կենսագործման հետ, որը սոցիալիստական երկրների արտաքին քաղաքականության գլխավոր գիծն է։

## ԽԱՂԱՂ ԳՈՅԱԿՑՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Արդի դարաշրջանի արմատական հարցերից մեկը՝ խաղաղ գոյակցությունը, հանդիսանում է սոցիալիստական ռևոլյուցիայի լենինյան տեսության անբաժանելի մասը։ Հայտնագործելով իմպերիալիզմի տնտեսական ու քաղաքական անհամաչափ և թռիչքաձև զարգացման օրենքը, Վ. Ի. Լենինը նշեց, որ սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը, հետևապես և սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցումը սկզբնապես հնարավոր է մեկ կամ մի քանի առանձին վերցրած երկրներում, աշխարհի մյուս պետություններում կապիտալիզմի պահպանման պայմաններում։

Սոցիալական հակադիր երկու սիստեմների խաղաղ գոյակցությունն ապրել է զարգացման բարդ պրոցես, ենթարկվելով որակական լուրջ փոփոխությունների։ Այն սովետական պետության արտաքին քաղաքականության գլխավոր ուղղությունն է եղել նրա ծագման օրվանից և այդպիսին էլ մնում է այսօր։ Խաղաղ գոյակցության այդ սկզբունքները պատմական անհրաժեշտություն են, արդի դարաշրջանում մարդկության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունը, որոնք շրջանցել հնարավոր չէ։

Բայց արդյո՞ք կոմունիստների համար առավել նպատակահարմար չէր հրաժարվել խաղաղ գոյակցության քաղաքականությունից և, ինչպես Բրեստի հաշտության ժամանակ «ձախ» կոմունիստներն էին առաջարկում, «համաշխարհային ռևոլյուցիայի հաղթանակի» նշանաբանով շարունակել պատերազմը միջազգային իմպերիալիզմի դեմ։ Կամ արդյո՞ք խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը լոկ տակտիկա չէ, ինչպես ցանկանում են պատկերացնել բուրժուական գաղափարախոսները, խաղաղության բոլոր հակառակորդները։ Խաղաղ գոյակցության քաղաքականությունը համապատասխանո՞ւմ է միջազգային կոմունիստական շարժման շահերին, թե՞ ուղղված է նրա դեմ։

Այդ հարցերի պատասխանը մեկն է՝ ո՛չ։ Եվ ահա թե ինչու։

1. Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, իսկ պրակտիկան հաստատում, որ ո՛չ մի ռևոլյուցիա, այդ թվում և կոմունիստական ռևոլյուցիան չի արտա-



հանվում, պատվերով չի կատարվում։ Սոցիալական ռևոլյուցիան ամենից առաջ ամեն մի երկրի ներքին զարգացման արդյունք է։ Սոցիալական ռևոլյուցիայի համար պետք է տվյալ երկրում առկա լինեն օբյեկտիվ և սուբյեկտիվ որոշակի պայմաններ։ Սոցիալիզմի երկրները բռնի ուժով չեն կարող սոցիալիստական ռևոլյուցիա արտահանել այն երկրները, որտեղ դրա համար ներքին ուժեր և պայմաններ չկան, նրանք չեն կարող բռնությամբ միջամտել մյուս երկրների ներքին գործերին՝ այնտեղ ռևոլյուցիա բորբոքելու համար։ Դա հակասում է մարքսիզմի ոգուն, նրա էությանը։ Տարօրինակն ու հրեշավորը հոդվածում, քննադատելով ձախ կոմունիստների արխիռևոլյուցիոն ֆրազները, Վ. Ի. Լենինը գրել է. «Գուցե հեղինակները կարծում են, որ միջազգային ռևոլյուցիայի շահերը պահանջում են հրե՞լ այն, իսկ այդպիսի հրումը կհանդիսանար միայն պատերազմը և ոչ երբեք հաշտությունը... Նման «թեորիան» կատարելապես հակառակ կլիներ մարքսիզմին, որը միշտ ժխտել է ռևոլյուցիաների «հրումը», որոնք զարգանում են ռևոլյուցիաներ ծնող դասակարգային հակասությունների սրության հասունանալուն համընթաց» (Հ. 27, էջ 66)։ Համաշխարհային սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի շանսը, նրա արագացման վրա ազդելը Լենինը տեսնում էր ոչ թե պատերազմի, այլ մեր երկրում սոցիալիզմի կառուցման և ամրապնդման մեջ, սոցիալիզմի ուժերի հզորացման մեջ։ Իսկ դրան կարելի է հասնել միայն խաղաղ գոյակցության պայմաններում։

2. Սոցիալական նոր հասարակարգի կառուցումը հնարավոր է միայն տնտեսական լայն շինարարության, արտադրողական ուժերի զարգացման, տնտեսական նոր կարգի ստեղծման միջոցով։ Սոցիալիստական ռևոլյուցիաները, պատմության բերումով, սկզբնապես հաղթանակել են համեմատաբար տնտեսապես քիչ զարգացած երկրներում, որը առավել ակտուալ է դարձնում շինարարական աշխատանքի անհրաժեշտությունը։ Կնշանակի սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումն անհնար է առանց երկարատև խաղաղության, ուրեմն և առանց խաղաղ գոյակցության քաղաքականության հետևողական կենսագործման։

3. Կոմունիստների վերջնական նպատակը կապիտալիզմի տապալումն ու կոմունիզմի կառուցումն է ամբողջ աշխարհում։ Դրա համար նրանք ոչ միայն բուրժուազիայի դեմ մղում են գաղափարական պայքար, խաղաղ պրոպագանդայի միջոցով տարածում իրենց գաղափարները, որոնց վերջնական հաղթանակի մեջ նրանք համոզված են, այլև կապիտալիզմի դեմ մղում են տնտեսական պայքար։ Կապիտալիզմի և սոցիալիզմի միջև համաշխարհային մասշտաբով մղվող պայքարի ելքը վերջ ի վերջո լուծելու են տնտեսական, քաղաքական և գաղափարական գործոնները։ Ժողովրդական մասսաներն ի վերջո ընտրելու և պաշտպանելու են այն հասարակարգը, որը ցույց կտա իր բազմակողմանի առավելությունները, որն ամենից լավ կբավարարի բնակչության համակողմանի աճող պահանջմունքները (տնտեսական, կուլտուրական, էսթետիկական և այլն)։ Հետևաբար սոցիալիզմի տնտեսական առավելությունների դրսևորումը արդի դարաշրջանում միջազգային ռևոլյուցիոն շարժման վրա ազդող գլխավոր գործոնն է։ «Այժմ միջազգային ռևոլյուցիայի վրա մենք մեր գլխավոր ներգործությունն անում ենք մեր տնտեսական քաղաքականությամբ...— ասել է Լենինը,— Այս ասպարեզն է փոխադրվել պայքարը համաշխարհային մասշտաբով։ Կլուծենք այդ խնդիրը և այն ժամանակ մենք կշահենք միջազգային

մասշտաբով հաստատապես ու վերջնականապես» (հ. 32, էջ 562)։ Սոցիալիստական երկրները կողմնակից են խաղաղ գոյակցությանը և ամեն կերպ պայքարում են նրա կենսագործման համար, որովհետև համոզված են արտադրության սոցիալիստական եղանակի վճռական առավելությունների, նրա վերջնական հաղթանակի մեջ։

4. Կոմունիստները խաղաղ գոյակցության հետևողական կողմնակիցներ են, վերջապես այն պատճառով, որ միայն խաղաղության պայմաններում կարելի է խուսափել ազգերի ընդհարումներից, պատմականորեն ստեղծված ազգային անտագոնիզմը փոխարինել ազգերի բարեկամությամբ, արդարացի կերպով լուծել ազգային հարցը, վերացնել այն հողը, որի վրա ծագում են ռազմական կոնֆլիկտները։ Խոսելով այդ մասին Վ. Ի. Լենինն ասել է. «Մեր փորձը մեր մեջ անխորտակելի համոզմունք է ստեղծել, որ տարբեր ազգերի շահերի նկատմամբ հսկայական ուշադրությունն է միայն, որ վերացնում է կոնֆլիկտների հողը, վերացնում է փոխադարձ անվստահությունը, վերացնում է ամեն տեսակի ինտրիգների երկյուղը, ստեղծում է, մանավանդ տարբեր լեզուներով խոսող բանվորների և գյուղացիների, այն վստահությունը, առանց որի բացարձակապես անհնարին են թե՛ ժողովուրդների խաղաղ հարաբերությունները և թե փոքրիշատե հաջող զարգացումն այն ամենի, ինչ արժեքավոր է արդի քաղաքակրթության մեջ» (հ. 33, էջ 456)։

Նկատի պետք է ունենալ նաև այն, որ սոցիալիստական երկրները, այդ երկրների աշխատավորները և իսկական ռևոլյուցիոներները իրենց վերջնական նպատակին հասնելու համար կարիք չունեն նվաճողական պատերազմների՝ ո՛չ հումքի աղբյուրների և ո՛չ էլ վաճառահանման շուկաների։ Սոցիալիստական ռևոլյուցիաները հաղթանակել են այնպիսի երկրներում, որոնք ունեն հսկայական տերիտորիա, բնական այնքան անսահման հարստություններ, որ լիովին բավական է լիակատար կոմունիստական հասարակության կառուցման համար։ Այստեղից էլ բուրժուազիայի կողմից պրոպագանդվող կարծեցյալ «կոմունիստական ագրեսիայի» կեղծ և շինծու բնույթը, խաղաղ գոյակցության քաղաքականությունը կոմունիստների տակտիկական մանյովր համարելու հիմնազուրկ լինելը։

Այս բոլորից հետևում է, որ՝ սոցիալիստական տարբեր սիստեմներ ունեցող երկրների միջև խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականությունը սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման կարևորագույն արտաքին-քաղաքական պայմանն է։ Նա բխում է ոչ միայն սոցիալիզմի երկրների շահերից, այլև համաշխարհային սոցիալիստական ռևոլյուցիայի շահերից, որովհետև նպաստում է ռևոլյուցիոն ուժերի զարգացմանն ու ծավալմանը բոլոր երկրներում։ նրանով կենսականորեն շահագրգռված են բոլոր ժողովուրդները։ Այդ քաղաքականության հետևողական կենսագործմամբ միայն կարելի է փրկել մարդկային քաղաքակրթությունը կործանումից, որին այնքան լուրջ կերպով սպառնում է ջերմա-միջուկային պատերազմի վտանգը։ Հենց այդ բոլոր պատճառներով էլ կոմունիստները խաղաղ գոյակցության քաղաքականության ամենակրքոտ և ամենահետևողական մարտիկներն են։

Իսկ ի՞նչ է տալիս խաղաղ գոյակցությունը։

Էկոնոմիկայի բնագավառում խաղաղ գոյակցությունը նշանակում է տնտեսական մրցություն սոցիալիզմի և կապիտալիզմի միջև։ Սոցիալիստական պետությունների խնդիրն է խաղաղ մրցության մեջ առավել լայնորեն օգտա-



գործելով սեփական սիստեմի առավելությունները՝ արագ կերպով զարգացնել արտադրողական ուժերը, բարձրացնել աշխատավորների կենսամակարդակը և դրանով իսկ ռևոլյուցիոն ազդեցություն գործել կապիտալիստական երկրների աշխատավորների վրա, նրանց համախմբել կոմունիզմի գաղափարների շուրջը։

Միջպետական հարաբերություններում խաղաղ գոյակցել, նշանակում է միջազգային վիճելի հարցերը լուծել բանակցությունների, խելացի կոմպրոմիսների միջոցով, հրաժարվել զենքի կիրառումից, կանխել ռազմական կոնֆլիկտներն ու պատերազմները, ձախողել տարբեր ժողովուրդների դեմ ուղղված իմպերիալիստական ագրեսիան ու ոտնձգությունները։ Խաղաղ գոյակցության սկզբունքը պահանջում է, որ պետությունները չխառնվեն միմյանց ներքին գործերին, զենքի միջոցով մյուս երկրների վզին չփաթաթեն իրենց հասարակական ու պետական սիստեմը, հարգեն յուրաքանչյուր ժողովրդի տերիտորիալ ամբողջականությունը, տնտեսական, առևտրական և հասարակական մյուս հարաբերություններում պահպանեն իրավահավասարության և սուվերենության սկզբունքը։

Գաղափարական բնագավառում մարքսիստ-լենինյանները խաղաղ գոյակցություն չեն ընդունում։ Այս բնագավառում չի կարող լինել ոչ մի կոմպրոմիս, ոչ մի հաշտություն, ոչ մի զիջում։ Գաղափարական բնագավառում շարունակվում է սկզբունքային պայքարը բուրժուազիայի և պրոլետարիատի միջև։ Կոմունիստները պայքարում են մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի անաղարտության, կոմունիզմի գաղափարները ամբողջ աշխարհում տարածելու համար։

Այդ բոլորը ցույց են տալիս, որ խաղաղ գոյակցությունը դասակարգային պայքարի հատուկ ձև է, որը կյանքի է կոչվել սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծումից հետո։ Դասակարգային պայքարի այդ նոր ձևի նպատակն է բանվոր դասակարգին և նրա դաշնակիցներին հնարավորություն տալ օգտագործել սոցիալիզմի առավելությունները՝ ավելի ուժգին ծավալելու դասակարգային և ազգային-ազատագրական պայքարը իմպերիալիզմի դեմ։ Դասակարգային պայքարի այդ նոր ձևը կարևոր դեր է կատարում կոմունիստական և բանվորական պարտիաների ստրատեգիան ու տակտիկան մշակելիս։

Արդի դարաշրջանում, երբ հսկայական մասշտաբի պայքար է ընթանում սոցիալիզմի ու կապիտալիզմի միջև, միջազգային կոմունիստական և բանվորական շարժման միասնության պահպանումն ու ամրապնդումը առավել կարևոր և սկզբունքային նշանակություն են ստանում։ Վ. Ի. Լենինը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հենց առաջին օրվանից բազմիցս զգուշացնում էր պարտիային, որ արևմուտքի և արևելքի բուրժուական պետություններն ամեն ինչ անելու են ընդհուպ մինչև զենքի կիրառումը՝ տապալելու սովետական իշխանությունը։ Լենինյան այդ ասույթները հանրահայտ են։ Սակայն խնդիրն այն է, թե ինչպե՞ս մեկնաբանել այն։ Խոսելով բուրժուական պետությունների կողմից սովետական ռեսպուբլիկայի վրա ռազմական հարձակման անխուսափելիության մասին, Լենինը նկատի ուներ կոնկրետ ժամանակաշրջանը, ուժերի կոնկրետ հարաբերակցությունը միջազգային ասպարեզում։ Եվ, իսկապես, ինչպես ցույց տվին 1918—1920 թթ. ինտերվենցիան, համաշխարհային երկրորդ պատերազմը և մինչ այդ եղած ռազմական մի շարք կոնֆլիկտներ, պատերազմը անխուսափելի էր։

Կարելի՞ է արդյոք դրանից ընդհանրացում անել բոլոր ժամանակների համար: Հասկանալի է, որ ո՛չ: Անտեսել այդ, նշանակում է չտեսնել հասարակական, քաղաքական այն ուժերը, որոնք ի վիճակի են կանխելու պատերազմներն արդի դարաշրջանում:

Պատերազմները, հատկապես համաշխարհային պատերազմներն անհամար աղետներ ու զրկանքներ են բերում աշխատավոր մարդկությանը: Հիշենք թեկուզ այն անլուր արհավիրքները, որոնք պատճառեցին համաշխարհային երկու պատերազմները ժողովուրդներին. որքա՜ն արտադրողական ուժեր, կուլտուրական արժեքներ են կործանվել, ինչպիսի վայրենացում և գազանացում է ապրել մարդկությունը:

Խոսելով համաշխարհային առաջին պատերազմի և նրա հետևանքների մասին Վ. Ի. Լենինն ասել է. «...եթե մեզ վիճակված է առանձնապես ծանր կերպով, մեզ համար առանձնապես սուր կերպով ապրել սովի տանջանքները, որն ավելի ծանր և ծանր է պատել մեզ, ապա մենք պետք է հաստատուն կերպով յուրացնենք, որ այդ աղետները ամենից առաջ և ամենից շատ այդ անիծյալ իմպերիալիստական սպանդի ժառանգությունն է, սպանդ, որը բոլոր երկրներում հասցրել է չլսված աղետների...» (հ. 27, էջ 526): Հենց այդ հետևանքների պատճառով էլ Վ. Ի. Լենինը նշում էր, որ համաշխարհային առաջին պատերազմից հետո անցումը դեպի սոցիալիզմ չտեսնված չափով տանջալի և ծանր է, ավելի երկար ժամանակ է պահանջվում:

Պատերազմը ձեռնտու է միայն իմպերիալիստներին: Ահա թե ինչու միայն խաղաղ գոյակցության պայմաններում կարելի է ամրապնդել սոցիալիզմի ու կոմունիզմի դիրքերը համաշխարհային մասշտաբով, միայն խաղաղ գոյակցությունն է նպաստավոր պայմաններ ստեղծում դասակարգային և ազգային-ազատագրական պայքարի ծավալման համար: Եթե այդպես չլիներ, էլ ինչո՞ւ իմպերիալիստներն ամբողջ աշխարհում կատաղի պայքար են մղում խաղաղ գոյակցության դեմ, ամեն կերպ ձգտում ստեղծել ռազմական կոնֆլիկտներ: Նրանք, ովքեր կանգնում են խաղաղ գոյակցության քաղաքականության ժխտման դիրքերում, ըստ էության ջուր են լցնում միջազգային իմպերիալիզմի ջրաղացին, հեռանում են մարքսիզմ-լենինիզմից:

Խաղաղ գոյակցությունը հնարավորություն է տալիս ամրապնդել կոմունիստական պարտիաների դիրքերը, ավելի սերտ դարձնել նրանց կապերը մասսաների հետ, պայմաններ է ստեղծում ընդհանուր դեմոկրատական պայքարը միացնելու սոցիալիզմի համար մղվող պայքարին՝ այն ծառայեցնելով վերջինիս: Այդ ավելի է ամրապնդում սոցիալիստական երկրների տնտեսական, քաղաքական և ռազմական դիրքերը, դրանով իսկ անհնար դարձնում իմպերիալիստական ոտնձգությունները ժողովուրդների ազատության դեմ:

Սովետական Միությունը կառուցելով կոմունիզմ և պաշտպանելով խաղաղությունն ամբողջ աշխարհում, դրանով իսկ սրբությամբ է կատարում պրոլետարական ինտերնացիոնալիզմի իր պարտքը համայն աշխարհի աշխատավոր մարդկության հանդեպ:



Ա. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Իրավաբանական գիտությունների թեկնածու

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ՕՐԵՆՍԴՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՈՐ ԷՏԱՊԸ

Մեծ նշանակություն է ստանում **սոցիալիստական իրավակարգի հետագա ամրապնդումը**, իրավական նորմերի կատարելագործումը, որոնք կարգավորում են տնտեսական-կազմակերպական և կուլտուր-դաստիարակչական աշխատանքը, նպաստում են կոմունիստական շինարարության խնդիրների լուծմանը և անհատի բազմակողմանի ծաղկմանը:

**ՍՄԿՊ ծրագրից**

Սոցիալիստական օրինականության անշեղ իրականացման սկզբունքը, որը բխում է սովետական պետության էությունից, է՛լ ավելի մեծ նշանակություն է ձեռք բերում մեր երկրում՝ կոմունիստական հասարակարգ կառուցելու ժամանակաշրջանում. իսկ այդ սկզբունքի կիրառումը հնարավոր է միայն այն դեպքում, երբ իրավական նորմերը ճիշտ են արտացոլում հասարակության զարգացման պահանջները, բխում են հասարակական առաջընթացի օբյեկտիվ օրինաչափություններից:

Սովետական քաղաքացիական օրենսդրությունը սովետական իրավունքի այն բնագավառն է, որը կարգավորում է ապրանքա-դրամական ձևի օգտագործմամբ պայմանավորված գույքային հարաբերությունները և դրանց հետ կապված անձնական ոչ գույքային հարաբերությունները, իսկ օրենքով նախատեսված դեպքերում նաև անձնական ոչ գույքային այլ հարաբերություններ:

Հասկանալի է, որ հասարակական հարաբերությունների այդքան լայն բնագավառ ընդգրկող օրենսդրությունը չէր կարող անփոփոխ մնալ մեր երկրում կոմունիզմ կառուցելու ժամանակաշրջանում:

***

Սովետական Միության կոմունիստական պարտիայի XX համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում մեծ աշխատանք կատարվեց սովետական օրենսդրության տարբեր բնագավառները վերանայելու և նորացնելու ուղղու-





թյամբ։ ՍՍՌ Միության Գերագույն սովետը 1961 թվականի դեկտեմբերի 8-ին հաստատեց ՍՍՌ Միության և միութենական ռեսպուբլիկաների քաղաքացիական օրենսդրության հիմունքները, իսկ 1963—1964 թվականներին միութենական ռեսպուբլիկաներն ընդունեցին իրենց նոր քաղաքացիական օրենսգրքերը։ Հայկական ՍՍՌ Գերագույն սովետը 1964 թվականի հունիսի 4-ին հաստատեց Հայկական ՍՍՌ քաղաքացիական օրենսգիրքը, որը գործողության մեջ դրվեց 1965 թվականի հունվարի 1-ից։

Սովետական քաղաքացիական օրենսդրության, այդ թվում միութենական ռեսպուբլիկաների քաղաքացիական օրենսգրքերի վերանայման ու նորացման անհրաժեշտությունը բխում էր նրանից, որ նախկինում գործող քաղաքացիական օրենսգրքերն ընդունվել էին մեր երկրում նոր տնտեսական քաղաքականության անցնելու ժամանակաշրջանում և իրենց բովանդակությամբ համապատասխանում էին այդ ժամանակաշրջանի գույքային հարաբերությունների կարգավորման պահանջներին։

Միութենական ռեսպուբլիկաների համար այն ժամանակ օրինակ ծառայեց Համառուսաստանյան ԿԳԿ-ի 9-րդ գումարման 4-րդ սեսիայում 1922 թ. հոկտեմբերի 31-ին ընդունված քաղաքացիական օրենսգիրքը, որը մշակվել էր Վ. Ի. Լենինի անմիջական մասնակցությամբ։

ՌՍՖՍՌ քաղաքացիական օրենսգիրքը մշակելիս Վ. Ի. Լենինը արդարադատության մինիստր Դ. Ի. Կուրսկուն գրել է. «...ձեռքից բաց չթողնել «քաղաքացիական» հարաբերություններին պետության միջամտությունը ընդլայնելու ամենափոքր հնարավորություններն անգամ» (Լենին, Երկեր, հատ. 33, էջ 233)։ Այս արդեն նոր մոտեցում էր քաղաքացիական օրենսդրությանը։ Բանն այն է, որ մինչ այդ, բուրժուական իրավունքը բաժանվում էր հանրային իրավունքի և մասնավոր իրավունքի։ Բուրժուական քաղաքացիական իրավունքը դասվում էր մասնավոր իրավունքի բնագավառը։ Բուրժուական իրավագիտությունը պնդում էր, որ պետության միջամտությունը քաղաքացիական իրավահարաբերություններին պետք է սահմանափակ բնույթ կրի, և մեծ տեղ տրվի քաղաքացիական իրավահարաբերությունների մասնակիցների հայեցողությանը։ Այդ նկատի ունենալով, Լենինը զգուշացնում էր՝ «Զհանոյանալ «Եվրոպային», այլ ավելի առաջ գնալ «մասնավոր իրավական հարաբերություններին», քաղաքացիական գործերին պետության միջամտությունն ուժեղացնելու գործում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 33, էջ 233)։

ՌՍՖՍՌ քաղաքացիական օրենսգրքի մեջ մի շարք հոդվածներ մտցվեցին, որոնք ապահովում էին սովետական պետության ակտիվ դերը, ամենից առաջ, նէպի չարաշահումների դեմ մղվող պայքարում։

ՌՍՖՍՌ առաջին քաղաքացիական օրենսգիրքը և նրա օրինակով կազմված մյուս միութենական ռեսպուբլիկաների քաղաքացիական օրենսգրքերը[1] լուրջ դեր խաղացին մեր երկրում սոցիալիստական արտադրական հարաբերությունների ձևավորման, ամրապնդման և հետագա զարգացման գործում։

Օրենսգրքի մի շարք հոդվածներ դեռ այսօր էլ չեն կորցրել իրենց ուժը և մտել են քաղաքացիական նոր օրենսդրության մեջ։

Չնայած այդ բոլորին միութենական ռեսպուբլիկաների քաղաքացիական

---

[1] Հայկական ՍՍՌ քաղաքացիական առաջին օրենսգիրքը գործադրվել սկսեց ՀՍՍՌ Կենտրոնական գործադիր կոմիտեի 1923 թ. փետրվարի 13-ի որոշմամբ։



օրենսգրքերն ամբողջությամբ վերցրած հնացել էին՝ մասամբ նոր սոցիալիստական հարաբերությունների առաջացման, հին հարաբերությունների վերացման, մասամբ էլ նախկինում կարգավորվող սոցիալիստական հարաբերությունների զարգացման հետևանքով։ Այսպես, հին օրենսգրքերում նախատեսված չէին կոլտնտեսությունների և հասարակական կազմակերպությունների սեփականության իրավունքը, քաղաքացիների անձնական սեփականության, հեղինակի և գյուտարարի իրավունքը և այլն։ Մի շարք կարևոր հարաբերություններ էլ կարգավորված էին թռուցիկ ձևով, ինչպես, օրինակ, բնակարանային վարձակալության պայմանագիրը։ Միութենական ռեսպուբլիկաների քաղաքացիական հին օրենսգրքերով չէին կարգավորվում սոցիալիստական հասարակության այնպիսի հարաբերություններ, ինչպիսիք են՝ մատակարարման, կապիտալ շինարարության, գյուղատնտեսական արտադրանքի պետական գնման և մի շարք այլ պայմանագրեր։

Ճիշտ է, միութենական ռեսպուբլիկաների առաջին քաղաքացիական օրենսգրքերի ընդունումից հետո ընկած ժամանակաշրջանում սովետական պետությունն ընդունել էր քաղաքացիական հարաբերությունները կարգավորող առանձին օրենքներ ու այլ նորմատիվ ակտեր, բայց դրանց մեծ մասը չէր արտացոլվել քաղաքացիական օրենսգրքերում, որի հետևանքով էլ ինչպես արբիտրաժային, այնպես էլ դատական պրակտիկայում հաճախակի չէին առաջնորդվում միութենական ռեսպուբլիկաների քաղաքացիական օրենսգրքերի հոդվածներով։ Պարզ է, որ նման պայմաններում հնարավոր չէր հետևողականորեն իրականացնել օրինականությունը սոցիալիստական կազմակերպությունների ու քաղաքացիների գույքային հարաբերությունների և իրավունքների պաշտպանության ասպարեզում։

Համապատասխան իրավական նորմերի բացակայությունը, ինչպես նաև որոշակի հարաբերությունների անբավարար կարգավորումը սողանցք էր թողնում սուբյեկտիվիզմի, իսկ որոշ դեպքերում նաև օրենքները շրջանցելու համար։ Շատ ավելի վատ հետևանքների էր հասցնում այն, որ որոշ հարաբերություններ ենթարկված չէին իրավական կարգավորման։

ՌՍՖՍՌ 1922 թ. օրենսգիրքն ընդունելիս Վ. Ի. Լենինն ասում էր, որ «...մեր օրենսդրության մշակման արագության նմանը ուրիշ տերություններ, դժբախտաբար, չգիտեն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 33, էջ 466)։ Սակայն Վ. Ի. Լենինի մահից հետո մեր օրենսդրությունը արագությամբ չէր զարգանում։

Անհատի պաշտամունքի վնասակար հետևանքներից մեկն էլ այն էր, որ սովետական օրենսդրությունը, այդ թվում քաղաքացիական օրենսդրությունը, ժամանակին չէր վերանայվում ու լրացվում։



Միութենական ռեսպուբլիկաների նոր քաղաքացիական օրենսգրքերի հիմնական սկզբունքները սահմանված են ՍՍՌ Միության և միութենական ռեսպուբլիկաների քաղաքացիական օրենսդրության հիմունքներով։ Այդ պայմանավորված է նրանով, որ միութենական ռեսպուբլիկաներն ունեն միևնույն տնտեսական ու քաղաքական հիմքը, գտնվում են տնտեսական ու կուլտուրական զարգացման համարյա միևնույն մակարդակի վրա։ Միութենական ռեսպուբլիկաների քաղաքացիական օրենսգրքերը հանդիսանում են հիմունքների

շարունակությունն ու նրանց լրացումը այն սահմաններում, որ նախատեսված է հենց հիմունքներով։

Հիմունքները բաղկացած են 129 հոդվածից, իսկ Հայկական ՍՍՌ քաղաքացիական օրենսգիրքը՝ 572 հոդվածից։

Հայկական ՍՍՌ նոր քաղաքացիական օրենսգիրքը սոցիալիստական հասարակության գույքային հարաբերությունները ենթարկում է միասնական կարգավորման, այսինքն՝ օրենսգրքի նորմերը տարածվում են ինչպես սոցիալիստական կազմակերպությունների, այնպես էլ քաղաքացիների գույքային հարաբերությունների վրա։ Սոցիալիստական հասարակության գույքային հարաբերությունները հնարավոր է միասնական կարգավորման ենթարկել, քանի որ մեզ մոտ հակասություն չկա հասարակության և անհատի շահերի միջև, նրանց շահերը զուգակցված են, իսկ քաղաքացիների անձնական սեփականությունը ածանցված է սոցիալիստական սեփականությունից։ Սակայն սոցիալիստական հասարակության գույքային հարաբերությունները միասնական կարգավորման ենթարկելը բոլորովին էլ չի նշանակում հաշվի չառնել սոցիալիստական կազմակերպությունների և քաղաքացիների գույքային հարաբերությունների առանձնահատկությունները, և համապատասխան դեպքերում չսահմանել հատուկ կանոններ։

«Անցումը կոմունիզմին,— ասված է պարտիայի ծրագրում,— նշանակում է անհատի ազատության և սովետական քաղաքացիների իրավունքների ըստ ամենայնի զարգացում»։ Այս իրողությունն իր ուղղակի արտացոլումն է գտել քաղաքացիական օրենսգրքի բազմաթիվ հոդվածներում։ Այսպես՝ 10-րդ հոդվածը, սահմանելով քաղաքացիների իրավունակության բովանդակությունը, նախատեսում է, որ քաղաքացիներն օրենքին համապատասխան կարող են ունենալ գույքի անձնական սեփականություն, բնակարաններից և այլ գույքից օգտվելու իրավունք, ժառանգել և կտակել գույք, ընտրել զբաղմունքի տեսակ ու բնակության վայր, ունենալ գիտության, գրականության և արվեստի երկի, հայտնագործության, գյուտի, ռացիոնալիզատորական առաջարկության հեղինակի իրավունք, ինչպես նաև՝ գույքային և անձնական ոչ գույքային այլ իրավունքներ։

Ոչ ոքի իրավունակությունը կամ գործունակությունը, ասված է օրենսգրքում, չի կարող սահմանափակվել այլ կերպ, քան օրենքով նախատեսված դեպքերում և ըստ օրենքի։

Կոմունիզմի կառուցումը խարսխվում է քաղաքացիների, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և մյուս տնտեսական կազմակերպությունների նյութական շահագրգռվածության սկզբունքի վրա։ Քաղաքացիական օրենսգիրքը իրավաբանական անձերին վերաբերող նորմերում ապահովում է կազմակերպությունների ինչպես օպերատիվ ինքնուրույնությունը, այնպես էլ նյութական շահագրգռվածությունը։

Իրավաբանական անձինք են ճանաչվում այն կազմակերպությունները, որոնք ունեն առանձնացված գույք, իրենց անունից կարող են ձեռք բերել գույքային և անձնական ոչ գույքային իրավունքներ և կրել պարտականություններ, հայցվոր և պատասխանող լինել դատարանում, արբիտրաժում կամ միջնորդ դատարանում։

Իրավաբանական անձը քաղաքացիական իրավահարաբերությունների ինքնուրույն մասնակից է, նա կարող է բազմապիսի գույքային հարաբերու-



թյունների մեջ մտնել ինչպես այլ իրավաբանական անձերի, այնպես էլ քաղաքացիների հետ։ Սակայն իրավաբանական անձի քաղաքացիական իրավունակությունը պետք է համապատասխանի այն նպատակներին, որոնք սահմանված են տվյալ իրավաբանական անձի գործունեության համար։ Դա տրամաբանական հետևանքն է այն սկզբունքի, որ սոցիալիստական հասարակության մեջ զուգակցվում են ոչ միայն անհատի և հասարակության շահերը, այլև առանձին կոլեկտիվների ու ողջ հասարակության շահերը։

Իրավաբանական անձերի նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու և տնտեսական հաշվարկը ամրապնդելու նպատակով քաղաքացիական օրենսգիրքը սահմանում է, որ յուրաքանչյուր իրավաբանական անձ իր պարտավորությունների համար պատասխանատու է իրեն պատկանող (իսկ իրավաբանական անձ հանդիսացող պետական կազմակերպությունը՝ իրեն ամրացված) գույքով։ Այդ ընդհանուր սկզբունքն իր կոնկրետ արտահայտությունն է գտնում օրենսգրքի տարբեր հոդվածներում։ Այսպես, օրենսգրքի 33-րդ հոդվածի համաձայն, պետությունը պատասխանատու չէ իրավաբանական անձ հանդիսացող պետական կազմակերպությունների պարտավորությունների, իսկ այդ կազմակերպություններն էլ՝ պետության պարտավորությունների համար։ Օրենսգրքի մի այլ հոդվածով, պետական, կոոպերատիվ կամ հասարակական կազմակերպությունը պատասխանատու չէ իր կազմի մեջ մտնող և իրավաբանական անձ հանդիսացող ձեռնարկության պարտավորությունների, իսկ այդ ձեռնարկությունը պատասխանատու չէ այն կազմակերպության պարտավորությունների համար, որի կազմի մեջ նա մտնում է։

Օրենսգրքի 2-րդ բաժինը նվիրված է սեփականության իրավունքի կարգավորման հարցերին, ուր առանձին գլուխներ են հատկացված սոցիալիստական սեփականության տարբեր ձևերի իրավական կարգավորմանը։

Օրենսգիրքն ամրապնդում է այն սկզբունքը, որ պետությունն ամբողջ պետական գույքի միակ սեփականատերն է։ Սակայն, ինչպես հայտնի է, պետական կազմակերպությունները չեն կարող կենսագործել իրենց առջև դրված խնդիրները, եթե նրանք չունենան որոշակի գույքային բազա։ Օրենսգրքի 94-րդ հոդվածի համաձայն, պետական կազմակերպություններին ամրացված պետական գույքը գտնվում է այդ կազմակերպությունների օպերատիվ կառավարման ներքո, որոնք օրենքով որոշված սահմաններում, իրենց գործունեության նպատակներին, պլանային առաջադրանքներին և գույքի դերին ու նշանակությանը համապատասխան, իրականացնում են գույքը տիրապետելու, օգտագործելու և տնօրինելու իրավունքները։

Բացի պետական սեփականությունից օրենսգիրքը կարգավորում է կոլտնտեսությունների, այլ կոոպերատիվ կազմակերպությունների, նրանց միավորումների, ինչպես նաև արհմիութենական և այլ հասարակական կազմակերպությունների սեփականությունը։ Նշվում է, որ այդ կազմակերպությունների սեփականությունը հանդիսացող գույքի տնօրինման իրավունքը պատկանում է բացառապես իրենց՝ սեփականատերերին։

Սոցիալիստական սեփականության տարբեր ձևերի համար օրենսգիրքը երբեմն նախատեսում է միատեսակ կանոններ։ Դա բացատրվում է նրանով, որ սեփականության այդ ձևերը նույնատիպ են։ Օրինակ, օրենսգիրքը չի թույլատրում պարտատերերի պահանջով բռնագանձման առարկա դարձնել պետական կազմակերպությունների, կոլտնտեսությունների, այլ կոոպերատիվ

կազմակերպությունների, նրանց միավորումների, արհմիութենական և այլ հասարակական կազմակերպությունների հիմնական միջոցներ հանդիսացող գույքը։ Օրենսգրքի 155-րդ հոդվածը սոցիալիստական սեփականության տարբեր ձևերի համար սահմանում է քաղաքացիական-իրավական պաշտպանության միատեսակ կարգ, նշելով, որ պետական գույքը, ինչպես նաև կոլտնտեսությունների և այլ կոոպերատիվ ու հասարակական կազմակերպությունների գույքը, որն ապօրինաբար օտարվել է որևէ եղանակով, կարող է համապատասխան կազմակերպությունների կողմից ետ պահանջվել ամեն մի ձեռք բերողից։ Նախկին օրենսգրքով այսպիսի պաշտպանություն նախատեսված էր միայն պետական սեփականության համար։

Սոցիալիստական սեփականության տարբեր ձևերի համար որոշ՝ դեպքերում միատեսակ իրավական ռեժիմ նախատեսելն իր հերթին նպաստում է սեփականության այդ ձևերի մերձեցմանը, միասնական համաժողովրդական սեփականության գոյացմանը։

Օրենսգրքում կարգավորված է նաև այն գույքի իրավական ռեժիմը, որը տարբեր սոցիալիստական կազմակերպությունների կամ պետության ու այդ կազմակերպությունների ընդհանուր սեփականությունն է։ Հետաքրքրական է, որ պետական կազմակերպություններին ամրացված գույքի նկատմամբ օրենսգրքով սահմանված «օպերատիվ կառավարման իրավունք»-ը օրենսդիրը ճանաչում է նաև միջկոլտնտեսային, պետական-կոլտնտեսային, այլ պետական-կոոպերատիվ կազմակերպությունների համար, որոնք սեփականատերեր չեն և տիրապետում, օգտագործում ու տնօրինում են այն գույքը, որը սեփականության իրավունքով պատկանում է՝ կոլտնտեսություններին, այլ կոոպերատիվ կազմակերպությունների, պետությանն ու կոլտնտեսություններին կամ պետությանն ու այլ կոոպերատիվ կազմակերպությունների։

Օրենսգիրքը միաժամանակ ապահովում է պետական սեփականության առաջատար դերը սոցիալիստական սեփականության մյուս ձևերի շարքում, որն իր արտահայտությունն է գտել օրենսգրքի մի շարք հոդվածներում։ Օրինակ, 90-րդ հոդվածի համաձայն, կոլտնտեսությունների և այլ կոոպերատիվ ու հասարակական կազմակերպությունների կամ քաղաքացիների ապօրինի տիրապետության տակ գտնվող պետական գույքը վերադարձնելու վերաբերյալ պետական կազմակերպությունների պահանջների վրա հայցային վաղեմությունը չի տարածվում։ Չի թույլատրվում գրավ դնել պետական կազմակերպությունների հիմնական միջոցներ հանդիսացող գույքը։ Ըստ օրենսգրքի 95-րդ հոդվածի պետության սեփականությունը կարող է լինել ամեն մի գույք և այլն։



Օրենսգրքում մեծ տեղ է հատկացված անձնական սեփականության և նրա ժառանգման հարցերին։ Քաղաքացիների անձնական սեփականություն կարող է լինել այն գույքը, որը բավարարում է նրանց նյութական ու կուլտուրական պահանջմունքները։ Քաղաքացիների անձնական սեփականություն հանդիսացող գույքը չի կարող օգտագործվել անաշխատ եկամուտներ ստանալու համար։

Մեզ մոտ չի սահմանափակվում առարկաների այն քանակը, որը կարող է յուրաքանչյուր քաղաքացու անձնական սեփականությունը հանդիսանալ։

Անձնական սեփականության իրավունքի հարցերը կարգավորելիս օրենսգիրքը ելնում է պարտիայի այն դրույթից, որ կոմունիզմի կառուցումը պետք է հենվի նյութական շահագրգռվածության սկզբունքի վրա, որ ըստ աշխատանքի վարձատրությունը առաջիկա քսանամյակի ընթացքում կմնա աշխատավորների նյութական և կուլտուրական պահանջմունքների բավարարման հիմնական աղբյուրը և որ զարգացման ներկա էտապում չի կարելի անտեսել օժանդակ տնտեսության հնարավորությունները կոլտնտեսականների, բանվորների և ծառայողների պահանջմունքները բավարարելու համար։

Հատուկ կանոններ են սահմանված բնակելի տան անձնական սեփականության առթիվ։ Որպես անձնական սեփականություն քաղաքացին կարող է ունենալ մեկ բնակելի տուն կամ մեկ տան մի մասը։ Համատեղ ապրող ամուսինները և նրանց անչափահաս երեխաները կարող են ունենալ միայն մեկ բնակելի տուն կամ մեկ տան մի մասը։ Բնակելի տան կամ նրա մի մասի առավելագույն չափը, որը կարող է քաղաքացիներին պատկանել, չպետք է ավելի լինի 60 քառակուսի մետր բնակելի տարածությունից։

Բնակելի տան նկատմամբ անձնական սեփականության իրավունքի այսպիսի կարգավորումը բխում է այն նշանակությունից, որ բնակելի տունն ունի քաղաքացիների կյանքում։ Բնակելի տարածության վերոհիշյալ չափը սահմանվել է ելնելով այն բանից, որ միջին թվով անդամներ ունեցող ընտանիքի համար 60 քառակուսի մետր բնակելի տարածությունը բավարար է։ Օրենսգիրքը միաժամանակ նկատի է ունեցել, որ մեր երկրում դեռևս վերացված չէ բնակարանային կարիքը, ուստի որոշ քաղաքացիներ կձգտեն բնակելի մեծ տարածություն ձեռք բերել անաշխատ եկամուտ ստանալու նպատակով։ Միայն մեծ ընտանիք կամ լրացուցիչ բնակելի տարածության իրավունք ունեցող քաղաքացու խնդրանքով աշխատավորների դեպուտատների համապատասխան սովետի գործադիր կոմիտեն իրավունք ունի թույլատրելու կառուցել կամ ձեռք բերել այնպիսի տուն, որի բնակելի տարածությունը 60 քառակուսի մետրից ավելի է։

Կարելի՞ է արդյոք եզրակացնել թե մեր երկրում բնակարանային կարիքի վերացմանը զուգընթաց կվերանան անձնական սեփականության իրավունքով բնակելի տարածություն ունենալու սահմանափակումները։ Իհարկե ոչ։ Բանն այն է, որ քաղաքացիների բնակարանային պայմանները առավելապես բավարարվում են պետական ու հասարակական կազմակերպությունների բնակելի ֆոնդի հաշվին։ Այդ տներում բնակարան ստացողների համար սահմանված են բնակարանային սանիտարական նորմաներ, որոնք պետք է հաշվի առնվեն նաև անձնական սեփականության իրավունքով բնակելի տների չափը սահմանելիս։

Քաղաքացին իրավունք ունի իր գույքն ինչպես անձամբ օգտագործելու, այնպես էլ վարձակալության տալու։ Այստեղ բացառված չէ նաև բնակելի տունը կամ նրա մի մասի վարձակալության տալը, ըստ որում վարձի չափը որոշվում է կողմերի համաձայնությամբ, բայց որը չպետք է գերազանցի պետության կողմից սահմանված առավելագույն դրույքները։ Այն դեպքում, երբ քաղաքացու սեփականություն հանդիսացող բնակելի տունը, ամառանոցը կամ այլ գույք սիստեմատիկաբար օգտագործվում են անաշխատ եկամուտներ ստանալու համար, ապա դրանք կարող են պետականացվել։

Ժառանգական իրավունքին են նվիրված օրենսգրքի 530—564-րդ հոդվածները։ Նախկին օրենսգրքի համեմատությամբ ընդարձակված է ըստ օրենքի

ժառանգների շրջանակը, միաժամանակ ընդլայնված է քաղաքացու՝ իր գույքն ըստ իր հայեցողության կտակելու իրավունքը:

Ըստ օրենքի ժառանգները բաժանված են երկու հերթի: Առաջին հերթի ժառանգներն են հանդիսանում՝ մահացածի զավակները (այդ թվում որդեգրվածները), ամուսինն ու ծնողները (որդեգրողները), ինչպես նաև մահացածի այն երեխան, որը նրա մահից հետո է ծնվել:

Երկրորդ հերթի ժառանգներ են հանդիսանում՝ մահացածի եղբայրներն ու քույրերը, նրա պապն ու տատը ինչպես հոր, այնպես էլ մոր կողմից:

Նախկին օրենսգրքով մահացածի աշխատունակ ծնողները առաջին հերթի ժառանգների մեջ չէին մտնում, իսկ որդեգրողները ժառանգներ չէին համարվում: Ժառանգներ չէին համարվում նաև մահացածի պապն ու տատը, ինչպես հոր, այնպես էլ մոր կողմից: Ըստ օրենքի ժառանգներ են նաև այն անաշխատունակ անձինք, ովքեր մինչև ժառանգատուի մահը առնվազն մեկ տարի գտնվել են նրա խնամքի տակ:

Անձի ազատությունը ժառանգական իրավունքում իր արտացոլումն է գտել այն բանում, որ յուրաքանչյուր քաղաքացու իրավունք է տրված իր ամբողջ գույքը կամ նրա մի մասը կտակել ինչպես ըստ օրենքի ժառանգներին, այնպես էլ դրանց մեջ չմտնող մեկ կամ մի քանի անձանց, պետությանը կամ պետական, կոոպերատիվ ու հասարակական առանձին կազմակերպություններին: Կտակարարը կարող է ժառանգման իրավունքից զրկել ըստ օրենքի մեկ, մի քանի կամ բոլոր ժառանգներին: Կտակի ազատությունն այժմ սահմանափակվում է միայն հօգուտ այն ժառանգների, որոնք անչափահաս են կամ անաշխատունակ: Անկախ կտակի բովանդակությունից նրանք ստանում են ժառանգության այն բաժնի առնվազն երկու երրորդը, որը նրանցից յուրաքանչյուրին կհասներ ըստ օրենքի ժառանգման դեպքում:

Կտակի ազատության շրջանակների ընդլայնումը պայմանավորված է նրանով, որ ժառանգությունը կորցնում է քաղաքացիների համար ապրուստի միջոց լինելու նշանակությունը: Մահացածի ընտանիքի անդամները նյութական ապահովություն են ստանում պետությունից: Ժառանգությունը աստիճանաբար ստանում է նոր բնույթ: Մահացածի ազգականներն ու մոտ մարդիկ հաճախ շահագրգռված են ձեռք բերելու նրա գույքը ոչ թե որպես նյութական արժեք, այլ առաջին հերթին որպես հիշատակ: Այդ պատճառով էլ քաղաքացուն հնարավորություն է տրվում ազատորեն որոշելու այն հարցը, թե իր մահից հետո ում պետք է անցնի իր գույքը:



Օրենսգրքում մեծ տեղ է հատկացված պարտավորական իրավունքին, որը կոչված է ապահովելու ժողովրդա-տնտեսական պլանների անթերի կատարումը սոցիալիստական կազմակերպությունների կողմից, ամրապնդելու պայմանագրային կարգապահությունը, տնտեսական հաշվարկը:

Օրենսգիրքը պարտավորությունների ծագման հիմքերից մեծ նշանակություն է տալիս պայմանագրերին: Պայմանագիրը հնարավորություն է տալիս սոցիալիստական կազմակերպություններին՝ դրսևորելու իրենց տնտեսական ինքնուրույնությունը: Սոցիալիստական կազմակերպությունները տնտեսական պայմանագրեր (մատակարարման, կապիտալ շինարարության, կապալի և այլն)



են կնքում պլանային ակտերի հիման վրա: Եթե կազմակերպությունները պայմանագրեր կնքելիս գալիս են այն համոզման, որ պլանային առաջադրանքը ճիշտ չի արտացոլում իրենց կարողությունները կամ պահանջները, ապա նրանք հնարավորություն ունեն հրաժարվելու դրանից: Այդ իմաստով էլ պայմանագիրն ունի նաև պլանը ճշգրտելու դեր:

Պարտքն ու կառավարությունը ինչպես միշտ, այնպես էլ այժմ մեծ նշանակություն են տալիս պլանային ու պայմանագրային կարգապահության ամրապնդմանը: Միայն խստագույն կարգապահության դեպքում կարելի է ապահովել պարտավորությունների կատարումը և առաջ մղել ժողովրդական տնտեսությունը: Օրենսգրքի 171-րդ հոդվածի համաձայն, բացառությամբ օրենքով նախատեսված դեպքերից, թույլ չի տրվում միակողմանի հրաժարվել պարտավորությունների կատարումից և միակողմանի փոփոխել պայմանագրի պայմանները: Գույքային պատասխանատվություն է նախատեսվում պայմանագրերը ժամանակին չկատարելու, անորակ և անկոմպլեկտ արտադրանք մատակարարելու, կապիտալ շինարարության աշխատանքները ժամանակին և որակով չավարտելու և այլ դեպքերում: Պայմանագիր կնքող մի կողմը պարտավոր է մյուս կողմին հատուցել պայմանագիրը չկատարելու կամ ոչ պատշաճ կատարելու հետևանքով առաջացած վնասները: Պարտապանին գույքային պատասխանատվության ենթարկելը սակայն, նրան չի ազատում հետագայում պարտավորությունը կատարելու պարտականությունից, բացի այնպիսի դեպքերից, երբ ուժը կորցրել է պլանային այն առաջադրանքը, որի վրա հիմնված է պարտավորությունը:

Ինչպես քաղաքացիները, այնպես էլ սոցիալիստական կազմակերպություններն իրենց պարտավորությունները չկատարելու համար գույքային պատասխանատվության են ենթարկվում, երբ մեղավոր են: Մեղքը կարող է լինել դիտավորության կամ անզգուշության հետևանք: Այս ունի կարևոր դաստիարակչական նշանակություն: Մեղքի սկզբունքով պատասխանատվությունը ստիպում է այնպես կազմակերպել գործը, որ ապահովվի պարտավորությունների կատարումը և կանխվեն վնասները:

Օրենսգրքում մեծ տեղ է հատկացված այն պայմանագրերին, որոնց հիման վրա սոցիալիստական կազմակերպությունները բավարարում են քաղաքացիների կենցաղային կարիքները: Նման պայմանագրերի կատարումն ապահովելու նպատակով, սոցիալիստական կազմակերպությունների համար օրենսգիրքը նախատեսում է խստացված պատասխանատվություն (430, 432-րդ հոդվածները):

Նոր քաղաքացիական օրենսգիրքը կարգավորում է նաև այնպիսի կարևոր ինստիտուտներ, ինչպիսիք են՝ հեղինակային իրավունքը, հայտնագործության և գյուտարարության իրավունքները: Այս հարցերում ևս օրենսգիրքը ղեկավարվել է այն սկզբունքով, որպեսզի գիտության, գրականության ու արվեստի բնագավառում յուրաքանչյուր մարդու անձնական ընդունակությունները դրսևորվեն առավել լրիվ չափով: Ինչպես նշված է 477-րդ հոդվածում, հեղինակային իրավունքը տարածվում է գիտության, գրականության կամ արվեստի երկերի վրա, անկախ երկի ձևից, նպատակից ու արժանիքներից: Հեղինակին տրված է՝ իր անունով, պայմանական անունով (կեղծանունով) կամ առանց անունը նշելու (անանուն) իր երկը հրապարակելու, վերարտադրելու կամ տա-

րածելու իրավունք։ Հեղինակին է պատկանում նաև երկի անձեռնմխելիության իրավունքը։

Հեղինակային իրավունքն անցնում է ժառանգաբար։ Բայց, որպեսզի հեղինակի ժառանգների համար հեղինակային իրավունքը չդառնա անարդարացի եկամտի աղբյուր, օրենսգրքի 499-րդ հոդվածի համաձայն, ժառանգին վճարվող հեղինակային վարձատրությունը չպետք է գերազանցի հեղինակին հասանելիք վարձատրության հիսուն տոկոսից։

Քաղաքացիական օրենսդրությունը քաղաքացիների և կազմակերպությունների համար ոչ միայն նախատեսում է գույքային ու անձնական իրավունքներ, այլև ապահովում դրանց պաշտպանությունը։ Քաղաքացիական օրենսգիրքը քաղաքացիներից ու կազմակերպություններից պահանջում է իրենց իրավունքներն իրականացնելիս և պարտականությունները կատարելիս պահպանել օրենքները, հարգել սոցիալիստական համակեցության կանոնները և կոմունիզմ կառուցող հասարակության բարոյական սկզբունքները։



Միութենական ռեսպուբլիկաների քաղաքացիական օրենսգրքերի ընդունումը, հիմունքների ընդունումից հետո, սովետական քաղաքացիական օրենսդրության զարգացման երկրորդ կարևոր էտապն է։ Բայց սովետական քաղաքացիական օրենսդրության նորացման աշխատանքները դրանով չեն ավարտվում։

Կյանքը ցույց կտա, թե օրենսգիրքը որքանով է համապատասխանում սոցիալիստական հասարակության զարգացման պահանջներին և նոր ինչպիսի նորմերի ընդունման կարիք կլինի հետագայում։ Օրենքների կայունացումը ամենևին էլ չի նշանակում խուսափել կյանքի պահանջներին չհամապատասխանող իրավանորմերը վերանայելու անհրաժեշտությունից։ Սոցիալիստական օրինականության անշեղ իրականացմանը վնաս է հասցնում ոչ թե օրենքների արագ փոփոխումը, այլ կյանքի պահանջներին չհամապատասխանող օրենքների երկարատև պահպանումը։ Յուրաքանչյուր օրենք պետք է փոփոխության ենթարկվի միայն գիտական հիմքի վրա։



Ռ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

# ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՎԵՐԱՃԵԼՈՒ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆԸ

Սոցիալիզմը կոմունիզմի վերաճելը բարդ և բազմակողմանի սոցիալական պրոցես է, որը պայմանավորված է հասարակական կյանքի բոլոր կողմերն ընդգրկող բազմազան օրինաչափություններով։

Այս հոդվածում արծարծվում են սոցիալիզմից կոմունիզմ էվոլյուցիայի միայն ընդհանուր օրինաչափությունները։

## ԱՆՑՄԱՆ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Սոցիալիզմի կառուցման փորձը ՍՍՌՄ-ում, ժողովրդադեմոկրատական երկրներում հաստատեց մարքսիզմի այն դրույթը, որ միայն սոցիալիզմի հաղթանակը, ամրապնդումը, բազմակողմանի զարգացումը կարող են հիմք հանդիսանալ կոմունիզմին անցնելու համար։

Այս օրինաչափությունն ընդգծում էին Մարքսն ու Էնգելսը դեռևս լասալականների հետ բանավիճելիս։ Նրանք գիտականորեն ապացուցեցին, որ դա կոմունիստական ֆորմացիայի զարգացման հիմնական օրինաչափություններից մեկն է։

Գոթայի ծրագրի քննադատություն աշխատության մեջ Կ. Մարքսը ցույց է տալիս, որ կոմունիստական հասարակությունը անխուսափելիորեն պետք է իր զարգացման ընթացքում անցնի ստորին կամ սոցիալիզմի փուլը և միայն դրանից հետո՝ բարձրագույն փուլը։ Նոր հասարակության պրակտիկ շինարարության հենց առաջին օրերից Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս նշված օրինաչափությանը։ Կապիտալիզմից կոմունիզմին անմիջականորեն անցնելու ավանտյուրիստական ձգտումներին Վ. Ի. Լենինը հակադրում էր կոմունիստական ֆորմացիայի էվոլյուցիայի օբյեկտիվ օրենքների իր խոր հաշվառքը։ Երևակայել, որ կապիտալիզմից անմիջապես կարելի է ցատկել կոմունիզմին, դա նշանակում է,— գրում էր Վ. Ի. Լենինը,— ընկնել ուտոպիզմի մեջ (տե՛ս, Երկեր, հ. 30, էջ 357)։ Ընդգծելով կոմունիստական ֆորմացիայի լինելության բարդությունը, բազմաստիճանականությունը, Վ. Ի. Լենինը նույնիսկ խոսում էր կոմունիզմի միջին փուլի մասին (տե՛ս, Երկեր, հ. 31, էջ 34)։

«Մարդկությունը,— գրում է Վ. Ի. Լենինը,— կապիտալիզմից կարող է անմիջականորեն անցնել միայն սոցիալիզմին, այսինքն՝ արտադրության միջոցների հանրային տիրապետությանը և մթերքների բաշխմանն ըստ յուրաքանչյուրի կատարած աշխատանքի։ Մեր պարտիան ավելի հեռուն է նայում, սոցիալիզմը պետք է անխուսափելիորեն, աստիճանաբար վերաճի կոմունիզմի, որի դրոշի վրա գրված է՝ «Յուրաքանչյուրը՝ ըստ իր ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ իր պահանջների» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 24, էջ 85)։

Գիտական կոմունիզմի այդ դրույթը երևան է հանում կոմունիստական ֆորմացիայի օբյեկտիվ օրինաչափությունը, ըստ որում, Վ. Ի. Լենինը պարզաբանում էր, որ միայն սոցիալիզմի ամրապնդումից հետո, «երբ սոցիալիզմը

*նիզմի հաղթանակով և գիտակցաբար, միաձույլ կերպով ձգտում են դրան։ Սոցիալիստական քաղաքական և հասարակական հարաբերությունները չեն արգելակում կոմունիզմի շինարարությանը։*

*Կոմունիստական պարտիան, համաժողովրդական սոցիալիստական պետությունը, հասարակական բոլոր կազմակերպությունները, կոմունիզմի կառուցման գործիք են։ Ուստի բնական է, որ կոմունիզմի կառուցումն իրագործվում է առավել դեմոկրատական մեթոդներով, դասակարգային պայքարից դուրս։ Հասարակությունը չի հանդիպում այն դժվարություններին, սոցիալական այն կոնֆլիկտներին, որոնք ծագում էին դասակարգային պայքարից և հաղթահարվում էին ռևոլյուցիոն պայքարում։*

*Կոմունիստական հասարակական հարաբերությունները զարգանում են առանց սոցիալական կոնֆլիկտների, հնի մահացման և նորի ծագման, ամրապնդման ու կատարելագործման ճանապարհով։ Կոմունիզմի լիակատար հաղթանակից հետո, երբ վերջնականապես կվերացվեն դասակարգերը, կմահանա պետությունը, և հասարակությունը կկորցնի իր քաղաքական կազմավորումը, կբացառվի քաղաքական ռևոլյուցիայի անհրաժեշտությունը։*

*Քաղաքական ռևոլյուցիայի բացառումը, սակայն, չի նշանակի ռևոլյուցիաների բացասում ընդհանրապես, կյանքի մյուս բոլոր բնագավառներում։ Կոմունիզմի զարգացումը անհրաժեշտորեն կապված է գիտա-տեխնիկական հեղաշրջումների, աշխատանքի էության և բաժանման, կենցաղի, բարոյականության, ընտանիքի կառավարման ձևերի խոր, արմատական ռևոլյուցիաների հետ։*

## ՎԵՐԱՃՄԱՆ ՆԱԽԱՊԱՅՄԱՆՆԵՐԸ

*Պրակտիկան ցույց է տալիս, որ սոցիալիզմի և կոմունիզմի միջև գոյություն չունեն այնպիսի սահմանորոշ գծեր, որոնք բաժանեին կոմունիզմի ստորին փուլի զարգացումը նրա բարձրագույն փուլի լինելությունից։ Կոմունիզմը սոցիալիզմից աճում է մշտապես, անընդհատ, առանց սոցիալիզմի զարգացման որևէ ընդմիջման, առանց սոցիալիզմի և կոմունիզմի միասնության խզման։*

*Մեր հասարակության մեջ արդեն կան կոմունիզմի տեսանելի գծերը, որոնք անընդհատ աճում ու ամրապնդվում են և ապագայում կգերիշխեն հասարակական կյանքի բոլոր ասպարեզներում։*

*Սոցիալիզմը կոմունիզմին օրինաչափորեն վերաճելու մեջ է՛լ ավելի մեծ դեր է խաղում այդ պրոցեսի աստիճանականությունը։ Մենք աստիճանաբար և ոչ թե միանգամից ենք կերտում կոմունիզմի նյութատեխնիկական բազան, արտադրական հարաբերությունները, հասարակական կառավարումը և այլն։ Սակայն աստիճանական զարգացումն ամենևին չի նշանակում հասարակության կյանքից թռիչքների բացասում։ Ընդհակառակը, կոմունիզմի կառուցման պրոցեսում արտադրության, բաշխման, կուլտուրայի, կենցաղի, հասարակական կառավարման բնագավառներում կատարվում են մեծագույն թռիչքներ։ Բայց այդ թռիչքները կատարվում են աստիճանաբար, որը և դրանց յուրահատկությունն է։*

*Հետևաբար, կոմունիզմին անցման աստիճանական պրոցեսն այնպիսին է, որ զարգացումը կատարվում է մեկը մյուսին հաջորդող հերթական աստիճաններով, որոնք վերջ ի վերջո հասարակությանը հանգեցնում են արմատական որակական փոփոխությունների։*

*Այստեղ հետաքրքրական է պարզել, թե ինչով է պայմանավորված աստիճանականությունը՝ սոցիալիզմից կոմունիզմին անցնելու պրոցեսում։*

*Ոմանք կարծում են, թե կոմունիզմին անցնելու աստիճանականության համար օբյեկտիվ հիմք են հանդիսանում սոցիալիզմի այնպիսի առավելությունները, ինչպիսիք են հակամարտ հակասությունների բացակայությունը արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների, դասակարգերի միջև և կոմունիզմի շինարարությունը ղեկավարող իսկական ժողովրդական իշխանության առկայությունը։ Այդ պատճառով հարկ չկա, ասում են նրանք, ջարդելու գոյություն ունեցող կարգը, որովհետև կա մեկ փուլից մյուսին աստիճանաբար անցնելու հնարավորություն։*



*Պետք է նշել, սակայն, որ այդ գործոններն անմիջականորեն չեն պայմանավորում աստիճանականությունը։ Սոցիալիզմից կոմունիզմին անցնելիս դրանք պայմանավորում են միայն քաղաքական ու տնտեսական բախումների և գոյություն ունեցող կարգը ջարդելու շարժառիթների բացակայություն։ Բայց բախումների բացառումը դեռևս աստիճանականության անհրաժեշտություն չէ։ Լավ, նույնիսկ շատ լավ կլինի անմիջապես անցնել կոմունիզմին, բայց այսօր այդպիսի հնարավորություններ դեռևս չկան։ Եվ դա ամենևին էլ ոչ թե սոցիալիզմի առավելությունների շնորհիվ, այլ այն «թերությունների» պատճառով, որոնք հատուկ են արտադրողական ուժերի, տնտեսության և գիտակցության զարգացման օրինաչափություններին։ Տվյալ դեպքում ամեն ինչ կախված է այդ երեք գործոնների զարգացման աստիճանից։ Իսկ այդ ձևոք չի բերվում առանց ջանքի, հանդես չի գալիս անմիջապես, հանկարծակի, ինչպես առասպելական Աթենաս-Պալասը Զևսի գլխից։*

*Սոցիալիզմի առավելություններն ամեն կերպ արագացնում են անցման աստիճանականությունը և հնարավոր է, որ որոշ երկրներում այն կհասցվի մինիմումի։ Այսպես, օրինակ, սոցիալիստական Չեխոսլովակիայում պատմական չափազանց կարճ ժամանակամիջոցում կարող են ստեղծվել կոմունիզմի նյութական և հոգևոր նախադրյալները։ Չէ՛ որ այդ ոչ մեծ սոցիալիստական երկիրը բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրության չափով արդեն այժմ բարձր է կանգնած Անգլիայից, Ֆրանսիայից, ԳՖՌ-ից, իսկ արտադրանքի որոշ տեսակների գծով նաև ԱՄՆ-ից։ Տնտեսական զարգացման օրենքներն ընդհանրապես պայմանավորում են կոմունիզմին անցնելու աստիճանականության օբյեկտիվ անխուսափելիությունը, իսկ տվյալ կոնկրետ երկրում տնտեսության զարգացման աստիճանը՝ այդ աստիճանականության տեմպերը։*

## ԷՏԱՊՆԵՐԸ ԵՎ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՆԵՐԸ

*«ՍՄԿՊ-ն որպես գիտական կոմունիզմի պարտիա,— ասված է ՍՄԿՊ ծրագրում,— առաջ է քաշում և լուծում է կոմունիստական շինարարության խնդիրները նյութական և հոգևոր նախադրյալների նախապատրաստման ու հասունացման համեմատ, ղեկավարվելով այն բանով, որ չի կարելի թռչել զարգացման անհրաժեշտ աստիճանների վրայով, ինչպես նաև չի կարելի կանգ առնել ձեռք բերածի վրա, կասեցնել առաջընթաց շարժումը։ Կոմունիզմի կառուցման խնդիրների լուծումը իրագործվում է հաջորդական էտապներով» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 486)։*

*Ոչ միայն ողջ կոմունիստական ֆորմացիան է բաժանվում փուլերի, այլև ամեն մի փուլն ապրում է իր զարգացման զանազան էտապները, ժամանակաշրջանները։ Կոմունիզմի առաջին ստադիան՝ սոցիալիզմն, իր լինելության և զարգացման ընթացքում անցավ սոցիալիզմի հիմքի, այնուհետև նրա հիմնականում կառուցման, լիակատար հաղթանակի և սոցիալիստական շինարարության ավարտման էտապներն ու ժամանակաշրջանները։*

*Հենվելով սոցիալիստական հասարակության զարգացման վրա, կոմունիզմի բարձրագույն փուլը նույնպես կանցնի իր լինելության, հաստատման ու զարգացման մի շարք օրինաչափ, օբյեկտիվորեն անխուսափելի էտապներ և ժամանակաշրջաններ։*

*Առաջին ժամանակաշրջանը դա* կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանն է։

*Այդ ժամանակաշրջանի գլխավոր պրակտիկ խնդիրներն են՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, կոմունիստական հասարակական հարաբերությունների զարգացումը և նոր մարդու դաստիարակությունը։*

*Այդ խնդիրները կկենսագործվեն երկու միմյանց հաջորդող էտապներով՝ 1961—1970 և 1971—1980 թվականներին։ ՍՄԿՊ ծրագիրն ընդգծում է, որ լուծելով այդ էտապների խնդիրները, այլ կերպ ասած, ավարտելով կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, մեր երկիրը հ ի մ ն ա կ ա ն ո ւ մ կկառուցի կոմունիզմը, որն իրենով կնշանավորի տնտեսական, սոցիալական և քաղաքական զարգացման մի նոր, բարձր աստիճան։ ՍՍՌՄ-ը կը-*

դառնա աշխարհի ամենազարգացած երկիրը, բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ կկանգնի աշխարհում առաջին տեղը, կապահովի ժողովրդի ամենաբարձր կենսամակարդակը, պայմաններ կստեղծի կոմունիստական առատության հասնելու համար: Մեր հասարակությունը ընդհուպ կմոտենա ըստ պահանջմունքների բաշխման սկզբունքի իրագործմանը:

Սոցիալական հարաբերությունների բնագավառում տեղի կունենա դասակարգային տարբերությունների մնացորդների լիկվիդացում և բոլոր աշխատավորների միավորում անդասակարգ հասարակության մեջ, աստիճանական անցում միասնական կոմունիստական համաժողովրդական սեփականության, որի հիման վրա հիմնականում կհաղթահարվեն քաղաքի և գյուղի միջև եղած սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային տարբերությունները, պայմաններ կստեղծվեն մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած տարբերությունների հաղթահարման համար: Հասարակական հարաբերությունների բնագավառում կաճի ազգերի տնտեսական և իդեական ընդհանրությունը, երևան կգա կոմունիստական հասարակության նոր մարդը, որը ներդաշնակ կերպով զուգակցում է բարձր գաղափարայնությունը, կրթվածությունը, բարոյական մաքրությունն ու ֆիզիկական կատարելությունը:

Քաղաքական բնագավառում՝ բոլոր քաղաքացիների համար պայմաններ կստեղծվեն մասնակցելու հասարակական գործերի կառավարմանը, սոցիալիստական դեմոկրատիան կզարգանա այն աստիճան, որ հասարակությունը պատրաստ կլինի իրագործելու կոմունիստական ինքնավարության սկզբունքները:

Կոմունիզմի բարձրագույն փուլի կառուցումը մեր հասարակության համար հիմք կհանդիսանա անցում կատարելու կոմունիստական շինարարության հետագա օրինաչափ ժամանակաշրջանը՝ կոմունիստական հասարակության կառուցման ավարտման ժամանակաշրջանը:

Այդ ժամանակաշրջանի բնորոշ գիծը կլինի այն, որ կստեղծվի նյութական ու հոգևոր բարիքների լիակատար առատություն, կվերանան մարդկանց միջև եղած տնտեսական-քաղաքական բոլոր տարբերությունները, աշխատանքը կդառնա կենսական պահանջմունք և հասարակությունն իր դրոշի վրա կգրի. «Յուրաքանչյուրը՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջների»:

Կոմունիստական հասարակությունը հասնելով իր բարձրագույն փուլին, իհարկե, չի ընդհատի իր վերընթաց էվոլյուցիան: Կսկսվի կոմունիստական ֆորմացիայի զարգացման անվերջ ժամանակաշրջանների հետևողականությունը:

### ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԱՐԱԳԱՑՈՒՄԸ

Սոցիալիզմի աստիճանական վերաճումը կոմունիզմի իրենից չի ներկայացնում դանդաղեցված շարժում: Ընդհակառակը, պատմության այս էտապին հատուկ է զարգացման խիստ արագացումը: Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանը ինդուստրիայի, խոշոր մեքենայացված գյուղատնտեսության, ամբողջ էկոնոմիկայի և կուլտուրայի բուռն զարգացման ժամանակաշրջան է: Կյանքը լիովին հաստատել է Վ. Ի. Լենինի այն հանճարեղ կանխատեսությունը, որ «...միմիայն սոցիալիզմից է սկսվելու արագ, իրական, իսկապես մասսայական, բնակչության մեծամասնության, ապա նաև ամբողջ բնակչության մասնակցությամբ տեղի ունեցող առաջընթաց շարժումը հասարակական ու անձնական կյանքի բոլոր ասպարեզներում» (Երկեր, հ. 25, էջ 615):

Պատմական պրոցեսի այդ արագացումն ամենևին էլ չի ծնվել միայն մարդկանց սուբյեկտիվ ջանքերով: Դա պայմանավորված է նաև օբյեկտիվորեն և դրանում է կոմունիզմի մեծագույն ուժը:

Ինչի՞ց է քաղում հասարակությունը դեպի կոմունիզմ իր էվոլյուցիայի արագացման անսպառ ուժը: Նախ, պետք է մատնանշել ժամանակակից արտադրողական ուժերի առանձնահատկությունները: Նրանց էությունն ու բնույթն այնպիսին են, որ անհրաժեշտորեն իրենց մեջ կրում են նյութական արտադրությունը և ընդհանրապես հասարակության զարգացումը վիթխարի չափով արագացնելու հնարավորություն: Սակայն ժամանակակից արտադրողական ուժերը հատուկ են ոչ միայն սոցիալիզմին, այլև կապիտալիզմին: ԱՄՆ-ը, օրինակ, տեխնիկայով ու կադրերով զինված է ոչ վատ, քան ՍՍՀՄ-ը: Բայց դրանց գործողությունների արդյունքները ծայրահեղորեն հակադիր են: ԱՄՆ-ում արտադրության տարեկան աճը չի անցնում 2—3 տոկոսից, իսկ մեզ մոտ այն հասնում է 10—12 տոկոսի: Ուրեմն աճի հնարավորությունը մի բան է, իսկ իրական աճը՝ մի այլ բան: Այդ պատճառով էլ երկրորդ, կոմունիզմի կառուցման դարաշրջանում կարևոր դեր է ձեռք բերում սուբյեկտիվ գործոնը՝ դեպի նշված նպատակը գիտակցական, բարձր գաղափարներով ոգեշնչված մասսաների ձգտումը: Արտադրողական ուժերը հմտորեն և մաքսիմում ձևով օգտագործող և զարգացնող մարդկանց ակտիվ գործունեությունն էլ հենց նպաստում է այդ ուժերի հնարավորությունների առավել լիակատար դրսևորմանը:

Չի կարելի, սակայն, ինչպես այդ անում են մեր փիլիսոփաներից ոմանք, ամեն ինչ հանգեցնել սոցիալիզմի նյութատեխնիկական բազային և մարդկանց ակտիվ գործունեությանը:

Մի առիթով վերլուծելով մարդկային գործունեության դրդիչ շարժառիթները, Էնգելսը ցույց է տվել, որ մարդու գործունեության անմիջական պատճառը կրքով կամ դատողությամբ որոշվող կամքն է: Բայց կանգ առնել մարդկանց գործունեության իդեալական պատճառների վրա, նշանակում է ոչինչ չասել, դեռ ավելին, նշանակում է աղավաղել իրականությունը: Եվ Էնգելսը բացահայտում է մարդուն ակտիվ գործունեության դրդող խոր, արմատական պատճառները: Դրանք մարդկանց նյութական շահերն են, արտադրության տնտեսական պայմանները, որոնք էլ որոշում են մասսաների պատմական ստեղծագործությունը: Կոմունիզմի կառուցման հզոր շարժիչ ուժը սոցիալիստական արտադրական հարաբերություններն են: Հենց դա էլ այն տնտեսական ձևն է, որը լայն ասպարեզ է բացում արտադրողական ուժերի զարգացման համար և կյանքի կոչում մասսաների ակտիվ, ամեն ինչ հաղթահարող գործունեության նյութական և բարոյական հզոր շարժառիթները:

Արտադրության միջոցների հանրային սեփականություն և դրանից բխող մարդու կողմից մարդու շահագործման բացակայություն, արտադրության ամեն մի առաջընթաց տեղաշարժից բոլոր աշխատավորների համար մաքսիմում օգուտ, անվճար կրթություն, բուժում, երեխաների դաստիարակություն, ապահովված ծերություն և այլն՝ ահա թե որն է արտադրության սրընթաց զարգացման ուղղությամբ մասսաների ստեղծագործական ակտիվության ամուր և մշտապես գործող հիմքը: Եվ, եթե դրան ավելացվի նաև տնտեսության պլանային վարումը, հասարակության զարգացման օրենքների իմացությամբ զինված պարտիայի և պետության ղեկավարությունը, մարքսիստական-լենինյան գաղափարների ոգեշնչող ուժը, ապա պարզ կդառնա, թե որտեղ է դեպի կոմունիզմ մեր հասարակության զարգացման՝ մարդկությանը զարմացնող տեմպերի սկզբնապատճառը: Միայն սոցիալիզմն է ի վիճակի իմպերիալիզմի կապանքներում սառած ժամանակակից արտադրողական ուժերին հաղորդելու այն կենարար ազդակները, որոնք հնարավորություն են տալիս հասնելու հասարակական պրոգրեսի, հիրավի, արծվային թռիչքի:

Դեպի կոմունիզմ շարժման արագացումը, սակայն, չի կարող կամայականորեն, մարդկանց ցանկությամբ հասցվել այս կամ այն աստիճանի: Դա նույնպես պայմանավորված է օբյեկտիվ գործոններով՝ առկա նյութատեխնիկական բազայով և կադրերի կուլտուր-տեխնիկական մակարդակով: Որքան բարձր է դրանց զարգացումը, այնքան բարձր է շարժման արագությունը:



Վ. ԳՈՒԼՔԱՆՅԱՆ

Հայկական ՍՍՌ ԳԱ ակադեմիկոս

# ՑՈՐԵՆԻ ՍԵՐՄՆԱԲՈՒԾՈՒԹՅՈՒՆԸ ԿԵՆՍԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄ Է

*Սովետական Միությունում գյուղատնտեսական կուլտուրաների սերմնաբուծության հարցը առաջ է քաշել և պետական հոգածության առարկա դարձրել Վլադիմիր Իլյիչ Լենինը։ Այնուհետև, գյուղատնտեսության զարգացման էտապներին համապատասխան, որոշումներ են ընդունվել այս խնդրի վերաբերյալ։*

*Սերմնաբուծությանը վերաբերող կառավարական որոշումները սովորաբար հիմնականում ընդգրկում են կազմակերպական հարցեր, ցույց տալով, թե ինչպես պետք է կառավարել այդ գործը։ Հասկանալի է, որ այդ որոշումներում հաշվի են առնվում զարգացող գյուղատնտեսության վիճակը, նոր հնարավորությունները, պահանջները, հեռանկարները և այլն։ Սակայն այդ որոշումների նպատակը չէ արծարծել սերմնաբուծության գիտական, բիոլոգիական հիմունքները։*

*Ուրեմն, սերմնաբուծության հարցերը շոշափելիս պետք է կանգ առնել ո՛չ միայն նրա կազմակերպական կողմի, այլև նրա գիտական հիմունքի վրա։*

*Ցորենի, ինչպես և յուրաքանչյուր գյուղատնտեսական կուլտուրայի, սերմնաբուծությունը բխում է նրա բիոլոգիական առանձնահատկություններից, մասնավորապես սերմի, հատիկի բիոլոգիայից։*

*Սերմնահատիկը առաջանում է բիոլոգիական զարմանալի նուրբ պրոցեսների շնորհիվ և իր ձևավորման ընթացքում օժտվում նոր օրգանիզմ ստեղծելու ունակությամբ։ Սերմնահատիկի առաջացման պրոցեսները ենթակա են ղեկավարման, որը և նկատի է առնվում գիտահետազոտական ու գործնական աշխատանքների ընթացքում, մասնավորապես՝ սերմնաբուծության մեջ։*

*Ցորենի հատիկի ձևավորումը բույսի ու նրա ծաղկի մեջ տեղի ունեցող բարդ պրոցեսների հետևանք է։ Ծաղկափոշու հատիկներն ընկնում են ծաղկի վարսանդի սպիի վրա, որտեղ և ծլում են։ Ծիլը հասնում է ձվաբջջին, և այստեղ տեղի է ունենում բեղմնավորումը, սկսում է ձևավորվել պտուղը՝ սերմնահատիկը։*

*Ցորենի ծաղկափոշու հատիկների ցրումը և նրանց ընկնելը վարսանդների սպիների վրա (ու այնուհետև բեղմնավորումը) բնության պայմաններում կատարվում է օդի շարժման շնորհիվ։ Բեղմնավորումը տեղի է ունենում ո՛չ միայն նույն ծաղկում առաջացած ծաղկափոշով փոշոտվելու, այլև նույն հասկի հարևան ծաղկի, նույն բույսի հարևան հասկի, հարևան բույսի կամ մի քանի բույսերի ծաղիկներից թափված և օդում շարժվող ծաղկափոշու հատիկներով փոշոտվելու միջոցով։*



*Եթե բեղմնավորումը տեղի է ունենում տարբեր օրգանիզմների միջև, ապա ստացված սերունդն ավելի կենսունակ ու կենսային է լինում, քան միևնույն օրգանիզմի, առավել ևս՝ միևնույն ծաղկի սահմաններում կատարված բեղմնավորումից ստացված սերունդը։ Այս օրինաչափությունը վերաբերում է նաև ցորենին։*

*Տարբեր օրգանիզմների խաչաձևումից ստացված սերնդի կենսունակությունը և ավելի բարձր կենսայնությունը բացատրվում են հիբրիդային օրգանիզմների մեջ առաջացող տարորակությամբ։ Իհարկե, այս օրինաչափությունը հարաբերական է և դրսևորվում է որոշ, բիոլոգիապես ընդունելի սահմաններում։ Հաճախ իրենց բնույթով շատ հեռու օրգանիզմները խաչաձևվելով՝ տալիս են անկենսունակ կամ դեպրեսիվ սերունդ։ Ուրեմն, հարկավոր է հաշվի առնել, թե սերմնաբուծական հարցերը լուծելիս ձեռքի տակ եղած բույսերը, սորտերը հենց այս տեսակետից ինչպիսին են։*

*Հատիկը, ձևավորվելով միևնույն ծաղկից կամ տարբեր բույսի ծաղիկներից ստացվող ծաղկափոշով փոշոտվելու միջոցով, պետք է տա և տալիս է տարբեր ժառանգականությամբ օժտված, միմյանցից զանազանվող սերունդ։ Հայտնի է, որ եթե տարբեր բույսերի մեջ բեղմնավորումը տեղի է ունենում միևնույն սորտի սահմաններում, ապա այդ դեպքում ևս ստացվում են բույսեր, որոնք որակով տարբեր են, հետևապես ավելի բարձր կենսայնությամբ։ Եվ այդ հասկանալի է, քանի որ նույնիսկ մաքուր սորտին պատկանող բույսերը միմյանցից այս կամ այն չափով տարբերվում են, փոքր կամ մեծ չափով տարբեր ձևով զարգանալով սերունդներում, ըստ արտաքին պայմանների փոքր կամ մեծ տարբերությունների. այս տարբերությունները բիոտիպային են և չեն խախտում սորտի մաքրությունը։*

*Ամեն մի սերմնահատիկ, ձևավորվելով ու հասունանալով մայր բույսի վրա և այնուհետև համապատասխան պայմաններում գտնվելով, նոր սերունդ է տալիս։ Ուստի և կարևոր է, որ այդ սերմնացուն լինի բարձրորակ, ունենա իրեն անհրաժեշտ նյութերը արտաքին պայմաններից վերցնելու մեծ ակտիվություն և ընդունակ լինի ապահովելու ու զարգացնելու հաջորդ սերնդի բնույթը։*

*Սերմացուի որակն ապահովվում է, մի կողմից՝ բեղմնավորման ժամանակ տեղի ունեցող ներքին նուրբ պրոցեսներով, մյուս կողմից՝ արտաքին միջավայրի պայմաններով, որոնք ազդում են այդ ներքին պրոցեսների վրա։ Սերմնահատիկի բնույթի ձևավորման ու զարգացման համար մեծ նշանակություն ունեն ագրոտեխնիկայի, բույսերի պաշտպանության և այլ պայմանները։*

*Կա մի կարևոր պայման ևս, որն անհրաժեշտ է սերմացուի լավագույն որակի ապահովման համար։ Դա սերմացուի լավ սնումն է՝ նրա առաջացման ու ձևավորման ընթացքում։ Դրա համար մեծ նշանակություն ունեն ագրոտեխնիկական, ագրոքիմիական և ֆիտոպաթոլոգիական ու էնտոմոլոգիական բարենպաստ պայմանները, ինչպես և ֆիտոտեխնիկան։*

*Ֆիտոտեխնիկական են կոչվում բույսերի խնամքի այն ձևերը, որոնք*

գործադրվում են ոչ թե հողի մշակման միջոցով, այլ անմիջականորեն։ Դրանց թվին են պատկանում նաև, օրինակ՝ բույսերի հատումները։

Այս հոդվածում մենք կանդրադառնանք հատկապես բույսերի հատումներին, որպես ֆիտոտեխնիկական խիստ արդյունավետ եղանակի։

Բույսերի խնամքը հատումների միջոցով՝ նորություն չէ։ Դեռևս նախամարդն է դիտել ու կռահել, որ այն ծառերը, որոնց ճյուղերը ինքը կտրել է ու տարել իր բնակավայրը, հաճախ ավելի լավ ճյուղեր ու պտուղներ են տալիս։ Այս չափազանցված օրինակը, այնուամենայնիվ, մոտիկ է ճշմարտությանը։

Սակայն հատումների էությունը երկար ժամանակ անհասկանալի և անբացատրելի է եղել։ Միայն մի քանի տասնամյակ առաջ պարզվեց, որ բույսերի հատման շնորհիվ օրգանիզմների մեջ տեղի է ունենում սննդանյութերի վերաբաշխում։ Վերաբաշխված սննդանյութերը տրամադրվում են բույսի վրա հատումներից հետո մնացած մասերին և ապահովում նրանց մեջ տեղի ունեցող պրոցեսները։ Օրինակ, պարզվել է, որ ֆիտոտեխնիկայի շնորհիվ բույսերի վրա ձևավորված պտղային օրգանները ոչ թե թափվում, այլ լավ են զարգանում։

Տողերիս գրողը հաստատել է մի այլ օրինաչափություն. հատումն ուժեղացնում է բույսերի վրա մնացած օրգանների ու մասերի սնումը, սակայն չի փոխում նրանց աճման ու զարգացման ընթացքը, այլ միայն ուժեղացնում է։ Եթե բույսը գտնվում է իր կյանքի աճման շրջանում, ապա արագանում է նրա աճը, իսկ եթե այն գտնվում է իր ընդհանուր հասունացման, մասնավորապես բերքի հասունացման շրջանում, ապա բերքն ավելի արագ է հասունանում։

Նշանակում է ճիշտ կիրառվող ֆիտոտեխնիկայի միջոցով կարելի է որոշ չափով ղեկավարել բույսերի աճման ու զարգացման ընթացքը։ Մի շարք հետազոտություններ ցույց են տվել, որ ֆիտոտեխնիկան կիրառելի է նաև ցորենի հատիկի բարելավման նպատակով։

Սերմնաբուծության պատշաճ կազմակերպման համար պետք է միշտ հիշել, որ.

1. Յուրաքանչյուր սորտ ունի իր ժառանգական հիմունքը, որի պահպանությունը չափազանց կարևոր է տվյալ սորտին հատուկ բարձր բերք ստանալու համար։

2. Սորտի ժառանգական հիմունքը սերմնահատիկի միջոցով փոխանցվում է սերնդից սերունդ։ Սերմնահատիկը պետք է բարձրորակ լինի և նպաստի սորտի բնույթի լրիվ ձևավորմանն ու բույսի զարգացմանը՝ հաջորդական սերունդների ընթացքում։

3. Սորտի բնույթի պահպանմանը նպաստում են բույսերի մեջ բիոլոգիական տարրրակություն առաջացնող ներքին (խաչաձևում, ներսորտային խաչաձևում) և արտաքին (ագրոտեխնիկա, ֆիտոտեխնիկա, ագրոքիմիա, պաշտպանություն վնասատուներից) պայմանները։

4. Կարևոր նշանակություն ունի սերմնահատիկի սերմացուական որակը, որն ապահովվում է լավ կազմակերպված սերմնաբուծությամբ։

Սերմնաբուծության վերաբերյալ կառավարական որոշումներում չեն հիշատակվում և չեն կարող հիշատակվել սերմնաբուծական աշխատանքների բոլոր օղակները։ Այսպես՝ ՍՄԿՊ ԿԿ և ՍՍՌՄ Մինիստրների սովետի՝ «Հացահատիկների, յուղատու կուլտուրաների և խոտերի սերմնաբուծության վերա-



բերյալ» որոշմամբ (1960 թ.) սահմանվում է սերմնաբուծության կազմակերպման նոր սիստեմ։

Հակիրճ նշենք սերմնաբուծության նախկին սիստեմի հիմնական կողմերը և ցույց տանք դրա թերությունները։

Սորտային սերմերի արտադրման և դրանցով կոլտնտեսություններն ու սովխոզներն ապահովելու կարգը չի համապատասխանում կոլտնտեսային ու սովխոզային արտադրության պահանջներին, չի նպաստում այն բանին, որ բոլոր տնտեսություններում ցանքը կատարվի շրջանացված սորտերի սերմերով։ Այդ հանգամանքը կասեցնում է նոր սորտերի ներդրումը, որի հետևանքով ժողովրդական տնտեսությունը զրկվում է այն հավելյալ բերքից, որը տալիս է նոր սելեկցիոն սորտը՝ համեմատած հնի հետ։

Գիտահետազոտական հիմնարկություններում արտադրված էլիտային սերմացուն անմիջականորեն չի տրվում կոլտնտեսություններին ու սովխոզներին, այլ հանձնվում է հացամթերման կետերին, որոնք այն հանձնում են շրջանային սերմնաբուծական տնտեսություններին՝ բազմացնելու, որից հետո նորից ետ են մթերում և նոր հանձնում կոլտնտեսություններին ու սովխոզներին՝ սերմնաբուծական հողամասերում ցանելու համար։ Սերմնաբուծության այդպիսի կազմակերպմամբ սերմացուի ավելորդ տեղափոխություններ են կատարվում, որի հետևանքով վերանում կամ թուլանում է անհրաժեշտ պատասխանատվությունը սերմացուի որակի համար։

Այսպիսի պայմաններում պատշաճ սորտավերանորոգում չի կատարվում, իսկ նախատեսված սերմացուով իրացնում են արտադրական ցանքերի սերմացուի պակասը։

Կոլտնտեսությունների և սովխոզների մեծամասնությունն ապահովված չէ բավարար թվով սերմազտիչ մեքենաներով, սերմաչորանոցներով. սերմացուի մշակումը կատարվում է ցրված՝ բոլոր բրիգադաներում և օղակներում, սուղ են փոխադրական միջոցները, որի հետևանքով սերմացուն ժամանակին չի փոխադրվում, զտվում, չորացվում և, այսպիսով, դառնում է ցածրորակ։

Այս թերությունների վերացման նպատակով 1960 թվականի որոշման մեջ նախատեսված են մի շարք միջոցառումներ։

Սովետական կառավարության ընդունած որոշումների համաձայն բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզները պետք է ապահովեն իրենց ցանքերը սորտային սերմերով։ Կոլտնտեսություններն ու սովխոզները հացահատիկների էլիտային և առաջին վերարտադրման սերմացուն ստանում են գիտահետազոտական ինստիտուտներից։ Նրանք կազմակերպում են այդ սերմացուի բազմացումը՝ ապահովելով արտադրական ցանքերը բարձրորակ սերմացուով և, միաժամանակ, ստեղծում են ապահովագրական ֆոնդեր։ Տնտեսությունը սերմացուով ապահովելու գործը կենտրոնացվում է մեկ բրիգադայում կամ օղակում։

Գիտահետազոտական հիմնարկությունն արտադրում է էլիտային և առաջին վերարտադրման սերմացու, որը հանձնվում է կոլտնտեսություններին ու սովխոզներին։

Սորտի հեղինակ-հիմնարկությունը սուպերէլիտային և էլիտային սերմացու է հանձնում սերմացու արտադրող գիտահետազոտական հիմնարկությանը, որպեսզի վերջինս սերմնաբուծություն կազմակերպի։

Սակայն այս որոշումները ևս նկատի ունեն սերմնաբուծության միայն

կազմակերպական կողմը։ Իսկ ո՞րն է սերմնաբուծությունը վարելու գիտական հիմունքը, ուղղությունը, մեթոդը, որը կարող է ապահովել բիոլոգիապես բարձրորակ սերմացու։

Այս հարցին պատասխանելու համար քննության առնենք սերմնաբուծության այժմյան եղանակը։

Որևէ ռայոնացված սորտի սերմնաբուծություն սկսելիս սերմացուական ելանյութ է հավաքվում։ Այդ նպատակով մեկ, իսկ ավելի լավ է մի քանի, լավագույն ցանքերից սերմահատիկ է վերցվում կամ այդպիսի ցանքերից առանձին հասկեր ու թփեր են հավաքվում և դրանց հատիկներով հատուկ ցանք է կատարվում։

Այդ ցանքում անց է կացվում ներսորտային խաչաձևում։ Ներսորտային խաչաձևման ենթարկված հասկերը հավաքվում են, կալսվում, և հատիկները ցանվում են ագրոտեխնիկական լավագույն պայմաններում։ Այս ցանքում ընտրվում և հավաքվում են մի քանի հազար լավագույն թփեր։ Այդ թփերը ծեծվում են առանձին, և ստացված սերմը ցանվում է շարքերով՝ ընտանիքներով, գծերով։ Այս ցանքը կոչվում է ընտրության բուծարան, որտեղ ընտրում են լավագույն ընտանիքները և խոտանում վատերը։

Լավագույն ընտանիքներից ստացված սերմացուի մի մասը հաջորդ տարի դարձյալ ցանում են ընտանիքներով, գծերով, նպատակ ունենալով կրկին ստուգել դրանցից յուրաքանչյուրի բերքատվությունը և դարձյալ լավագույնների ընտրություն է կատարվում։ Ստացված սերմացուն խառնվում է ու ցանվում, որով և կազմակերպվում է սերմնաբուծարանը։ Սերմնաբուծարանից ստացված հատիկները ցանում են, այդպիսով կազմակերպելով նախնական բազմացման բուծարանը։ Նախնական բազմացման բուծարանից ստացված սերմացուն ցանելով, կազմակերպում են սուպերէլիտային բուծարանը։ Սուպերէլիտային սերմացուն օգտագործվում է էլիտային սերմացուի ստացման ցանքի համար։

Էլիտային սերմացուն բազմացվում է գիտահետազոտական ինստիտուտում, ցանվելով ագրոտեխնիկական լավագույն պայմաններում։ Այս ցանքից ստացվում է առաջին վերարտադրման սերմացուն։

Ահա սերմնաբուծության բարելավված սխեմաներից մեկը.

1. Ելանյութային սերմացուի հավաքում (հատիկներով կամ հասկերով ու թփերով)

2. Ներսորտային խաչաձևում
3. Ընտրության բուծարան (կրկնվող)
4. Սերմնաբուծարան
5. Նախնական բազմացման բուծարան
6. Սուպերէլիտային բուծարան
7. Էլիտային բուծարան
8. Էլիտային բազմացում

Այս ամենից հետո սերմացուն ուղարկվում է կոլտնտեսություններին ու սովխոզներին, որտեղ սերմնաբուծական բրիգադները կամ օղակները բազմացնում են այն և ուղարկում արտադրական դաշտերը։ Արտադրական դաշտերն ստանում են էլիտային 4-րդ, 5-րդ, երբեմն՝ 5-րդ ու 6-րդ վերարտադրման սերմացու։



Ամեն մի կոլտնտեսություն ու սովխոզ սերմացուի նոր քանակություն է ստանում 4 տարին մեկ անգամ։

Սերմնաբուծության այս սխեման նույնպես շատ բարդ է, թեև 1960 թ. որոշման շնորհիվ ազատվել է կազմակերպական մի շարք բարդություններից։ Այսպես. գիտահետազոտական ինստիտուտը էլիտային սերմացուն առաջներում՝ մինչև 1960 թ. որոշումը, հանձնում էր հացամթերման օրգաններին, որոնք այն հանձնում էին շրջանային սերմնաբուծական տնտեսություններին՝ 2-րդ և 3-րդ վերարտադրման սերմացու ստանալու համար։ Հետո նույն շրջանային սերմնաբուծական տնտեսությունները մթերում էին 3-րդ վերարտադրման սերմացուն և հանձնում կոլտնտեսություններին ու սովխոզներին։ Նոր որոշումից հետո սերմացուն անմիջականորեն ուղարկվում էր կոլտնտեսություններին ու սովխոզներին։

Վերևում նկարագրված սերմնաբուծության եղանակն ունի և՛ դրական, և՛ բացասական կողմեր։ Դրականը՝ սերմնաբուծության համար սկզբնական, ելակետային ցանքանյութ հավաքելն է և ներսորտային խաչաձևումը։ Բացասականը՝ այն մեծ ճանապարհն է, որը պետք է անցնի սերմացուն՝ իր ստեղծման սկզբից մինչև արտադրական ցանքերը։ Սերմնաբուծության այս եղանակի բացասական կողմերն ավելի շատ են, քան դրականները։ Ուստի, պետք է մշակել սերմնաբուծության մի նոր եղանակ, որը պահպանելով դրականը, ազատագրվի բացասական կողմերից։

Ինչպիսի՞ն է ցորենի սերմնաբուծության այն նոր եղանակը, որն ուսումնասիրվում է վերջին մի քանի տարիների ընթացքում։

Ամենից առաջ, պետք է նշել, որ սերմնաբուծությանը չպետք է մոտենալ որպես սելեկցիայի մի ճյուղի, ինչպես այդ արվում է մինչև այժմ։ Սերմնաբուծության այդ վիճակը, սելեկցիայի հետ նրա այդօրինակ կապված մնալը, խանգարում է նրան և զրկում ավելի ազատ զարգանալու հնարավորությունից։

Սերմնաբուծությունը գյուղատնտեսական գիտության այն բնագավառներից է, որը խոր արմատներ ունի գյուղատնտեսության պրակտիկայում։ Այդ տեսակետից սերմնաբուծությունը, ավելի ճիշտ՝ ժողովրդական սերմնաբուծությունը, հին պատմություն ունի։ Երկրագործ մարդը իր գիտակցական կյանքի առաջին քայլերից սկսած հասկացել է, որ լավ սերմացուն բարձր բերք ստանալու գրավականներից մեկն է։ Լավ սերմացուն պետք է վերցնել լավ ծնողական ձևերից՝ լավագույն ցանքերից, նույնիսկ լավագույն հասկերից ու սրանց ամենալավ մասերից և այն ցանել ագրոտեխնիկական լավ պայմաններում։

Սակայն չափազանց հետաքրքրական է, որ սերմնաբուծությունն այդքան հին անցյալ ունենալով, չի ունեցել իր հիմունքը, ավելի ճիշտ՝ իր տեսությունը։ Հասկանալի է, որ վերոհիշյալ ընդհանրացումը՝ լավ սերմացուն լավ ցանքում աճեցրած լավ ծնողից է ստացվում և դրա շնորհիվ լավ սերունդ է տալիս, դեռևս բավարար չէ, որովհետև դրանով պարզվում է սերմնաբուծության գործնական ընթացքը, բայց ոչ գիտական այն հիմունքը, որը հասկանալի լինի ու աղբյուր հանդիսանա գործնական սերմնաբուծության կազմակերպման համար։ Այդպիսի մի տեսական դրույթ առաջադրվեց 1935—1936 թվականներին (Տ. Դ. Լիսենկո)։

Ըստ այդ դրույթի սերմնաբուծության գլխավոր էությունը սորտի ժառանգական հիմունքի պահպանումն է։ Այդ տեսությունը ելակետ է ընդունում այն, որ յուրաքանչյուր օրգանիզմ, տեսակ, այլատեսակ, սորտ ունի իր ժառանգա-

կան հիմունքը, որին հատուկ է զարգացման որոշ պրոցես։ Այս պրոցեսում տեսակը, այլատեսակը, սորտը կարող են փոխվել այս կամ այն արագությամբ, ընդ որում ինչպես դեպի կենսայնության բարձրացումը, այնպես էլ դեպի անկումը՝ համապատասխանաբար արտահայտելով միջավայրի ազդեցությունները։ Սերմնաբուծությունը պետք է ուսումնասիրի այս օրինաչափություններն իր ընդհանուր ու կոնկրետ արտահայտություններով և աշխատի պարզել սորտի ժառանգական հիմունքի պահպանման եղանակները։ Այդ հնարավորություն կտա երկարացնելու սորտի կյանքը, նրա օգտագործումը տնտեսության մեջ։ Սորտի ժառանգական հիմունքի պահպանումը, նրա կենսայնության և բարձր բերքատվության ապահովումը հսկայական նյութական արժեքի խնայողություն է նշանակում։

Գյուղատնտեսական ամեն մի կուլտուրայի, այդ թվում և ցորենի, սերմնաբուծությունն սկսվում է սորտի շրջանացմամբ։ Սերմնաբուծությունը սելեկցիայի այն մերձավոր ճյուղն է, որը սելեկցիայից պետք է միայն նոր սորտեր ստանա, բայց աշխատի ոչ թե սելեկցիայի, այլ իր սեփական մեթոդներով, իր ձեռքը վերցնելով սորտի ժառանգական հիմունքի պահպանման գործը։

Առհասարակ ցորենի սերմնաբուծությունն սկսվում է տվյալ սորտի սերմանյութը հավաքելով։ Այդ սերմանյութը պետք է տիպիկ լինի տվյալ սորտի համար և հավաքվի տարբեր վայրերում աճեցված լավագույն ցանքերից, որպեսզի բարձրանա սորտի բիոլոգիական տարորակությունը, որը սորտի կենսայնության բարձրացման հիմնական պայմաններից մեկն է։

Սկզբնական սերմացու հավաքելու համար օգտագործում են նաև զանազան ձևով կատարված ցանքեր, օրինակ, ենթաձմեռացանը, յարովիզացված սերմերով կատարված ցանքերը, որոնց այստեղ չենք անդրադառնում, հիշատակելով միայն, որ այս դեպքերում նույնպես նկատի է առնվում նույն հիմնական հարցը՝ սորտի սահմաններում ցանվող բույսերի սորտային մաքրությունը, բայց և նրանց բիոլոգիական տարորակությունը։ Ավելի լավ է սկզբնական սերմացուն հավաքել թփերով ու հասկերով, քան թե սերմերով։ Այդ դեպքում սորտի մաքրությունն ու տիպիկությունն ավելի լավ են ապահովվում։

Ահա այս սկզբնական սերմացուն պետք է դառնա ցորենի սերմնաբուծության հիմնաքարը։ Այս դեպքում առ ժամանակ այն պետք է թարմացվի վերևում նկարագրված ձևով հավաքվող սերմանյութով, մեծագույն ուշադրությամբ ստուգվի՝ սորտի մաքրությունն ու բերքատվությունը պահպանելու տեսակետից և խառնվի սկզբնական սերմացուին։

Սկզբնական սերմացուն պետք է ցանվի և ցանքը մշակվի ագրոտեխնիկական լավ պայմաններում։ Ցանքը պետք է կատարվի երկշար-եղանակով, երկշարքերը իրարից 70—75 սմ հեռավորությամբ, շարքացանով։ Ցանքի նորման հողային լավ պայմաններում՝ 25—30 կգ 1 հեկտարին, որը ցածր հողային պայմաններում կարելի է հասցնել մինչև 35—40 կիլոգրամի։ Լայն միջշարքերը պետք է կուլտիվացիայի ենթարկվեն՝ ագրոտեխնիկական լավ պայմաններ ստեղծելու և մոլախոտերի դեմ պայքարելու նպատակով։ Մոլախոտերի դեմ պետք է պայքարել նաև հերբիցիդների միջոցով։

Այս ցանքը մենք անվանում ենք **սորտի և սուպերէլիտայի բուծարան:**

Սերմնաբուծության մեջ այս օղակը՝ սորտի ժառանգական հիմունքի պահպանումը և սուպերէլիտայի արտադրումը, որոշիչ նշանակություն ունի, ուստի և առանձին հոգատարություն է պահանջում։



Ի՞նչ աշխատանքներ պետք է կատարվեն այս ցանքում։

**Առաջին:** Պետք է հեռացվեն բոլոր այն բույսերը, որոնք խախտում են սորտի մաքրությունը, տիպիկությունը, բերքատվությունը՝ հետևապես նրա ժառանգական հիմունքը։ Ցանքում պետք է թողնվեն ամենալավ, կանգուն և փարթամ հասկեր ունեցող թփերը և հեռացվեն բոլոր նվազ, հիվանդ բույսերը։ Այս աշխատանքը պետք է կատարվի ամբողջ ցանքում և մեծագույն խնամքով։ Պետք է նկատի ունենալ, որ սորտի ընտրությունը սելեկցիոները կատարել է նպատակադիր՝ ձգտելով սորտի մեջ ամրապնդել մի շարք հատկություններ, որոնք և պայմանավորել են սորտի բարձր բերքատվությունը և հիմք հանդիսացել նրա շրջանցման։ Այդ հատկություններն այնքան էլ արագ չեն փոխվում, մանավանդ, եթե սերմնաբույծը հոգում է այդ մասին։

**Երկրորդ:** Բույսերից պետք է հեռացվեն բոլոր նվա՛զ հասկերը և թողնվեն միահավասար բարձրությամբ ամենալավ զարգացածները։ Նվազ հասկերը պետք է կտրվեն ու հեռացվեն կա՛մ իրենց ցողունների հիմքից, կա՛մ ցողունների վերևից։ Վերջին դեպքում հասկերը ձեռքով ձգվում ու դուրս են քաշվում վերին միջհանգույցի հետ միասին կամ կտրվում են դանակով՝ անմիջապես հասկի տակից։ Այս աշխատանքը պետք է կատարել բույսերի զարգացման կաթնային փազի սկզբից մինչև մոմայինի վերջը։

**Երրորդ:** Հասկերը պետք է ենթարկվեն հատման, այսինքն՝ պետք է պոկվեն նրանց հիմքի ու ծայրի ամենաթույլ հասկիկները, նաև հասկիկների միջին ծաղիկները։ Այս աշխատանքը կարելի է կատարել այնքան, որքան հնարավոր է ըստ աշխատող ձեռքերի թվի, դրանում ներգրավելով պատանիներին, դպրոցների վերջին դասարանների աշակերտներին, որոնք այս գործը պետք է կատարեն որպես իրենց ուսումնական ծրագրի մի մասը։ Հեշտ է ու դյուրըմբռնելի այս աշխատանքը և մի հոգին կարող է 5—6 ժամում 400—500 հասկ ենթարկել ֆիտոտեխնիկայի։ Այս աշխատանքը կարելի է կատարել մինչև բույսերի հասունացման կաթնամոմային փազի վերջը, մոմայինի սկիզբը։

**Չորրորդ:** Ծաղկումից առաջ ֆիտոտեխնիկայի ենթարկված հասկերի մի մասը պետք է ենթարկվի կաստրացիայի՝ ներսորտային ազատ փոշոտման համար։ Այս աշխատանքը նույնպես դժվար չէ։ Հենց մեզ մոտ, մեր ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններում մեկ մարդը հեշտությամբ կարող է կաստրացիայի ենթարկել 80—100 հասկ՝ 3—5 ժամվա ընթացքում։ Այս աշխատանքը նույնպես կարող են կատարել թե՛ սերմնաբուծական և թե հարևան տնտեսությունների պատանիներից կազմված ջոկատները։

Սորտի՝ ու սուպերէլիտայի բուծարանի ցանքը պետք է կատարվի շարքացանով, բերքը հավաքվի կոմբայնով։

Սորտի և սուպերէլիտայի բուծարանից ստացված սերմացուն կոչվում է սուպերէլիտա։ Այս սերմացուն ցանվում է **էլիտային սերմացուի ստացման բուծարանում:** Ցանքը կատարվում է շարքացանով, ագրոտեխնիկական լավագույն պայմաններում։ Ցանքի նորման պետք է 25—30 տոկոսով ցածր լինի տեղում ընդունված արտադրական նորմայից։ Ցանքը և բերքահավաքը պետք է կատարվեն գյուղատնտեսական մեքենաներով։

Էլիտայի բուծարանում ստացված սերմացուն տրվում է կոլտնտեսության և սովխոզի սերմնաբուծական բրիգադաներին, որոնք ցանքը կատարում են լավագույն ագրոտեխնիկական պայմաններում և իրենց ստացած սերմացուով բավարարում արտադրության պահանջները։ Արտադրությանը հանձնելով

1-ին կամ 2-րդ վերարտադրման սերմացու, նրանք միաժամանակ սեփական սերմնադաշտերը ապահովում են իրենց իսկ ստացած սերմացուով՝ մինչև էլիտային սերմացու ստանալը։

Այս սիստեմի դեպքում, ինչպես տեսնում ենք, կոլտնտեսության և սովխոզի սերմնաբուծական բրիգադան ստանում է ոչ պակաս, քան 1-ին կամ 2-րդ վերարտադրության սերմացու, բայց և, միաժամանակ, զգալի չափով բարձրանում է սերմնաբուծական բրիգադայի կամ օղակի պատասխանատվությունը, զգալիորեն պակասեցվում է ձեռքի աշխատանքը, գյուղատնտեսական մեքենաներն օգտագործվում են լայն չափերով։ Հավանաբար հարկ կլինի երկշաբերում քաղհան-կուլտիվացիա կատարել, որի նշանակությունը ավելի կբարձրանա հերբիցիդների կիրառման շնորհիվ։

Բույսերի բնույթի բարելավման համար անհրաժեշտ ագրոբիոլոգիական եղանակները կիրառվում են ավելի մեծ չափերով։

Հիմնական սերմնաբուծական-ագրոբիոլոգիական աշխատանքը կատարվում է սուպերէլիտայի դաշտում։ Իսկ էլիտայի դաշտում այդպիսի աշխատանքներ չեն կատարվում, այստեղ միայն կիրառվում է լավագույն ագրոտեխնիկա։

Լուսաբանենք մի քանի հարց ևս։

Ենթադրենք, որ գիտահետազոտական ինստիտուտի սերմնաբուծական բազայում սորտի և սուպերէլիտայի բուծարանը գրավում է 5 հեկտար տարածություն։ Հնարավո՞ր է, արդյոք, այդքան տարածության վրա կատարել վերևում նշված աշխատանքները։ Անշուշտ հնարավոր է, քանի որ երկշար-լայնաշարքի շնորհիվ այդ տարածության միայն մեկ երրորդ մասն է գրավված լինում բույսերով։ Բացի այդ, ինչպես ասվեց, այս գործը կարելի է կատարել այնքան, որքան հնարավոր է հասցնել տվյալ տարում, ինչքան թույլ է տալիս բանվորական ձեռքերի քանակը (չպետք է մոռանալ դպրոցական պատանիներին)։

Ինչով է բացատրվում, որ տվյալ տարում վերոհիշյալ ագրոբիոլոգիական աշխատանքները հնարավոր է կատարել ոչ բոլոր բույսերի վրա։

Բանն այն է, որ սորտի և սուպերէլիտայի բուծարանից սերմացուն բաժանվում է երկու մասի։ Մի մասը ցանվում է սորտի սուպերէլիտայի բուծարանում, մյուս մասը՝ էլիտային սերմացուի արտադրման ցանքում։ Սորտի և սուպերէլիտայի բուծարանի ցանքում դարձյալ կատարվում են վերոհիշյալ չորս աշխատանքները և այսպես, տարեցտարի մշակվում է տվյալ սորտը ու իրականացվում նրա սերմնաբուծությունը։ Եվ, քանի որ նշված ագրոբիոլոգիական եղանակները կատարվում են ամեն տարի, ապա պարզ է, որ նրանց ազդեցությունը սորտի ու նրա սերմացուի վրա հետզհետե կավելանա, բուծարանում ամեն տարի կատարվող միջոցառումները որոշակի չափով կբարձրացնեն սորտի կենսայնությունը։

Սերմնաբուծության այս սիստեմը մի առավելություն ևս ունի. այն կարելի է կազմակերպել նաև կոլտնտեսություններում ու սովխոզներում, որով և ցորենի սերմնաբուծությունը չափազանց հեշտ և էժան կլինի։ Ամեն մի գյուղատնտես հեշտությամբ կարող է կազմակերպել և ղեկավարել այս գործը։

Ս. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

# ՊԱՏԱՆԵԿՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Արդի ժամանակաշրջանում երիտասարդության արտադրողական աշխա-
տանքի նախապատրաստելը կոմունիստական դաստիարակության կարևորա-
գույն խնդիրներից մեկն է։

ՍՄԿՊ ծրագրում ասված է, որ դաստիարակչական աշխատանքի կենտրո-
նում պարտիան դնում է հասարակության բոլոր անդամներին աշխատանքի
նկատմամբ կոմունիստական վերաբերմունքով տոգորելը։ Աշխատանքով է
ստեղծվում այն ամենը, ինչ անհրաժեշտ է մարդկանց ապրելու և զարգանալու
համար։ Ուստի, յուրաքանչյուր մարդ պետք է աշխատի և դրանով իսկ անմի-
ջական մասնակցություն ունենա այն միջոցների ստեղծմանը, որոնք անհրա-
ժեշտ են նրա կյանքի ու գործունեության, հասարակության առաջընթացի ու
բարօրության համար։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները գիտականորեն հիմնավորել են, որ
կոմունիստական հասարակարգի բազմակողմանի զարգացած մարդիկ պատ-
րաստելու համար կենսական անհրաժեշտություն է ուսուցման և արտադրո-
ղական աշխատանքի սերտ շաղկապումը։

«...գործարանային սիստեմից բողբոջեց ապագայի դաստիարակության
սաղմը, երբ որոշ հասակից բարձր բոլոր երեխաների համար արտադրողական
աշխատանքը միացվելու է դասավանդման ու մարմնամարզության հետ, ո՛չ
միայն որպես հասարակական արտադրությունը բարձրացնելու միջոցներից
մեկը, այլև իբրև միակ միջոց բազմակողմանիորեն զարգացած մարդիկ ար-
տադրելու համար» (Կ. Մարքս, Կապիտալ, հատ. 1, էջ 508, Հայպետհրատ,
1954 թ.)։

Վ. Ի. Լենինը՝ Նարոդնիկական պրոժեկտորության փոխարները աշխատու-
թյան մեջ պարզ ու որոշակի շարադրել է ուսուցումը արտադրողական աշխա-
տանքի հետ միացնելու սկզբունքները։ «Չի կարելի պատկերացնել ապագա
հասարակության իդեալը,— գրել է Վ. Ի. Լենինը,— առանց ուսուցումը միաց-
նելու երիտասարդ սերնդի արտադրողական աշխատանքի հետ. ո՛չ ուսու-
ցումն ու կրթությունն առանց արտադրողական աշխատանքի, ո՛չ արտադրո-
ղական աշխատանքն առանց զուգահեռ ուսուցման ու կրթության չեն կարող
դրվել այն բարձրության վրա, որ պահանջում են տեխնիկայի արդի մակար-
դակը և գիտական իմացության վիճակը» (Երկեր, հատ. 2, էջ 602—603)։

Մեր երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական առաջընթացը, արտադրության կոմպլեքսային մեքենայացումը, ավտոմատացումն ու քիմիացումը, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների լայն կիրառումը արմատապես փոփոխում են բանվորների ու կոլտնտեսականների աշխատանքի բնույթը, նրանց աշխատանքը շատ բանով մոտենում է ինժեներների և ագրոնոմի աշխատանքի բնույթին։

Սակայն արտադրության ավտոմատացումը չի լիկվիդացնում բանվորի ֆիզիկական աշխատանքը, այլ հեշտացնում է այն, բայց նրանից պահանջում է ավելի շատ տեխնիկական գրագիտություն, առանց որի դժվար է ղեկավարել ժամանակակից արտադրության բարդ սարքավորումներն ու մեխանիզմները։

Սոցիալիստական արտադրության անընդմեջ ընդարձակմանն ու կատարելագործմանը զուգահեռ էական փոփոխություններ տեղի կունենան բանվորների պրոֆեսիոնալ կազմի և նրանց պատրաստման բնույթի մեջ։ Ուստի, աշխատանքային դաստիարակության հարցերը ինչպես հանրակրթական դպրոցում, այնպես էլ պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում, պետք է դրվեն և լուծվեն ժամանակակից արտադրության բարձր պահանջներին համապատասխան։ Ամենից առաջ մեր մանկավարժները և երիտասարդության դաստիարակության հետ անմիջական գործ ունեցող կադրերն իրենք պետք է լավ ծանոթանան արտադրության մեքենայացմանը, ավտոմատացմանն ու քիմիացմանը, իմանան մեր ժողովրդական տնտեսության հետագա զարգացման հեռանկարները։ Այդ նրանց կօգնի՝ ճիշտ կազմակերպելու սովորողների աշխատանքային դաստիարակությունը և ճիշտ լուծելու նրանց պրոֆեսիոնալ կողմնորոշման հարցերը։

Աշխատանքը մեծապես նպաստում է ամբողջ երիտասարդության մտավոր, ֆիզիկական ու բարոյական զարգացմանը, հատկություններ, առանց որոնց դժվար է պատկերացնել կոմունիստական հասարակարգի մարդուն։

Կենսագործելով պարտիայի XXII համագումարի պատմական որոշումները, մեր մանկավարժներն զգալի աշխատանք են կատարում երիտասարդության աշխատանքային դաստիարակության ուղղությամբ։ Այդ ավելի ցայտուն է երևում, հատկապես, երիտասարդության պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսուցման գործում։ Չէ՛ որ պրոֆեսիոնալ ուսումնարանները պատրաստում են որակյալ բանվորներ, որոնք համալրում են մեր հերոսական բանվոր դասակարգի շարքերը։ Պրոֆեսիոնալ տեխնիկական կրթությունը մեր երկրի տնտեսական ու կուլտուրական առաջընթացի կարևորագույն պայմաններից մեկն է։ Պարտիան մեզ սովորեցնում է, որ որքան բարձր լինի բանվորական կադրերի տեխնիկական ու կուլտուրական մակարդակը, այնքան հաջող առաջ կընթանա կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման կարևոր գործը։ Դեռևս 1919 թվականին «Պրոֆեսիոնալ-տեխնիկական գիտելիքների տարածման մասին» հայտնի դեկրետում, որ ստորագրված է Վ. Ի. Լենինի կողմից, ասված է, որ բանվորա-գյուղացիական ռևոլյուցիայի վերջնական հաղթանակի անհրաժեշտ ու գլխավոր նախապայմաններից մեկը աշխատանքի արտադրողականության բարձրացումն է. իսկ դրա հուսալի միջոցը ժողովրդական լայն մասսաների մեջ պրոֆեսիոնալ-տեխնիկական գիտելիքների ու հմտությունների տարածումն է։

Մեր երկրում լայն ծավալ է ստացել պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսուցումը ո՛չ միայն պրոֆեսիոնալ ուսումնարաններում, այլև արտադրական ձեռնարկություններում, միջնակարգ ու բարձրագույն ուսումնական հաստատություններում։



Պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ առանց բազմակողմանի աշխատանքային դաստիարակության չի կարելի պատրաստել գիտակից, որակյալ բանվորական կադրեր։ Ահա՛ թե ինչու ուսումնարանների վարպետները, ինժեներ-մանկավարժները, մասնագիտական ուսուցմանը զուգահեռ, պատշաճ դաստիարակչական աշխատանք պետք է ծավալեն՝ ապագա բանվորի մեջ պրոֆեսիոնալ հպարտություն, ընտրած մասնագիտության նկատմամբ սեր, դեպի աշխատանքը կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու, նրանց միջև ընկերասիրության և փոխօգնության հարաբերություններ զարգացնելու։



Դժվար է գտնել ժողովրդական տնտեսության որևէ բնագավառ, որտեղ չլինի երիտասարդության ստեղծագործ աշխատանքը։ Հարյուր-հազարավոր երիտասարդներ պարտիայի կոչով մեկնեցին խամ ու խոպանը յուրացնելու և պատվով են կատարում իրենց առջև դրված համաժողովրդական առաջադրանքները։ Այժմ հազարավոր երիտասարդներ մեկնում են քիմիայի հսկա կառույցներում աշխատելու։ Կոմերիտական կազմակերպությունները վերցնում են քիմիական մեծ գործարանների կառուցման շեֆությունը։

Դպրոցի մասին օրենքից հետո անցած վեց տարիների ընթացքում սովետական դպրոցի աշխատողները մեծ աշխատանք ծավալեցին ուսուցումը արտադրողական աշխատանքին մոտեցնելու, սովորողներին արտադրական աշխատանքի նախապատրաստելու դժվարին գործում։ Անհամեմատ բարձրացել է մեր երիտասարդության հետաքրքրասիրությունը արտադրողական աշխատանքի հանդեպ։ Միայն վերջին հինգ տարում ռեսպուբլիկայի արտադրական ուսուցմամբ հանրակրթական միջնակարգ դպրոցները ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերին տվել են տարբեր մասնագիտությունների ավելի քան 12660 բանվորական կադրեր։ Հայաստանի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանները նույն ժամանակամիջոցում արդյունաբերության և գյուղատնտեսության տարբեր ճյուղերին տվել են 25 հազար որակյալ բանվորներ կամ չորս անգամ ավելի, քան նախորդ հնգամյակում։ Այս թվերը պերճախոս վկայությունն են այն բանի, որ մեր երիտասարդության մեջ տարեցտարի ամրապնդվում է սերը արտադրողական աշխատանքի նկատմամբ, ձգտումը դեպի արտադրությունը։

Մեր կարծիքով աշխատանքային դաստիարակության հարցերն առավել հաջողությամբ են լուծվում պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության ուսումնական հաստատություններում։ Մեր ասածը հաստատելու համար բերենք մի քանի փաստեր։ Այժմ Սովետական Հայաստանի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում սովորում են մոտ 11,500 պատանիներ ու աղջիկներ։ Պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանները որակյալ բանվորական կադրեր են պատրաստում մոտ 115 մասնագիտությունների գծով։ Արդյունաբերության և գյուղատնտեսության տեխնիկական առաջընթացը նոր և առավել բարդ խնդիրներ է դնում ժամանակակից բանվորների առաջ՝ լինել տեխնիկապես գրա-

գետ, հանրակրթական գիտելիքներով զինված՝ բավարարելու համար ժամանակակից արտադրության պահանջները։ Փորձված վարպետների, ինժեներամանկավարժական կադրերի օգնությամբ սովորող երիտասարդը մեկ-երկու տարում տիրապետում է ընտրած մասնագիտությանը և առանց ժամանակ կորցնելու աշխատանքի անցնում արտադրության մեջ։

Պատանին կամ աղջիկը, որ ուսումնարան էր մտնում անհաստատ քայլերով, հաճախ կասկածանքով, ավարտելուց հետո արտադրություն է մտնում որպես իր գործի վարպետ, հպարտ այն բանով, որ դարձել է մեր երկրի կոմունիստական շինարարության ակտիվ ու ձեռներեց մասնակիցը։

Պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների սաները արտադրական ուսուցման ընթացքում պատրաստում են մեծ թվով շաղափող, խառատային, սրիչ և այլ հաստոցներ, դազգահներ, բազմաթիվ փականագործական գործիքներ։ Բավական է ասել, որ 1963 թվականին Հայաստանի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում սովորողների ձեռքով պատրաստվել են 725 տարբեր տիպի հաստոցներ, մոտ 500 դազգահ, մեծ քանակությամբ կահույք ու գործիքներ։ Սեփական աշխատանքի առաջին արդյունքը շատ կարևոր իրադարձություն է պատանի բանվորի կյանքում։

Աշխատանքային դաստիարակության լավ փորձ է կուտակել Երևանի № 13 պրոֆտեխնիկական ուսումնարանը։ Այստեղ սովորողները պատրաստել էին շատ գեղեցիկ աթոռներ։ Ուսումնարանի դիրեկտոր Ն. Մելքոնյանն այդ աթոռները նվիրեց նրանց՝ որպես իրենց ինքնուրույն աշխատանքի առաջին պտուղները։ Նույն ուսումնարանի սաների ձեռքով պատրաստվել է փոքրիկ հաշվիչ մեքենա, որը 1963 թվականին ցուցադրվեց Մոսկվայում՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսում։ Բարձր գնահատելով № 13 ուսումնարանի ղեկավարների և սովորողների ստեղծագործական աշխատանքը՝ ցուցահանդեսի դիրեկցիան ուսումնարանին պարգևատրեց 3-րդ կարգի դիպլոմով, դիրեկտոր Ն. Մելքոնյանը, վարպետներ Գ. Ռաֆելյանը, Ա. Նորիկյանը և 5 սովորողներ պարգևատրվեցին բրոնզե մեդալներով ու դրամով։

Մեր երիտասարդությունը ձգտում է հատկապես դեպի քիմիական արդյունաբերությունը։ Երևանի № 2 տեխնիկական ուսումնարանը դարձել է քիմիական կադրերի պատրաստման կատարյալ դարբնոց։ Իր գոյության 29 տարիների ընթացքում ուսումնարանը ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության համար պատրաստել է ավելի քան 6000 որակյալ բանվորներ, որոնք հաջողությամբ աշխատում են Երևանի Ս. Մ. Կիրովի անվան, պոլիվինիլացետատ, ավտոդողերի և մյուս գործարաններում։ Ուսումնարանի շրջանավարտներից շատերը իրենց հայրենանվեր աշխատանքով արժանացել են բարձր պարգևների, գլխավորում են կոմունիստական աշխատանքի բրիգադներ։ Երևանի էլեկտրալամպերի գործարանի համար բանվորական կադրեր է պատրաստում պրոֆեսիոնալ-տեխնիկական № 23 ուսումնարանը։ 1963 թվականին ուսումնարանը տվեց իր առաջին շրջանավարտները։ Հատուկ լամպերի ցեխում է աշխատում ուսումնարանի շրջանավարտներից կազմված բրիգադ, որը լավագույն աշխատանքի համար անցած տարվա հունվարին արժանացավ կոմունիստական աշխատանքի բրիգադայի պատվավոր կոչման։

Կոմունիստական աշխատանքի շարժման ծավալումը հսկայական նշանակություն ունի երիտասարդության աշխատանքային դաստիարակության հա-



մար։ Ուստի, մեր մանկավարժական կադրերի սրբազան պարտքն է՝ սովորողներին դաստիարակել կոմունիստական աշխատանքի բրիգադների հիանալի տրադիցիաներով։

Ցավոք սրտի, մենք ոչ միշտ ենք կարողանում լավագույն փորձը ըստ արժանվույն պրոպագանդել և օգտագործել մեր դաստիարակչական աշխատանքում։ Երիտասարդության աշխատանքային դաստիարակությունը պահանջում է ոչ թե վերացական խոսքեր, այլ կոնկրետ օրինակներ։ Փորձված բանվորները, մասնագետները՝ երիտասարդությանը պետք է պատմեն կոմունիստական աշխատանքի լավագույն օրինակների մասին։ Պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության սիստեմի աշխատողները պետք է լինեն գործարաններում, ֆաբրիկաներում, կոլտնտեսային, սովխոզային դաշտերում, ուսումնասիրեն դրական փորձը, մասսայականացնեն այն՝ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու նպատակով։

Աշխատանքային դաստիարակության համար կարևոր նշանակություն ունեն գյուղական շրջաններում դպրոցականներից կազմված աշակերտական բրիգադները։ Հայաստանի գյուղական դպրոցներում կազմակերպված է 140 աշակերտական բրիգադ, որտեղ ընդգրկված են 6700 աշակերտ։ Նրանք օգտակար գործ են կատարում գյուղատնտեսական արտադրության տարբեր տեղամասերում։ Սակայն կոլտնտեսությունների որոշ ղեկավարներ անտեսում են այդ բրիգադներում աշխատանքային դաստիարակության ուղղությամբ կատարվող ձեռնարկումների նշանակությունը և աշակերտների վրա նայում որպես լրացուցիչ բանուժի, չեն ստեղծում նրանց համար աշխատանքի պատշաճ պայմաններ ու հաճախակի աշակերտներին վանում են աշխատանքից։

Խոսելով աշխատանքային դաստիարակության մասին, չի կարելի անտեսել այդ գործում եղած լուրջ թերացումները։ Դեռևս կան երիտասարդներ, պատանիներ ու աղջիկներ, որոնք խուսափում են արտադրողական աշխատանքից, գերադասում են ապրել ծնողների հաշվին, աննպատակ վատնել ոսկի ժամանակը։ Միայն 1963 թվականին անհիմն պատճառներով պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններից ինքնակամ հեռացել են մոտ 250 երիտասարդներ։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ուսումնարաններից ինքնակամ հեռանալու գլխավոր պատճառը՝ դիրեկտորների, արտադրական ուսուցման վարպետների անուշադիր վերաբերմունքն է։ Հաճախ մեր տեսադաշտից դուրս են մնում այն երիտասարդները, որոնք ամենից շատ կարիք ունեն դաստիարակության։ Ուստի չերտավորված մոտեցումը դաստիարակչական աշխատանքների կազմակերպման ժամանակ կարևոր է և դրան պետք է պատշաճ ուշադրություն նվիրել։

Աշխատանքը պետք է կատարել պարտքի բարձր գիտակցությամբ։ Անվանի մանկավարժ Մակարենկոն գրել է՝ այն աշխատանքը, որը չի կատարվում քաղաքական ու հասարակական դաստիարակության հետ համատեղ, դաստիարակչական օգուտ չի բերում, հանդես է գալիս որպես չեզոք աշխատանք։ Դուք կարող եք ստիպել մարդուն աշխատել որքան անհրաժեշտ է, բայց եթե դրա հետ միաժամանակ դուք չեք դաստիարակում նրան քաղաքականապես ու բարոյապես, եթե նա չի ապրում երկրի քաղաքական ու հասարակական կյանքով, ապա այդ աշխատանքը դաստիարակչական արդյունք չի կարող տալ և ըստ էության դառնում է չեզոք աշխատանք։ Յուրաքանչյուր երիտա-

սարդ հանրօգուտ աշխատանքի մեջ պետք է տեսնի յուր մասնակցությունը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործին։

Աշխատանքային դաստիարակության հաջող կազմակերպման գործում բացառիկ մեծ է ծնողների դերը։ Հարկ չկա ապացուցելու, որ դեռևս կան ծնողներ, որոնք իրենց սխալ վերաբերմունքով լուրջ վնաս են հասցնում իրենց տղայի կամ աղջկա դաստիարակությանը։ «Է՜, մենք շատ ենք աշխատել, թող երեխաներս հանգիստ մեծանան», կամ՝ «քանի ես ապրում եմ՝ կաշխատեմ, երեխաներս կապրեն, ինձնից հետո թող իրենք իրենց գլուխը պահեն»։ Իրոք, այդ սխալ մոտեցման հետևանքով, հետագայում այդպիսի «սկզբունքով» դաստիարակված երեխաները ո՛չ միայն չեն կարողանում ընտանիք կազմել, այլև չեն կարողանում նույնիսկ իրենց գլուխը պահել։

Մեր սոցիալիստական հայրենիքում հանրօգուտ աշխատանքը ամեն մի քաղաքացու սրբազան պարտքն է։ Գործից փախչողները, ձրիակերները, ուրիշի վաստակով ապրողները հարգանքի արժանի մարդիկ չեն։ Ճիշտ է, նրանց թիվը փոքր է, բայց այդ մեզ իրավունք չի տալիս լռությամբ անցնելու այդ փաստերի կողքով։ Մեր երկիրը մեծ, հոյակապ կառուցումների երկիր է, յուրաքանչյուր երիտասարդ կարող է ընտրել և աշխատել ցանկացած մասնագիտությամբ։ Իզուր չի ժողովուրդն ասում «պետք է աշխատես, որ թանկ գնահատես աշխատանքի արդյունքը և ուրիշի աշխատանքը»։ Աշխարհի ոչ մի երկրում ստեղծված չեն կրթության, աշխատանքի այնպիսի պայմաններ, ինչպիսիք մեր հայրենիքում։ Մաքսիմ Գորկին իրավացի կերպով ասում էր. «Մեր երիտասարդության առաջ աշխատանքի հարց չկա, նա իր առաջ դնում է պրոֆեսիայի ընտրության հարցը»։

Պարտիան խնդիր է դնում՝ կրթել, դաստիարակել, ձևավորել նոր մարդուն՝ կոմունիզմ կառուցողին, որի մեջ պետք է ներդաշնակորեն զուգակցվեն հոգևոր հարստությունը, բարոյական անաղարտությունը և ֆիզիկական կատարելությունը։

Այդ մեծ խնդիրների հաջող լուծման համար ամեն կերպ պետք է բարելավել աճող սերնդի աշխատանքային դաստիարակությունը, նախապատրաստելով նրան հանրօգուտ աշխատանքային գործունեության։



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

Ց. ԱՍԱՏՐՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՎՃՌԱԿԱՆ ԳՈՐԾՈՆԸ

Կոլտնտեսությունների ու սովխոզների առջև ծառացած խնդիրները հաջողությամբ լուծելու համար, նրանց մասնագետներն ու ղեկավար աշխատողները ո՛չ միայն պետք է տիրապետեն աշխատանքի կազմակերպման ձևերին, այլև լավ գիտենան արտադրության տեխնոլոգիան, դառնան գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը կիրառող մասնագետ կազմակերպիչներ։

Անցած տարիների ընթացքում մեր ռեսպուբլիկայում զգալի հաջողությունների ենք հասել գյուղատնտեսության մասնագետների պատրաստման ուղղությամբ։ Ըստ վիճակագրական տվյալների, 1964 թվականի հունվարի մեկի դրությամբ, ռեսպուբլիկայում 10760 գյուղատնտեսական մասնագիտական կրթություն ունեցողներ կային, որոնցից 5470-ը՝ բարձրագույն։ Անցյալ տարի ռեսպուբլիկայի գյուղատնտեսական արտադրության մեջ աշխատում էին մոտ 5690 մասնագետ, որոնցից կոլտնտեսություններում՝ 2350, սովխոզներում՝ 1150։ Յուրաքանչյուր տարի գյուղատնտեսական բուհերն ու տեխնիկումներն ավարտում են մոտ 1300—1400 մարդ, այդ թվում՝ բարձրագույն ուսումնական հաստատությունները՝ 500—600 հոգի։ Գյուղատնտեսական կադրերի պատրաստման բնագավառում ռեսպուբլիկան, իրոք հասել է որոշակի նվաճումների։ Հիշենք, որ Հայաստանում սովետական կարգերի հաստատման առաջին տարիներին (1920—1921 թթ.) գյուղատնտեսության մասնագետների թիվը չէր անցնում երկու-երեք տասնյակից։

Սակայն, որքան էլ նշանակալից են գյուղատնտեսության մասնագետների պատրաստման և տեղաբաշխման ուղղությամբ ձեռք բերված հաջողությունները, այնուամենայնիվ, դրանք դեռևս անբավարար են նոր խնդիրների իրականացման բնագավառում, մանավանդ որ դեռևս կան ետ մնացող տնտեսություններ։ Մեր կարծիքով դրա գլխավոր պատճառը ղեկավարության ցածր մակարդակն է։ Հաճախ կոլտնտեսությունների նախագահները, սովխոզների դիրեկտորները մասնագիտական գիտելիքներ, կազմակերպչական ունակություններ չեն ունենում և, հետևաբար, չեն վայելում ինչպես պարտիական ու կոմերիտական կազմակերպությունների, այնպես էլ կոլտնտեսականների, սովխոզների բանվորների վստահությունը։ Ուստի անհրաժեշտ է լրջորեն զբաղվել սովխոզների դիրեկտորների, կոլտնտեսությունների նախագահների, գյուղատնտեսների, զոոտեխնիկների, տրակտորիստների, կոմբայնավարների պատրաստմամբ։

Երբ այս տեսանկյունով ենք մոտենում մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ աշխատող կադրերին, ապա ի հայտ են գալիս լուրջ թերություններ, որոնք պետք է վերացնել։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների զգալի մասում զգացվում է բարձրագույն և միջնակարգ կրթությամբ մասնագետների պակաս։ Բանն այն է, որ գյուղատնտեսական կրթություն ունեցող կադրերի մի զգալի մասն իր մասնագիտությամբ չի աշխատում, տեղավորվել է տարբեր հիմնարկ-ձեռնարկություններում։ Այդ են ցույց տալիս հետևյալ տվյալները։ Ռեսպուբլիկայում եղած բարձրագույն կրթությամբ ագրոնոմների 35, միջնակարգ կրթությամբ 54, զոոտեխնիկների համապատասխանաբար 42—69, անասնաբույժների 59—86, ինժեներ-մեխանիկների 25—29 տոկոսն են գյուղում աշխատում։ Դրանով էլ բացատրվում է այն, որ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում համապատասխան մասնագիտությամբ չեն աշխատում գյուղատնտեսների ընդհանուր պահանջի 23, զոոտեխնիկների՝ 33, անասնաբույժների՝ 25 և ինժեներ-մեխանիկների՝ 67 տոկոսը։ Չնայած գյուղատնտեսական բուհերի տարեկան շրջանավարտների թիվը հասնում է 500—600-ի, այնուամենայնիվ, արտադրության մեջ մասնագետների պակասն զգալի է։ Նման դրությունը, հիմնականում, արդյունք է նաև այն բանի, որ տեղերում նորավարտ երիտասարդ մասնագետների համար աշխատանքային ու կենցաղային անհրաժեշտ պայմաններ չեն ստեղծվում, որը պատճառ է դառնում կադրերի հոսունության։

Գյուղատնտեսությունը մասնագիտական կադրերով ապահովելու և այդ ասպարեզում եղած հոսունությունը վերացնելու կարևոր միջոց է, մեր կարծիքով, այդ ինստիտուտների և տեխնիկումների սովորողների կոնտինգենտի ճիշտ ընտրությունը։ Այս ուղղությամբ վերջին տարիներում զգալի աշխատանք է տարվել։ Անհրաժեշտ է, որ գյուղատնտեսական ուսումնական հաստատություններում սովորել ցանկացողների ընտրությունը հիմնականում կատարվի գյուղից եկած երիտասարդների հաշվին։ Գյուղական պարտիական և մյուս կազմակերպությունները պետք է կարգավորեն նաև նորավարտ երիտասարդ մասնագետների ճիշտ տեղաբաշխման հարցը։ Հաճախ աշխատանքի գործուղվածների մեծ մասը տեղավորվում է սովխոզներում, որն անհամապատասխանություն է առաջացրել կոլտնտեսությունների ու սովխոզների կադրերի բաշխման միջև։ Այսպես, աշխատել են մասնագետներ.

| (1963 թ. միջինը) | Մեկ սովխոզում | Մեկ կոլտնտեսությունում |
|---|---|---|
| Բարձրագույն ավարտներ . . . | 6,0 | 1,2 |
| Միջնակարգ կրթությամբ . . . | 7,2 | 2,8 |
| Պրակտիկներ . . . . . . | 0.8 | 0,5 |
| Ընդամենը . . . . . . | 14 | 4,5 |

Կոլտնտեսություններում մասնագետների քանակական և որակական կազմը չի համընկնում սովխոզների հետ և այս կարգի անհամաչափությունը պետք է տեղերում ուղղել։

Հաջորդ կարևոր հարցը՝ գյուղում աշխատող կադրերի որակավորման բարձրացումն է։ Անհանդուրժելի է ստեղծված այն վիճակը, երբ կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատող մասնագետների զգալի մասը չունի



իր գրաված պաշտոնին համապատասխան մասնագիտական կրթություն։ Այսպես, ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ աշխատող ղեկավար և մասնագիտական կադրերի միայն 42 տոկոսն ունի բարձրագույն մասնագիտական կրթություն։ Այդ տեսակետից վիճակն անմխիթարական է կոլտնտեսություններում, որոնց գյուղատնտեսների 55, զոոտեխնիկների՝ 60, անասնաբույժների՝ 79 և ինժեներ-մեխանիկների 93 տոկոսը չունեն բարձրագույն մասնագիտական կրթություն։

Ուշադրության է արժանի կոլտնտեսության նախագահների կազմը. 628 նախագահներից 264-ը (1963 թ. վերջին) ունեն բարձրագույն կրթություն, որոնցից միայն 134-ը՝ գյուղատնտեսական, որը կազմում է ընդհանուր թվի 21 տոկոսը, 217 նախագահներ ունեն միջնակարգ կրթություն, իսկ պրակտիկների տոկոսը հասնում է 23-ի։

Կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավար ու մասնագիտական կադրերի ամրապնդման ուղղությամբ, ինչ խոսք, վերջին երկու տարում զգալի աշխատանք է կատարվել. ավելացել է գյուղում աշխատող մասնագետների թիվը, նրանցից նոր, կարող ուժեր են առաջադրվել կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավար աշխատանքներում։

Երկրորդ տարին է, ինչ գործում է գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների մինիստրության կազմակերպած մշտական գործող միամյա դպրոցը, որտեղ ամեն տարի վերաորակավորվում են 60—75 ղեկավար աշխատողներ։ Այդ նպատակով գործում են նաև 6-ամսյա և 4-ամսյա դասընթացներ։ Բայց գյուղատնտեսության բնագավառում ղեկավար կադրերի և մասնագետների պահանջը դեռ մեծ է։

Հաշվի առնելով կոլտնտեսությունների և սովխոզների վերջին տարիների՝ խոշորացման ու կենտրոնացման փորձը և 1962—1963 թվականներին աշխատող գյուղատնտեսական մասնագետների որակական ցուցանիշները, մենք հաշվարկել ենք 1965—1970 թվականներին պահանջվող կադրերի որակական և քանակական մոտավոր ցուցանիշները, որը ցույց է տրված հետևյալ աղյուսակում.

| Մասնագիտությունների (պաշտոնների) անվանումը | 1962—1964 թթ. անհրաժեշտ են մասնագետներ և աշխատողներ | 1962—1964 թթ. փաստորեն աշխատում են | 1962—1964 թթ. որոնցից ունեն բարձրագույն կրթություն | 1965—1970 թթ. պահանջվում է | 1965—1970 թթ. որոնցից բարձրագույն կրթությամբ | 1965—1970 թթ. լրացուցիչ հարկավոր են նորավարտներ | Վերապատրաստվելու են |
|---|---|---|---|---|---|---|---|
| Գյուղատնտեսներ . . . | 883 | 742 | 409 | 770 | 770 | 361 | 277 |
| Զոոտեխնիկներ . . . . | 811 | 604 | 283 | 600 | 600 | 317 | 198 |
| Անասնաբույժներ . . . | 775 | 623 | 131 | 730 | 730 | 599 | 136 |
| Ինժեներ-մեխանիկներ . . | 748 | 323 | 63 | 620 | 620 | 557 | 45 |
| Տնտեսագետներ . . . . | 450 | 58 | 17 | 450 | 450 | 433 | 10 |
| Կոլտնտեսության նախագահներ և սովխոզների դիրեկտորներ | 758 | 758 | 337 | 640 | 640 | 303 | 340 |
| Ընդամենը ռեսպուբլիկայում . . | 4425 | 3108 | 1234 | 3810 | 3810 | 2570 | 1036 |

Աղյուսակում հաշվի է առնված 1965—1970 թվականներին սպասվելիք տնտեսությունների խոշորացումն ու կենտրոնացումը: Կոլտնտեսությունների և սովխոզների թիվը 758-ից, գալիք յոթնամյակի վերջում կկազմի մոտ 600—650: Մանր, 100—200 հեկտար հողատարածություն ունեցող տնտեսությունները, որոնց թիվը ռեսպուբլիկայում զգալի է, կմիավորվեն ու կխոշորացվեն: Գյուղատնտեսների, զոոտեխնիկների և անասնաբույժների թիվը մեկ տնտեսության հաշվով 1963—1964 թվականների նկատմամբ, 1965—1970 թվականներին հիմնականում չի փոխվում, սակայն լուրջ փոփոխություններ են նախատեսվում նրանց որակական կազմում: Այսպես, եթե 1962—1963 թվականներին այդ մասնագիտություններն զբաղեցնող աշխատողների միայն 42 տոկոսն ուներ բարձրագույն մասնագիտական կրթություն, ապա 1963—1970 թվականներին, մոտավոր հաշիվներով, բոլոր 3800 աշխատողները կունենան մասնագիտական բարձրագույն կրթություն: Դրա համար անհրաժեշտ է այդ տարիներին պատրաստել և կոլտնտեսություններն ու սովխոզները լրացուցիչ ուղարկել մոտ 2570 բարձրորակ մասնագետ: Երևանի գյուղատնտեսական և զոովետ ինստիտուտներն այդ ուղղությամբ կատարել են անհրաժեշտ նախապատրաստական աշխատանք. 1963/1964 ուսումնական տարվա տվյալներով ինստիտուտներում սովորողների թիվը հասնում է ստացիոնարում (ցերեկային բաժիններում)՝ 1730-ի, իսկ հեռակա և գիշերային բաժիններում՝ 2020-ի:

Աղյուսակում նշված է նաև տնտեսագետների մասին: Աշխատանքի այս կարևոր բնագավառը, սովխոզների և, առանձնապես, կոլտնտեսությունների համար կարևոր նշանակություն ունի: Այժմ կոլտնտեսություններն իրենք են պլանավորում արտադրությունը, հետևապես տնտեսագետ պլանավիկի հաստիքը յուրաքանչյուր տնտեսության համար խիստ անհրաժեշտություն է դարձել: Նկատի ունենալով այդ, մեր կարծիքով, ժամանակն է ձեռնամուխ լինելու գյուղատնտեսության համար տնտեսագետների մասսայական պատրաստման գործին, որը նպատակահարմար է կազմակերպել Երևանի գյուղատնտեսական ինստիտուտի միջոցով՝ տարեկան պատրաստելով առնվազն 75—100 տնտեսագետ:

***

Գյուղատնտեսության ինտենսիվացման շրջանում կարևոր նշանակություն է ստանում ո՛չ միայն տնտեսության ղեկավար կադրերի և մասնագետների, այլև միջին օղակների՝ բրիգադների, ֆերմաների և բաժանմունքների ղեկավար ու սպասարկող անձնակազմի որակավորումը: Հանրահայտ է, որ կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատանքի կազմակերպման ձևը եղել և մնում է արտադրական բրիգադան, ֆերման: Սակայն նոր իրադրության պայմաններում, երբ տեխնիկան գտնվում է անմիջապես կոլտնտեսությունների տնօրինության տակ, փոխվել են աշխատանքի կազմակերպման ձևերն ու մեթոդները արտադրական բրիգադներում ու ֆերմաներում: Այլևս նախկին մանր, նեղ, մասնագիտացված բրիգադների շրջանակները չեն ապահովում նորագույն տեխնիկայի ռացիոնալ օգտագործումը: Ահա թե ինչու տարեցտարի խոշորանում են բրիգադները, իսկ շատ տնտեսություններում տեխնիկան ևս ամրացվում է բրիգադներին և ստեղծում արտադրական մեքենայացված բրիգադներ: 1963 թվականի սկզբին ռեսպուբլիկայի կոլտնտեսու-



թյուններում ու սովխոզներում գործում էին շուրջ 3260 արտադրական բրիգադա, 1957/1958 թթ. մոտ 4000 բրիգադների դիմաց:

Բրիգադների խոշորացման շնորհիվ այժմ մեկ բրիգադային հասնում է միջին հաշվով 190—220 հեկտար մշակելի հողատարածություն: Գործում են մոտ 100 մեքենայացված արտադրական (տրակտորա-դաշտավարական) բրիգադներ, որոնք աշխատում են երկրի անվանի մեխանիզատորներ Գիտալովի, Մանուկովսկու, Սվետլիչնու, Պերվիցկու և այլոց մշակած տեխնոլոգիայի օրինակով: Խոշորացված բրիգադների ներսում կազմակերպվել են եգիպտացորենի, շաքարի ճակնդեղի, բամբակի և այլ տեխնիկական ու շարահերկ կուլտուրաների մշակման մեքենայացված օղակներ, որոնց թիվը այս տարվա գարնանը հասել է 70-ի:

Արտադրական բրիգադայի առաջադրանքների հիմքում դրվելու են արտադրության քիմիացման, ոռոգման և տեխնոլոգիական պրոցեսների լրիվ մեքենայացման հարցերը: Արտադրական միջոցներն ու աշխատանքային ռեսուրսներն արդյունավետ օգտագործելու համար բրիգադան պետք է օգտվի տեխնոլոգիական քարտերից, անհրաժեշտ է կազմել նաև բրիգադային հանձնըված տեխնիկայի շահագործման պլան-գրաֆիկը: Բրիգադներն ու ֆերմաները պետք է նախաձեռնեն և արտադրության մեջ լայնորեն ներդնեն վարձատրման առաջավոր ձևերը, կիրառեն ներբրիգադային տնտհաշվարկ և այլն:

Վերը համառոտակի թվարկած հարցերից դժվար չէ եզրակացնել, որ արտադրության զարգացման բնույթից առաջացած վերոհիշյալ խնդիրներին ընթացք տալու համար վճռական նշանակություն ունեն բրիգադների ու ֆերմաների ղեկավարների պատրաստականությունն ու մասնագիտական գիտելիքները: Հետևապես օրինական է այն պահանջը, որ բրիգադավարներն ու ֆերմայի վարիչները պետք է ունենան առնվազն միջնակարգ մասնագիտական կրթություն:

Սակայն, ցավոք սրտի, գործնականում այդպես չէ. այդ երևում է ստորև բերված աղյուսակից:

Կոլտնտեսությունների և սովխոզների բրիգադավարների, ֆերմաների (բաժանմունքների) վարիչների կազմը ըստ կրթության
(1/1—1964 թ.)

| Աշխատողներ | Ընդամենը | Այդ թվում | | | Պրակտիկ աշխատողների տոկոսը ընդհանուրի համեմատությամբ |
|---|---|---|---|---|---|
| | | բարձրագույն | միջնակարգ | պրակտիկներ | |
| Բրիգադավարներ | 3261 | 88 | 765 | 2408 | 73,5 |
| Ֆերմաների (բաժանմունքների վարիչներ) | 1575 | 51 | 357 | 1167 | 74,0 |
| Ընդամենը | 4836 | 139 | 1122 | 3575 | 73,9 |

Պրակտիկ աշխատողները, ճիշտ է, ունեն արտադրական աշխատանքի հարուստ փորձ, բայց նրանց մոտ պակասում են մասնագիտական գիտելիքները: Մեր կարծիքով, ժամանակն է մասսայականորեն բարձրացնելու միջին օղակի ղեկավար անձնակազմի որակավորումը:

Այս հարցում ևս դարձյալ ակտիվ դեր ունեն գյուղատնտեսական ինստիտուտներն ու տեխնիկումները։ Բավական է նշել, որ դեռ անցյալ տարվա սկզբին գյուղատնտեսական տեխնիկումներում սովորողների թիվն անցնում էր 4150 հոգուց, որոնցից ցերեկային բաժիններում սովորում են 1960, հեռակայում են՝ 2180 մարդ։ Կրտսեր ագրոնոմների բաժիններում սովորում են 1020, կրտսեր զոոտեխնիկների՝ 240, տեխնիկ-անասնաբույժների՝ 500 և տեխնիկ մեխանիկների կուրսերում՝ 1220 մարդ։

1965—1970 թվականների ընթացքում ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը կհամալրվի միջնակարգ մասնագիտական կրթությամբ մասնագետներով, որոնց հիմնական մասը կաշխատի արտադրական բրիգադներում և անասնապահական ֆերմաներում։ Դրա հետ մեկտեղ մենք չենք կարող անտեսել ներկայումս արտադրության մեջ աշխատող կադրերի որակի բարձրացման անհրաժեշտությունը։ Բրիգադավարների և ֆերմաների վարիչների որակավորման ամենահուսալի ուղերվը դա հենց իրենց՝ երիտասարդ պրակտիկների ուսուցման կազմակերպումն է։ 7-ամյա կամ 10-ամյա կրթություն ունեցող երիտասարդ բրիգադավարներին, ֆերմաների վարիչներին պետք է ընդգրկել հեռակա և գիշերային բաժիններում սովորելու։

Նույնպիսի միջոցառումներ անհրաժեշտ են նաև կոլտնտեսությունների ու սովխոզների հաշվային աշխատողների համար։ Կոլտնտեսությունների ու սովխոզների 2461 հաշվային աշխատողներից միայն 28-ն ունեն բարձրագույն և 951-ը՝ միջնակարգ կրթություն, իսկ 1482-ը՝ պրակտիկներ են։

Սակայն որակյալ հաշվային աշխատողների պատրաստման համար գյուղատնտեսական ուսումնական հաստատություններում ավելի սահմանափակ հնարավորություններ կան, քան մյուս մասնագետների պատրաստման գծով։ Անհրաժեշտ է, ինչպես հեռակայում, այնպես էլ ստացիոնար ուսումնական հաստատություններում կազմակերպել հաշվային աշխատողների պատրաստման բաժիններ։

Առաջիկա տարիներին մեծ չափով բարձրանալու է գյուղատնտեսության մեքենայացման մակարդակը։ Ուստի և անհրաժեշտ է ավելացնել մեխանիզատորների թիվը և բարձրացնել նրանց որակավորումը։

Ըստ կատարված նախնական հաշվարկների, ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում այժմ աշխատող 5500—6000 տրակտորիստ-մեխանիզատորների դիմաց (այդ թվում նաև կոմբայնավարներ) 1965—1970 թվականներին անհրաժեշտ է ունենալ 15—16 հազար տրակտորիստ-մեխանիզատորներ։ Դրա համար առաջիկա տարիներին պետք է լրացուցիչ պատրաստել 8—10 հազար նոր տեխնիկ-մեխանիզատորներ, որի համար մեր ռեսպուբլիկան ունի բոլոր պայմանները։ Մեխանիզատորական կադրերի պատրաստման հիմնական դարբնոցն այժմ ՀՍՍՌ Մինիստրների սովետի պրոֆտեխնիկական ուսումնարանների պետական կոմիտեի ուսումնական ցանցն է։

Վերջին 5—6 տարիների ընթացքում վերոհիշյալ ուսումնարաններն են ավարտել տարեկան միջին հաշվով 550—600 մեխանիզատորներ։ Բացի այդ հաստատությունից, գյուղատնտեսական տեխնիկումները տարեկան ավարտում են 120—130 մեխանիզատորներ։ Այսպիսով, ռեսպուբլիկայում ուսումնական հաստատությունները տալիս են մոտ 700 տրակտորիստներ, կոմբայնավարներ, էքսկավատորավարներ, էլեկտրիկներ և այլ մեխանիզատորներ։ Սակայն առաջիկա տարիներում աշխատանքի մեքենայացման բարձր մակարդակը պահանջում է նաև արագացնել մեխանիզատորների պատրաստման տեմպերը։ Նախնական հաշվարկներից երևում է, որ հարկ կլինի մեխանիզատորական կադրերի թիվը տարեկան 700-ից հասցնել 1200—1300-ի։ Ուսումնարանների պետական կոմիտեի գծով մեխանիզատորների պատրաստման թիվը անհրաժեշտ է տարեկան 550—600-ից հասցնել 800—900-ի, իսկ գյուղատնտեսական տեխնիկումների գծով՝ 250—300-ի։

Բացի մեխանիզատորական նոր կադրերի պատրաստումից, կոմպլեքսային մեքենայացման համար հույժ կարևոր է նաև աշխատող մեխանիզատորների վերապատրաստումը, քանի որ տարեցտարի փոխվում և բարելավվում են տրակտորների, մեքենաների կոնստրուկցիաները։ Մեխանիզատորներն ամեն տարի, հատկապես գյուղատնտեսական աշխատանքների նախօրյակին, պետք է անցնեն որակավորման կարճատև կուրսեր, որտեղ նրանք կծանոթանան նոր տեխնիկայի արդյունավետ շահագործման մեթոդներին։ Այս ուղղությամբ խրախուսելի աշխատանք են ձեռնարկել «Հայգյուղտեխնիկա»-ի ռեսպուբլիկական միավորման առանձին շրջանային բաժանմունքներ ու միավորումներ։ Բավական է նշել, որ միայն 1962--1963 թվականներին այդ միավորման գծով վերապատրաստման կարճատև կուրսերում սովորել են մոտ 2000 մեխանիզատորներ։

Այժմ կոլտնտեսությունների ու սովխոզների կադրերից, նրանց կազմակերպչական ու գիտական ունակություններից է կախված գիտության նվաճումների և առաջավոր փորձի արմատավորումն արտադրության մեջ հանուն աշխատանքի արտադրողականության բարձրացման և միջոցների մինիմալ ծախսումներով գյուղատնտեսական մթերքների շեշտակի ավելացման։

Կադրերը գյուղատնտեսության ինտենսիվացման վճռական գործոնն են և որքան լավ զինված լինեն մասնագիտական գիտելիքներով, որքան հմտորեն ձեռք բերեն կազմակերպչական ունակություններ, այնքան արագ կլուծվեն կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի բարձրացման հանգուցային հարցերը։



**Բ. ՎԱՐԴԱԶԱՐՅԱՆ**

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ-ՈՒՄ ՋՐԱՐԲԻԱՑՄԱՆ ՍԻՍՏԵՄԻ ՇԱՀԱԳՈՐԾՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

*Հայկական ՍՍՌ-ի պայմաններում, ուր գյուղատնտեսության համար օգտագործվող նշանակալի տարածությունններն ունեն անբավարար բնական խոնավություն, հատուկ կարևորություն է ստանում ջրատնտեսական շինարարությունը, որը հնարավորություն կտա ապահովելու գյուղատնտեսության մասնագիտացման հետագա խորացումը և այդ հիման վրա բուսաբուծական ու անասնաբուծական մթերքների արտադրության ավելացումը։*

*Հայաստանի գյուղատնտեսությունը կազմավորվել է համեմատաբար սակավահողության պայմաններում։ Դա, բնականաբար, անդրադարձել է նրա կազմակերպա-տնտեսական և, մասնավորապես, անասնապահության կառուցվածքի վրա։ Մշակովի տարածություններից անասնապահության կերի պահանջը չբավարարելու հետևանքով վաղուց ի վեր ամենուրեք տարածվել է անասնապահության կազմակերպման հեռագնաց ձևը, օգտագործելով ռեսպուբլիկայի ալպիական և մերձալպիական բարձր լեռնային ամառային արոտավայրերը, որոնք տնտեսություններից բավականին հեռու են։ Անասնապահության կազմակերպման այդպիսի ձևը հնարավորություն է տալիս ունենալու ավելի մեծ անասնագլխաքանակ, քան կարող էր լինել տնտեսությունում, երբ նրանց պահպանումը ամբողջ տարին ապահովվեր սեփական դաշտային կերարտադրանքի հաշվին։ Սակայն արոտավայրերում ագրո-մելիորատիվ միջոցառումներ չկիրառելու հետևանքով Հայաստանի բարձր լեռնային ամառային արոտավայրերի յուրացումը և անասնապահության հեռագնաց ձևը դեռևս բարձր արդյունք չեն տվել։*

*Անասնաբուծության մթերքների արտադրությունն ավելացնելու համար անասուններին առատ կեր տալու հետ մեկտեղ պետք է նրանց ժամանակին ապահովել ջրով։ Այդ առանձնապես անհրաժեշտ է հեռավոր արոտավայրերում, որտեղ ջրի ռեսուրսները խիստ սահմանափակ են։ Այստեղից էլ ծագում է հրատապ լուծում պահանջող երկու հարց.*

*ա) Արոտավայրերում անասունների ջրամատակարարման կանոնավորումն ու այդ նպատակով ջրաշինարարական աշխատանքների ծավալումը.*

*բ) Արոտավայրերի ոռոգման, պարարտացման և այլ ագրոմիջոցառումների կիրառումը։*



*Այս երկու հարցի հաջող լուծումը հնարավորություն կտա ամառային ամիսներին անասուններին ապահովելու առատ կերով ու ջրով, որը նրանց մթերատվության բարձրացման ամենակարևոր նախապայմանն է։ Ագրոտեխնիկական, մելիորատիվ և, մասնավորապես, ջրարբիացման միջոցառումների հետ կապված կապիտալ ներդրումները տնտեսապես արդարացվում են։*

*Անասնապահության սովետական և արտասահմանյան պրակտիկան ցույց է տվել, որ ռացիոնալ ջրամատակարարման շնորհիվ (երբ անասուններն ապահովված են բավարար քանակությամբ լավորակ ջրով) կովերի կաթնատվությունը բարձրանում է 15—20 %-ով, կենդանի քաշն ավելանում է 3—5, իսկ ոչխարների բրդատվությունը՝ 10 տոկոսով։ Այսպիսով, ջրամատակարարման նպատակով ծավալվող շինարարությունը, առանձնապես մեր պայմաններում, խիստ անհրաժեշտ է։*

*Առ 1-ը հունվարի 1963 թվականի դրությամբ, ռեսպուբլիկայում հաշվվում էր 690 հազար հեկտար արոտավայր, որից ավելի քան 270 հազար հեկտարը լեռնային ամառային արոտավայրեր են. դրանք կազմում են գյուղատնտեսության մեջ օգտագործվող հողերի 19 տոկոսը։*

*Ռեսպուբլիկայում արոտավայրերի ջրարբիացման գծով ջրատնտեսական շինարարությունը լայն մասշտաբներ է ընդունել վերջին տարիներում։ Ջրարբիացման կապիտալ ներդրումները 1956—1963 թվականների ընթացքում կազմել են ավելի քան 4 միլիոն ռուբլի, իսկ ջրարբիացված տարածությունները հասել են 109 հազար հեկտարի։ Հայկական ՍՍՌ-ում ջրարբիացման սիստեմների շինարարությունը, համեմատած Միության այլ ռեսպուբլիկաների ու մարզերի հետ, յուրահատուկ բնույթ ունի։ Այստեղ ջրարբիացման սիստեմների շինարարությունն ընթանում է երկրաբանա-կլիմայական դժվարին պայմաններում, բարձր նիշերում, ստորերկրյա ջրերի բացակայությամբ։ Ջրարբիացման համար օգտագործվում են մակերեսի ջրհոսքները, աղբյուրները և լճերը, որոնց ջրապահովվածությունը տարբեր է և երբեմն իրենց դիրքով՝ դժվարմատչելի։ Բարձր լեռնային ամառային արոտավայրերում ջրային ռեսուրսների սակավության, երկրաբանական բարդ պայմանների, ռելիեֆի խիստ կտրտվածության պատճառով ավելի ու ավելի անհրաժեշտ է դառնում ջրամատակարարումը կազմակերպել հատուկ ծածկված ջրատար ցանցերի օգնությամբ։*

*Հայկական ՍՍՌ-ում ծածկված ցանցով ջրարբիացման սիստեմները (Ակնալճի, Ոսկեթասի, Հովտի, Թագավորական լճերի և այլն) շահագործման ընթացքում արդարացրել են իրենց։ Ջրարբիացման նպատակներով ռեսպուբլիկայում արդեն գցված են 563 կիլոմետր ծածկված ասբոցեմենտային և մետաղյա խողովակաշարեր։ Ծածկված ցանցով ջրարբիացման 4 սիստեմների շահագործման ծախսերը 1963 թվականին սպասարկվող տարածության մեկ միավորի հաշվով տատանվում էին 1,06—2 և արածող անասունի մեկ գլխի հաշվով 0,57—0,99 ռուբլու միջև (տես աղյուսակը հաջորդ էջում)։ Ծախսերն ամենից փոքր են Թագավորական լճերի սիստեմում. դա բացատրվում է այդ սիստեմի համեմատաբար ավելի լավ վիճակով, որի շնորհիվ կառուցվածքների և ցանցերի նորոգման ծախսեր չեն եղել։ Վերը բերված մնացած սիստեմներում ընդհանուր շահագործման ծախսերում մեծ տեսակարար կշիռ ունեն ցանցերի ու կառուցվածքների ընթացիկ նորոգման հետ կապված ծախսերը, որոնք համապատասխանաբար կազմել են տարեկան շահագործման ծախսերի 35, 34 և 17 տոկոսը։*

Նորոգման հետ կապված համեմատաբար մեծ ծախսերը, հատկապես Ակնալճի և Հովտի սիստեմներում, կարելի է բացատրել ասբոցեմենտային ջրատարների և բաշխիչ ճյուղավորումների գցման ու հավաքման աշխատանքների ցածր որակով:

Շահագործման հիմնական ծախսերը ջրարբիացման չորս սիստեմներում

| Ցուցանիշներ | Չափի միավոր | Սիստեմներ | | | |
|---|---|---|---|---|---|
| | | Ակնալճի | Ոսկեթասի | Հովտի | Թագավորական լճերի |
| Սպասարկվող տարածությունը | հազ. հեկ. | 11,61 | 13,71 | 7,15 | 2,08 |
| Արածող գլխաքանակը (պայմանական) | հազ. գլուխ | 23,56 | 28,8 | 13,43 | 3,77 |
| Փաստացի ջրամատուցում | հազ. խմ | 387,5 | 457,0 | 100,0 | 79,0 |
| Ընդհանուր շահագործական ծախսեր | հազ. ռ. | 23,2 | 22,6 | 7,6 | 3,2 |
| Այդ թվում նորոգման ծախսեր | » | 8,1 | 3,8 | 2,6 | — |
| Մեկ հեկտար արոտի շահագործման ծախսեր | ռ. | 2,0 | 1,65 | 1,06 | 1,54 |
| Նույնը մեկ գլխի համար | » | 0,99 | 0,78 | 0,57 | 0,85 |

Ակնալճի սիստեմի ծածկված խողովակաշարերը ինչպես հարկն է չդնելու հետևանքով 1961 թվականին, սիստեմի լրիվ շահագործման առաջին տարում ոռոգման ու ջրարբիացման սիստեմների վարչությունը հարկադրված էր արոտային շրջանում վերացնել շինարարական թերությունները: Դրա հետևանքով Հրազդանի շրջանի հինգ տնտեսություններ (Քաղսի, Սոլակ, Ալափարս, Հրազդան, Վ. Ախտա) և Սևանի շրջանի 3 տնտեսություններ (Չկալովկա, Վարսեր, Լճաշեն) զրկվեցին նորմալ ջրամատակարարման հնարավորությունից, որը տեղի ունեց մատաղցի զգալի կորուստ: Նույնը կրկնվեց նաև 1962 թվականին, երբ 108—20 ՊԿ-ից վերև մագիստրալային ջրատարի վերանորոգման աշխատանքները խանգարեցին ցածրադիր վայրերում եղած ֆերմաների նորմալ ջրամատակարարումը: Շինարարական անորակ աշխատանքների պատճառով 1962 և 1963 թվականների արոտային շրջանում վերափոխվեց ավելի քան 5,5 կիլոմետր խողովակաշար: Չնայած շինարարական թերությունները շահագործող կազմակերպության կողմից վերացվել են, սակայն կատարված ծախսերի ավելացումն ազդել է մատուցվող ջրի ինքնարժեքի վրա, իջեցնելով ջրարբիացման սիստեմների շահագործման արդյունավետությունը:

Ջրատնտեսական սիստեմների շահագործման ճիշտ կազմակերպումն ամեն տարի պահանջում է լրացուցիչ կապիտալ ներդրումներ, որոնք պետք է օգտագործվեն սիստեմների գործող օղակների ամրացման, տեխնիկական հագեցվածության բարելավման և այլ աշխատանքների համար: Տարեկան լրացուցիչ կապիտալ ներդրումները, վերջին հաշվով, պետք է իջեցնեն շահագործման ծախսերը՝ սպասարկվող տարածության մեկ միավորի և ջրասպառման մեկ խորանարդ մետրի հաշվով:

Ռեսպուբլիկայի պայմաններում վճռական նշանակություն ունեն եղած ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը, ջրի պահանջի ճիշտ որոշումը ինչպես սիստեմում ամբողջությամբ վերցրած, այնպես էլ նրա ճյուղերում: Ջրամատակարարումը պետք է լրիվին համապատասխանի ջրասպառման կարիքներին: Սիստեմում ավելորդ ջուր բաց թողնելը հասցնում է, մի կողմից՝ նրա



անարտադրողական հոսքին, մյուս կողմից՝ հողը ենթարկում է ջրային էրոզիայի և դրանով իսկ իջեցնում արոտավայրերի արդյունավետությունը:

Հաշվարկները ցույց են տալիս, որ Ակնալճի ջրարբիացման սիստեմում 1962 թվականի փաստացի ջրասպառողների քանակի առկայության պայմաններում և գործող ջրասպառման նորմաների հիման վրա օրվա միջին անհրաժեշտ ջրասպառումը պետք է կազմեր 1283,4 խմ օր:

Քանի որ օրվա ընթացքում ջուրն սպառվում է անհավասարաչափ, օրական առավելագույն հաշվային ծախսը կկազմի 1668, 4 խմ (1283,4×1,3), հաշվի առնելով ջրի օրական օգտագործման անհավասարաչափության գործակիցը՝ 1×3: Սիստեմի ամբողջ աշխատանքի ժամանակամիջոցում, այն է՝ 110 օրում (հունիսի 26-ից մինչև հոկտեմբերի 10-ը), փաստացի անհրաժեշտ ջրասպառումը կազմում է 183,5 հազար խմ (1668,4×110):

Աբովյանի շրջանի ոռոգման և ջրարբիացման սիստեմների վարչության 1962 թվականի տվյալներով, արածող անասունների և դրանց սպասարկող անձնակազմի կարիքների համար Ակնալճի ջրարբիացման սիստեմը լճից վերցրել է 438,8 հազար խմ ջուր: Փաստացի վերցրած ջրից (առանց 183,5 հազար խմ հաշվարկային ջրասպառման) 255,3 հազար խմ գնացել է աննպատակ (սիստեմի կորուստներ և անարտադրողական հոսքեր): Այդպիսի մեծ քանակության ջրի կորուստը հիմնականում հետևանք է ասբոցեմենտային խողովակների անորակ միացման և ընդլայնքային ջարդվածքների:

Անարտադրողական ջրթողումներ են լինում նաև ջրելու տաշտերից այն պատճառով, որ ջրումը չի մեքենայացված և տեղի են ունենում մշտական գերլցումներ: Դրանից խուսափելու համար տաշտերում պետք է տեղադրել լողանավոր փականներ, որը կխնայի զգալի քանակությամբ ջուր:

Ակնալճի ջրարբիացման սիստեմում կատարված հետազոտությունները (1964 թ. հուլիս) ցույց տվեցին, որ շահագործման ծառայության նորմալ աշխատանքը դժվարանում է սիստեմի տեխնիկապես չհագեցված լինելու պատճառով: Սիստեմում մինչև օրս չկան անհրաժեշտ ավտոմատ-ջրաչափիչ՝ փաստացի ջրասպառումը որոշելու համար: Ցանցի ոչ բոլոր տեղամասերն ունեն ջուր թողարկող ջրակարգավորիչներ և փականներ:

Սիստեմի տերիտորիայի 30 արհեստական և բնական ջրամբարներից այժմ գործում են միայն 7-ը: Գործող ջրամբարներից ջուր խմելիս անասունները ուղղակի ստանում են ջուրը և կեղտոտում այն:

Մինչև անասունների արոտի դուրս բերելը տնտեսությունների ղեկավարները պետք է ժամանակին մաքրել տան ջրամբարները, ամրացնեն ափերը, նորմալ պայմաններ ստեղծեն ջրամբարում հավաքված ձյան ջրերի կուտակման համար: Իսկ ջրամբարները կեղտոտվելուց պահպանելու համար անհրաժեշտ է կազմակերպել սանիտարական պահպանության գոտիներ, ընտրել անասունների համար ավելի հարմար ջրելատեղերի մատույցներ: Ջրելու հրապարակը պետք է սալապատել հակադարձ թեքությամբ՝ ջրամբարը ապականությունից պահպանելու համար, իսկ որպեսզի անասունները չմտնեն ջրամբարի մեջ, պետք է դրվեն շարժական ցանկապատներ:

Ջրարբիացման սիստեմների նախագծման ժամանակ անհրաժեշտ է հաշվի առնել նաև կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների օժանդակ տնտեսություններում եղած անասունների գլխաքանակը, որպեսզի ճիշտ որոշվի արոտների օգտագործման և ջրի սպառման չափը:

Մ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

# ՄԱՆՐԱԾԱԽ ԱՌԵՎՏՐԱԿԱՆ ՑԱՆՑԻ ՏԵՂԱԲԱՇԽՈՒՄԸ ԵՐԵՎԱՆՈՒՄ

*Ժողովրդական լայն սպառման ապրանքների արտադրության ավելացումը
և բնակչության եկամուտների բարձրացումը պահանջում են բարելավել ու
զարգացնել սովետական առևտուրը և, առաջին հերթին՝ մանրածախ առևտրա-
կան ցանցը, որովհետև այն հանդիսանում է առևտրի նյութատեխնիկական բա-
զայի այն գլխավոր էլեմենտը, որի միջոցով իրացվում է հասարակական ողջ
արտադրանքի ավելի քան մեկ երրորդը։*

*Ապրանքաշրջանառության անընդհատ աճի և բնակչության սպասարկման
կուլտուրայի սիստեմատիկ բարձրացման համար պահանջվում են ո՛չ միայն
ապրանքային զանգվածի ավելացում և ասորտիմենտի ընդլայնում, այլև բարձր
կուլտուրայով առևտրի կազմակերպում։ Ժամանակակից պայմաններում խիստ
մեծ է բնակչության առևտրական սպասարկման դերը՝ սպառման ծախսերի,
անմիջական սպառման համար պատրաստի արդյունքների գնման ժամանակի
կրճատման և աշխատավորների ազատ ժամանակի մեծացման գործում։*

*Առևտրի և հասարակական սննդի համամիութենական գիտահետազոտա-
կան ինստիտուտի ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ յուրաքանչյուր
ընտանիք օրվա ընթացքում միայն պարենային ապրանքներ գնելու համար
ծախսում է միջին հաշվով 1,5—2,0 ժամ։ Լավ կազմակերպված առևտրական
սպասարկման (ցանցի հավասարաչափ տեղաբաշխում, առևտրի առաջավոր
ձևերի կիրառում, վաճառողների աշխատանքային հմտություն և այլն) շնոր-
հիվ խնայվում է աշխատավորների արտաաշխատանքային ժամանակը, դրա-
նով իսկ մեծանում է նրանց ազատ ժամանակը, որի ընթացքում հասարակու-
թյան անդամներն զբաղվում են իրենց ֆիզիկական ու մտավոր զարգացմամբ,
որոնք հսկայական նշանակություն ունեն հասարակական աշխատանքի արտա-
դրողականության բարձրացման համար։*

*Հաշվի առնելով մանրածախ ապրանքաշրջանառության աճի և առևտրա-
կան ցանցի զարգացման ու հավասարաչափ տեղաբաշխման կարևոր նշանա-
կությունը, ՍՍՌՄ Մինիստրների սովետին առընթեր առևտրի պետական կոմի-
տեն խնդիր է դրել՝ բոլոր քաղաքների համար կազմել առևտրական ցանցի
զարգացման պլաններ, համարելով դրանք քաղաքի զարգացման ու վերակա-
ռուցման գլխավոր պլանի բաղկացուցիչ մասը։ Ի դեպ, առանց առևտրական
ցանցի պլանի քաղաքի գլխավոր պլանը չի կարող ավարտված համարվել։*

*Առևտրի պետական կոմիտեի՝ առևտրի կազմակերպման և փորձի փոխա-*



*նակման վարչությունը հանձնարարել է համապատասխան գիտահետազոտա-
կան և ուսումնական հաստատություններին՝ մշակել քաղաքներում և քաղա-
քատիպ ավաններում խանութների ցանցի ընդլայնման նորմատիվները և ման-
րածախ առևտրի զարգացումն ու տեղաբաշխումը պլանավորելու վերաբերյալ
հրահանգը։ Այդ հրահանգի համաձայն առևտրական ցանցի կազմակերպման ու
տեղաբաշխման հիմնական խնդիրները պահանջում են՝ առևտրի ցանցը մաք-
սիմալ չափով մոտեցնել սպառողին, հասնելով այն բանին, որ նա քիչ ժա-
մանակ ծախսի ապրանքը գնելու համար, այսինքն՝ առևտրական ցանցի տե-
րիտորիալ բաշխման հիմքում պետք է ընկած լինի բնակչության համար առավել
մեծ հարմարություններ ստեղծելու սկզբունքը. դրա համար, մեր կարծիքով,
պետք է. բարդ-ասորտիմենտային և երկարատև գործածության ապրանքները
կենտրոնացնել փոքրաթիվ խանութներում այն հաշվով, որ գնորդներն ունենան
դրանց ընտրության լայն հնարավորություն. քաղաքաշինության նոր պայ-
մաններին համապատասխան առևտրական ցանցը կառուցել այնպես, որ այն
ապահովի օրգանական կապը կուլտուր-կենցաղային և կոմունալ սպասարկ-
ման ձեռնարկությունների հետ. յուրաքանչյուր խանութ ապահովել ապրան-
քա-շրջանառության անհրաժեշտ ծավալով, ստեղծել եկամտաբեր աշխատանքի
պայմաններ և, հետևաբար, ամեն մի առևտրական օբյեկտի տրամադրել նրա
չափերին համապատասխան գործունեության շրջան. սահմանազատել միատիպ
խանութների գործունեության շրջանները և իրար մոտ տեղադրել տարբեր, բայց
ապրանքային մասնագիտացումներով միմյանց հետ կապված խանութները։*

*Մանրածախ առևտրական ցանցը տերիտորիալ տեսակետից գնորդին մո-
տեցնելը դեռևս չի նշանակում, թե ամեն մի խանութ, պարզ ասած՝ պետք է
լինի գնորդին մոտիկ։ Դրա համար հարկավոր է հաշվի առնել ոչ միայն ընդ-
հանուր սկզբունքները (ցանցի կառուցվածքը, համաչափ տեղաբաշխումը,
խմբային տեղադրումը), այլև ապրանքների յուրահատկություններն ու դրանց
նկատմամբ եղած պահանջարկը։ Օրինակ, ամենօրյա կարևորություն ունե-
ցող ապրանքներ՝ հաց, կաթնամթերք, բանջարեղեն, ինչպես և նախաճաշ, ճաշ
և ընթրիք պատրաստելու համար անհրաժեշտ մթերքներ ու կիսաֆաբրիկատ-
ներ վաճառող խանութները պետք է մաքսիմալ չափով մոտ լինեն բնակելի
մասսիվներին, գնորդների ապրելու վայրին։ Իսկ պարենային ու ոչ պարենային
բարդ ասորտիմենտի ապրանքների (հրուշակեղեն, պատրաստի հագուստեղեն,
կոշիկ, գլխարկ, կտորեղեն և այլն), ինչպես և ոչ ամենօրյա, այլ ժամանակի
ինչ-որ հատվածներում ձեռք բերվող երկարատև գործածության կուլտուր-կեն-
ցաղային ապրանքների խանութները, որպես կանոն, տեղադրվում են քաղաքի
հիմնական մայրուղիներում, քաղաքային և բնակելի շրջանների առևտրական
կենտրոններում, հաշվի առնելով, անշուշտ, միջքաղաքային տրանսպորտի հնա-
րավորությունները։*

*Բացի դրանից, այսպիսի հանգամանքներում մեծ նշանակություն ունեն
խանութի չափը և նրա տեխնիկական հագեցվածությունը, որոնք կոչված են
ապահովելու, մի կողմից՝ ապրանքների լայն ասորտիմենտը, մյուս կողմից՝
սպասարկման բարձր արտադրողականությունն ու որակը։*

*Ելնելով ապրանքների նկատմամբ եղած պահանջարկի բնույթից և զա-
նազանությունից, մանրածախ առևտրական ձեռնարկությունների քաղաքային
տիպերը կարելի է պայմանականորեն բաժանել երեք խմբի.*

Առաջին խումբ. ամենօրյա պահանջարկ ներկայացնող ապրանքների (հա-
ցաբուլկեղեն, կաթնամթերք, պտուղ-բանջարեղեն), ինչպես նաև խառը ասոր-
տիմենտի սննդամթերքների ոչ մեծ խանութներ։ Այս տիպի խանութները տե-
ղաբաշխվում են ըստ հնարավորության հավասարաչափ և բնակչության ապ-
րելու վայրին մոտ։

Երկրորդ խումբն ընդգրկում է պարբերական պահանջարկի ապրանքներ
վաճառող խանութները։ Դրանք, ինչպես նշվեց, տեղադրվում են քաղաքի հիմ-
նական մայրուղիներում, բնակելի շրջանների առևտրական կենտրոններում,
հաշվի առնելով միջքաղաքային տրանսպորտի ցանցը, ինչպես և այլ քաղա-
քային ու մերձակա շրջանների գնորդների շարժումը։ Այդպիսի խանութների
թվին են պատկանում հրուշակեղենի, պատրաստի հագուստեղենի, կոշիկի,
գլխարկի, կտորեղենի, գրքի և այլ ապրանքների մասնագիտացված խանութ-
ները։

Երրորդ խումբ. համեմատաբար քիչ այցելուներ և հազվագյուտ պա-
հանջարկ ունեցող՝ բարդ ասորտիմենտի ապրանքների խանութներ (ոսկեղեն,
կահույք, գեղարվեստական սալոններ և այլն)։ Դրանք լինում են բնակչության
ապրելու վայրից համեմատաբար հեռու, քաղաքի առավել մարդաշատ փո-
ղոցներում։

Արդի պայմաններում առաջնակարգ նշանակություն ունի ո՛չ միայն ապ-
րանք գնելու նպատակով բնակչության կողմից ծախսվող ժամանակի տնտե-
սումը, այլև գնորդների կուլտուրական սպասարկումը։ Իսկ այդ մեծ չափով
կախված է առևտրական ցանցի խելացի տեղաբաշխումից։ Ուստի և միշտ էլ
պարտիայի ու կառավարության ուշադրության կենտրոնում են մանրածախ
առևտրական ցանցի զարգացման և նպատակահարմար տեղաբաշխման հար-
ցերը։ Հարկ է նշել, որ գնորդի համար ավելի հարմար կլինի, և նա կտնտեսի
իր ժամանակը, եթե խանութն ունենա լայն ասորտիմենտ։ Սահմանափակ
ասորտիմենտի դեպքում խանութի տերիտորիալ մոտիկությունը ո՛չ միայն հա-
ճախ պետք եղած ապրանքի ընտրությունն է բացառում, այլ՝ գնորդին ստի-
պում է ծախսել ավելի ժամանակ՝ մյուս խանութներում այդ ապրանքը ձեռք
բերելու համար։

Այսպիսով, բարձրորակ սպասարկման տեսակետից բնակավայրին խանու-
թի մոտիկությունը գնահատելու համար անհրաժեշտ է, ամենից առաջ, հաշվի
առնել այն ժամանակը, որ ծախսում է գնորդը ապրանք գնելու նպատակով։
Իսկ այդ ժամանակը որոշվում է, առաջին հերթին՝ ապրանքների լայն ասոր-
տիմենտի առկայությամբ և առևտրի առաջավոր ձևերի կիրառման ասոր-
ճանով։ Որքան լայն ու բազմազան է խանութում եղած ապրանքների ասոր-
տիմենտը, այնքան լրիվ է բավարարվում գնորդի պահանջը՝ առանց տարբեր
խանութներ հաճախելու, իսկ վաճառքի առաջավոր ձևերի կիրառման շնորհիվ
նա կարող է տնտեսել զգալի ժամանակ։

Ինչպես երևում է վերը շարադրվածից, առևտրական ցանցի նպատակա-
հարմար տեղաբաշխման և գնորդի պահանջարկը լրիվ բավարարելու համար
հարկավոր է հաշվի առնել մի շարք գործոններ, և ոչ թե միայն սահմանափակ-
վել օբյեկտների մեխանիկական տեղադրմամբ։

Գրականության մեջ երաշխավորվում են սպասարկման զանազան շառա-
վիղներ։ Քաղաքների պլանավորման և կառուցման կանոններով և նորմանե-
րով պարենային խանութների համար սպասարկման շառավիղը հանձնարար-



վում է 0,5 կմ-ից ոչ ավելի, իսկ ոչ բարձրահարկ կառուցումների շրջանում՝
0,7 կմ-ից ոչ ավելի. արդյունաբերական ապրանքների խանութների համար
սպասարկման շառավիղը հանձնարարվում է մեկ կիլոմետրից ոչ ավելի։

Խանութների սպասարկման այս շառավիղները ևս պետք է օգտագործել
դիֆերենցված ձևով։ Այսպես, օրինակ, պարենային ապրանքների մի մասը
(հրուշակեղեն, գինիների բարձր տեսակներ, ձուկ և այլն) պարբերական պա-
հանջարկի ապրանքներ են, և այդ խանութների տեղաբաշխումը կարող է դուրս
գալ հաստատված սահմանների շառավղից։ Իսկ արդյունաբերական ապրանք-
ների խանութների մեխանիկական տեղաբաշխումը միայն սպասարկման շա-
ռավիղների հիման վրա կարող է առաջացնել առևտրական ցանցի, ապրան-
քային ասորտիմենտի անհարկի ցրվածություն քաղաքի տերիտորիայում։
Առևտրական սպասարկման որակի բարձրացման և ասորտիմենտի ընդլայն-
ման համար անհրաժեշտ է ոչ թե մանրացնել, այլ խոշորացնել և մասնագի-
տացնել արդյունաբերական ապրանքների խանութները։

Ներկայումս քաղաքային առևտրական ցանցի տեղաբաշխման հիմքում
ընկած են հետևյալ սկզբունքները՝ ցանցի հավասարաչափ տեղաբաշխում, խա-
նութների խմբային տեղադրում (մասնագիտացված խանութների տերիտորիալ
մոտիկացումը գնորդներին), ցանցի աստիճանական կառուցվածք։

Ցանցի ճիշտ կազմակերպման կարևորագույն սկզբունքը նրա հավասարա-
չափ բաշխումն է՝ ըստ բնակչության խտության։ Եթե, օրինակ, 2—3 բանվո-
րական տեղերով հացաբուլկեղենի մեկ խանութն սպասարկում է 5—6 հազար
բնակիչ ունեցող քաղաքամասի, ապա այդպիսի խանութների ցանցը հարկա-
վոր է տեղաբաշխել այնպես, որ նշված թվով բնակչություն ունեցող քաղա-
քամասը սպասարկվի նման մեկ խանութի կողմից և միայն այն վայրերում, ուր
բնակիչների թիվն ավելի է, համապատասխանաբար կավելացվի նաև բանվո-
րական տեղերի թիվը։

Քաղաքի տերիտորիայում գործում են տարբեր տիպի և գործողության
տարբեր շառավիղներ ունեցող բազմաթիվ խանութներ։ Դրանց մի մասն սպա-
սարկում է միկրոշրջանների բնակիչներին, մյուսները՝ բնակելի շրջաններին,
ուրիշները՝ քաղաքային շրջաններին և այլն։ Փոքր խանութների գործողության
շրջանները հանդիպում են իրար, որոշ մասերով համընկնում, որով և ստեղծ-
վում է տարբեր տիպի խանութների փոխադարձ կախվածության բարդ սխեմ։

Տարբեր տիպի խանութների խմբային տեղաբաշխման սկզբունքը պայ-
մանավորված է ընդհանուր պահանջարկով միմյանց հետ կապված ապրանք-
ների առևտուրը տարածականորեն մոտեցնելու անհրաժեշտությամբ։ Այսպես,
սննդամթերքների առևտրում նպատակահարմար է մսի, բանջարեղենի, կաթ-
նամթերքի, հացի մասնագիտացված խանութներն ըստ հնարավորին տեղա-
դրել իրարից ոչ հեռու, քանի որ այդ ապրանքների նկատմամբ գնորդներն
ունեն ընդհանուր պահանջարկ։

Չնայած արդյունաբերական ապրանքների առևտրում գնումների կոմպ-
լեքսայնության նշանակությունն ավելի փոքր է, քան պարենային ապրանքնե-
րինը, սակայն այստեղ էլ նպատակահարմար է մի խմբով տեղադրել այնպիսի
մասնագիտացված խանութներ, ինչպիսիք են՝ կտորեղենինը, պատրաստի հա-
գուստինը, տրիկոտաժինը, կոշկինը, գալանտերեայինը։

Ընդհանուր պահանջարկի ապրանքների խանութների տերիտորիալ մո-

տիկությունը գնորդներին հնարավորություն կտա ժամանակի ավելի քիչ ծախսումով գնել անհրաժեշտ ապրանքները:

Քաղաքում առևտրական ցանցի տեղաբաշխման մյուս ձևը նրա համակենտրոնացումն է: Այդ ձևի զարգացումը կախված է ապրանքների նկատմամբ եղած պահանջարկի բնույթից: Վերլուծելով, հատկապես, բարդ ասորտիմենտի ապրանքների (հրուշակեղենի, գործվածքեղենի, կոշկի, տրիկոտաժի և այլն) պահանջարկը՝ տեսնում ենք, որ դրանց նկատմամբ եղած պահանջարկի պարբերականությունը, ինչպես և ապրանքային խմբերի ասորտիմենտի ներսում առանձին տեսակների մասսայական գնումների աստիճանը, տարբեր են: Այդ պատճառով էլ մասսայական պահանջարկի ապրանքների վաճառքը պետք է մոտեցվի բնակչությանը, իսկ համեմատաբար հազվադեպ կամ էպիզոդիկ պահանջարկի ապրանքները կենտրոնացվեն ոչ մեծ թվով խանութներում, որպեսզի դրանց նկատմամբ եղած պահանջարկը ավելի կենտրոնացված լինի:

Առևտրական ցանցի ճիշտ կազմակերպման և քաղաքի տարբեր շրջաններում խանութների հավասարաչափ տեղաբաշխման բնագավառում Երևան քաղաքում կան լուրջ թերություններ: Առևտրական ցանցը քաղաքի տարբեր շրջաններում տեղաբաշխվում է խիստ անհավասարաչափ, որն ավելի ակնառու է դառնում, երբ քաղաքի համեմատաբար նոր կազմակերպված շրջանները համեմատում ենք ավելի հին, կամ, այսպես կոչված՝ կենտրոնական մասի հետ. մանրածախ առևտրական ցանցը անհավասարաչափ է տեղաբաշխված նաև քաղաքի միևնույն շրջանի տարբեր միկրոշրջաններում կամ փողոցներում:

Քաղաքում այժմ գործում են 1350 առևտրական կետեր՝ 3145 բանվորական տեղով (առանց դեղատների), որոնցից 763-ը խանութներ են, իսկ 552-ը՝ կրպակներ, վրաններ և այլ մանր կետեր: Քաղաքի մանրածախ առևտրական ցանցի անհավասարաչափ տեղաբաշխման մասին ավելի լրիվ պատկերացում կազմելու համար վերցնենք միայն Լենինյան շրջանը, որտեղ 106,2 հազար բնակչին սպասարկում են 125 մանրածախ առևտրական ձեռնարկություններ, որոնցից 7-ը՝ պարենային ապրանքների խանութներ են, 28-ը՝ հացաբուլկեղենի, 7-ը՝ պտուղ-բանջարեղենի և 53-ը՝ արդյունաբերական ապրանքների:

Եղած պարենային և արդյունաբերական ապրանքների խանութները շըրջանում տեղաբաշխված են խիստ անհավասարաչափ: Այսպես՝ Սպանդարյանի անվան հրապարակի շրջակայքում թե՛ արդյունաբերական և թե պարենային ապրանքների խանութները տեղաբաշխված են հիմնականում միայն հրապարակի շրջակայքում: Կալինինի փողոցի վրա կան պարենային ապրանքների մոտ 7 խանութ, մոտավորապես նույնքան էլ արդյունաբերական ապրանքների խանութներ, այդ թվում նաև հրապարակի վրա գտնվող մեծ գաստրոնոմը՝ իր մի քանի բաժիններով, արդյունաբերական ապրանքների երկու ունիվերսալ խանութներ և այլն: Մինչդեռ Ծերեթելու փողոցի վրա զգացվում է խանութների խիստ պակաս, և հաճախ այս փողոցի բնակիչները գնումներ կատարելու համար գալիս են հրապարակի շրջակայքի խանութները: Խանութների խիստ պակաս է զգացվում նաև Շիրակի և Արագածի փողոցներում: Ավելի քան 6—7 կմ երկարություն ունեցող Օրջոնիկիձեի պողոտայում կան միայն երկու խանութ, մեկը կահույքի և մյուսը՝ տնտեսական ապրանքների: Դրան հակառակ Կալինինի փողոցում, որն ունի ընդամենը 1—1,5 կմ երկարություն կա արդյունաբերական ապրանքների վեց խանութ, բացի այդ, այստեղ է գտնվում նաև



շրջանի կենտրոնական ունիվերմագը՝ 132 բանվորական տեղով և բազմաթիվ բաժիններով:

Նույնպիսի վիճակ գոյություն ունի քաղաքի գրեթե բոլոր շրջաններում: Սպանդարյանի շրջանի Շահումյանի անվան փողոցում, որն ունի ընդամենը 200—300 մետր երկարություն և 3000-ից պակաս բնակիչ, իրար կողքի գործում են պարենային և արդյունաբերական ապրանքների 7—8 խանութ, միաժամանակ այստեղ գործում են կենցաղ-սպասարկման մի շարք ձեռնարկություններ: Մինչդեռ 3—4 կմ երկարությամբ ձգվող Բարեկամության փողոցը ավելի քան 20 հազար բնակչությամբ, խիստ կարիք ունի թե՛ պարենային, և թե արդյունաբերական ապրանքների խանութների. այնտեղ չկա արդյունաբերական ապրանքների և ոչ մի խանութ, եթե չհաշվենք Մոսկովյան և Բարեկամության փողոցների անկյունում գտնվող արդյունաբերական ապրանքների №№ 112 և 115 խանութները: Խանութների խիստ պակաս է զգացվում Սայաթ-Նովայի և Խանջյանի փողոցներում:

Համապատասխան կազմակերպությունները և, առաջին հերթին, առևտրի մինիստրությունը աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային սովետի գործադիր կոմիտեի առևտրի վարչության հետ միասին պետք է ամենայն լրջությամբ զբաղվեն այս կարևոր խնդրով:

Այժմ առևտրական ցանցի կարևորագույն յուրահատկությունը, որ առաջ է գալիս քաղաքաշինարարության նոր պայմաններում, պետք է համարել ցանցի կենտրոնացված կառուցման սկզբունքը՝ կուլտուր-կենցաղային և կոմունալ սպասարկման սիստեմի հետ օրգանական կապով հանդերձ: Նոր քաղաքների և շրջանների կառուցապատման հիմնական ձև է դառնում միկրոշրջանների ստեղծումը 4—12 հազար, և բնակելի շրջանների ստեղծումը՝ 20—50 հազար բնակիչներով:

Այդ կառուցվածքին համապատասխան էլ ստեղծվում են նաև կոմունալ, կուլտուրական, կենցաղային և առևտրական սպասարկման ձեռնարկություններ. հետևաբար նոր շրջանների բնակչությանն սպասարկելու ասպարեզում գնալով ավելի կարևոր դեր են խաղում միկրոշրջանների առևտրական կոմպլեքսները (առևտրական միկրոկենտրոնները) և բնակելի ու քաղաքային շըրջանների առևտրական կենտրոնները:

Առևտրական կենտրոններից բացի նոր բնակելի շրջանների առևտրական ցանցի մեջ են մտնում մասնագիտացված և նեղ-մասնագիտացված խանութները, որոնք տեղադրվում են այն վայրերում, ուր բնակչությունն ավելի հաճախ է լինում, գլխավորապես, քաղաքի հիմնական մայրուղիներում: Սպասարկման այդպիսի ձևը բարձրացնում է առևտրի կուլտուրան և զգալի չափով օգնում ժամանակի տնտեսմանը:

Առևտրական կենտրոնն ունի զարգացման մեծ հեռանկարներ: Նրա հիմնական առավելությունն այն է, որ հնարավորություն է տալիս բարելավելու բնակչության սպասարկումը, տնտեսում է գնորդի ուժերն ու ժամանակը, քանի որ նա իր համար անհրաժեշտ բոլոր ապրանքները կարող է ձեռք բերել մի տեղում, առանց քաղաքի տարբեր վայրերի խանութները հասնելու: Բացի դրանից, առևտրական կենտրոններն սպասարկման լրացուցիչ տեսակների (պատվերների սեղան, ապրանքների փաթեթման և տուն հասցնելու բյուրո, մոր և մանկան սենյակ և այլն) համար անհրաժեշտ պայմաններ են ստեղծում.

որոնք չեն կարող բարերար ազդեցություն չունենալ գնորդների սպասարկման
կուլտուրայի բարձրացման վրա։
Մեր կարծիքով Երևան քաղաքում, որտեղ բուռն շինարարություն է ծա-
վալված, ինչպես կենտրոնական մասում, այնպես էլ ծայրամասերում հնարա-
վոր և նպատակահարմար է կառուցել առևտրական կենտրոններ, օգտագործե-
լով այդ նպատակի համար միկրոշրջանների (4—12 հազար բնակիչ) և բնա-
կելի շրջանների (20—50 հազար բնակիչ) առևտրական կենտրոնների տիպա-
յին նախագծերը։

Հաշվի առնելով քաղաքի բնակչության աճը և զարգացման հեռանկար-
ները, այժմ աշխատանք է տարվում Երևանի նոր գլխավոր պլան ստեղծելու
ուղղությամբ։ Այն նախատեսվում է մինչև 1980 թվականի համար, երբ քա-
ղաքի բնակչության թիվը կհասնի 1 միլիոնի։

«Մեծ Երևանի» սահմանագծի մեջ կմտնեն մի շարք գյուղեր և բանավան-
ներ, ինչպես նաև քաղաքի ծայրամասերում գտնվող առանձին շրջանները։
Քաղաքի տերիտորիան կմեծանա 15 հազար հեկտարով։ Ըստ նախագծի, նա-
խատեսվում է բազմահարկ տներով բնակելի մասսիվներ կառուցել նաև
այսօրվա քաղաքի սահմանագծում գտնվող այն վայրերում, ուր այժմ հնից
մնացած միահարկ տներ են, ինչպես նաև ծայրամասերում եղած ազատ տա-
րածություններում։

Երևան քաղաքում կան բոլոր հնարավորությունները առևտրական կենտ-
րոններ կազմակերպելու համար, սակայն այս կարևոր հարցը դեռևս մնում
է ուշադրությունից դուրս։ Օրինակ, Շահումյանի շրջանում, Հրազդանի աջ
ափին, բուռն թափով ընթանում է միկրոշրջանների շինարարությունը։ Սա-
կայն առևտրի, հասարակական սննդի և կուլտուր-կենցաղային օբյեկտների
շինարարությունն ընթանում է խիստ դանդաղ։ Երբ խախտվում է բնակելի
շենքերը և սպասարկող ձեռնարկությունները միաժամանակ շահագործման
հանձնելու վերաբերյալ կառավարական որոշումը, խանգարվում է նաև բնակ-
չության սպասարկման գործը և օրինական դժգոհություններ են առաջանում։
Առ 1-ը հունվարի 1964 թ. Հրազդանի աջափնյա մասսիվում ապրում են մոտ
30 հազար բնակիչ, մինչդեռ այդտեղ կան միայն 4—5 խանութ։ Խիստ անբավա-
րար է նույնիսկ առաջին անհրաժեշտության ապրանքների խանութների թիվը։
Այսպիսով, առևտրական օբյեկտների շինարարությունն անհանդուրժելիորեն
ետ է մնում բնակարանային շինարարությունից։ Վիճակը նույնն է նաև քա-
ղաքի մյուս մասերում (Արաբկիր, Նորք, Նոր-Արեշ, Շենգավիթ, Ջարբախ, Վե-
րին Ջերմուկ և այլն), ուր մեծ տեմպերով ծավալվել է բնակարանային շինարա-
րությունը։

Հաջորդ էջի աղյուսակում ցույց է տրված Երևան քաղաքի տարբեր շրջ-
անններում մինչև 1964 թվականի հունվարի 1-ը գործող պարենային և ար-
դյունաբերական ապրանքների խանութների և դրանցում ընդգրկված բանվո-
րական տեղերի թիվը, ինչպես նաև յուրաքանչյուր խանութին և մեկ բանվորա-
կան տեղին ընկնող բնակչության թիվը։

Բերված թվերը ցույց են տալիս քաղաքի տարբեր շրջաններում մանրա-
ծախ առևտրական ցանցի և նրանցում եղած բանվորական տեղերի խիստ ան-
համաչափությունը։ Այսպես՝ եթե Սպանդարյանի շրջանում գործող յուրաքան-
չյուր խանութին ընկնում է 668,6, իսկ յուրաքանչյուր բանվորական տեղին՝
143,5 բնակիչ, ապա Շահումյանի շրջանում գործող յուրաքանչյուր խանութին



ընկնում է 1663,9, իսկ յուրաքանչյուր բանվորական տեղին՝ 683,6 բնակիչ։

| Շրջանների անվանումը | Բնակչության թիվը | Խանութների ընդհանուր թիվը | Մեկ խանութին ընկնող բնակչության թիվը |
|---|---|---|---|
| Լենինյան | 106200 | 117 | 907,7 |
| Սպանդարյան | 135059 | 206 | 655.5 |
| Օրջոնիկիձեի | 140000 | 174 | 804,6 |
| 26-կոմիսարների | 121700 | 162 | 751,2 |
| Շահումյանի | 102141 | 97 | 1053,0 |
| Քաղաքի ամբողջ | 606100 | 756 | 801,7 |

Աղյուսակից երևում է, որ Երևան քաղաքում ամբողջությամբ և, հատկա-
պես, մի քանի շրջաններում մանրածախ առևտրական ցանցի խտությունը, որի
ցուցանիշը յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնող խանութների և դրան-
ցում եղած բանվորական տեղերի թիվն է, խիստ ետ է մնում գոյություն ունե-
ցող նորմաներից։ Սահմանված նորմայի համաձայն յուրաքանչյուր 10 հազար
բնակչին պետք է հասնի 66 բանվորական տեղ, սակայն ոչ մի շրջանում այն
չի ապահովվում։ Այսպես՝ քաղաքի Սպանդարյանի շրջանը, որը մյուս շրջան-
ների հետ համեմատած ավելի բարվոք վիճակում է, յուրաքանչյուր 10 հազար
բնակչին հասնում է 63,5, Լենինյան շրջանում՝ 48,6, Օրջոնիկիձեի շրջանում՝
38,7, 26 կոմիսարների անվան շրջանում՝ 33,7, իսկ Շահումյանի շրջանում՝
միայն 19,1 բանվորական տեղ։

Այդպիսի դրության պատճառը, հիմնականում, կառուցվող նոր քաղաքա-
յին շրջաններում սպասարկող օբյեկտների տերիտորիալ տեղաբաշխման, բաց-
վող խանութների պրոֆիլը ճիշտ որոշելու հետ կապված հարցերի գիտական
լուծման անտեսումն է։ Այդ հարցերը լուծելիս հաճախ հաշվի չեն առնվում
կոնկրետ պայմանները։ Մեր կարծիքով դրությունը այլ կլինի, եթե այդ կարգի
հարցերի լուծմանը ճարտարապետների և շինարարների հետ միասին մասնակ-
ցեն նաև առևտրի աշխատողները։

## ՔԻՄԻԱՆ ԹԵԹԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Վերջին ժամանակներս քիմիական նյութերը
լայնորեն օգտագործվում են զգեստների, կոշկե-
ղենի և այլ ապրանքների արտադրության մեջ։
Տեքստիլ արդյունաբերության մեջ, օրինակ, ար-
հեստական թելի գործածումն ավելացել է 80
տոկոսով, իսկ սինթետիկ թելինը՝ 2,5 անգամ։
Այդ մանրաթելերի և բնականի խառնուրդից
ստացվում են սքանչելի գործվածքներ՝ զգեստ-
ների ու կոստյումների համար։ Հումքի նոր
տեսակների շնորհիվ թողարկվում են լավորակ և
արհեստական մորթիներ, զգալի չափով հարըս-
տացել է տրիկոտաժեղենի ասորտիմենտը։
Քիմիական նյութերն օգտագործվում են նաև
գործվածքների հատուկ մշակման համար, որի
շնորհիվ վերջիններս դառնում են չջարդվող,
չկծկվող և ավելի դիմացկուն։

Քիմիական արտադրությունը մատակարարում
է արհեստական մանրաթել, պոլիմեր, սինթետիկ
խեժեր, պլաստմասսաներ՝ ժողովրդական լայն
սպառման առարկաների արտադրության համար.
եթե այդպիսի նյութերն առաջներում հանդիսա-
նում էին բնական հումքի փոխարինողներ (բամ-
բակի, բրդի, մետաքսի, կաշվի և այլն), ապա
այժմ արդեն բարձրորակ զգեստների, կոշկե-
ղենի և կենցաղային այլ առարկաների արտա-
դրության համար դրանք դարձել են անփոխա-

րինելի հումք։ Միայն քիմիայի շնորհիվ է հնարավոր ապահովել ժողովրդական լայն սպառման առարկաների արտադրության արագ աճ, բարձրացնել դրանց որակը և զգալի չափով իջեցնել արտադրության ծախսերը, բավարարել բնակչության պահանջները լավորակ, գեղեցիկ ու էժան ապրանքներով։

Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի գործարանում բոլոր գործվածքների 89 տոկոսը պատրաստվում է քիմիական մանրաթելից։

Մետաքսի արտադրության մեջ գործվածքների ասորտիմենտում մեծ տեղ են գրավելու ացետատ մետաքսից արտադրվող գործվածքները։

Ացետատի մանրաթելը յուրահատուկ ու արժեքավոր որոշ հատկությունների շնորհիվ ունի մի շարք առավելություններ վիսկոզ մետաքսի համեմատությամբ։ Ացետատ մետաքսի գործվածքները չեն ջարդվում ու կծկվում, գեղեցիկ են և ավելի հավասար են ներկվում։ Ացետատ մետաքսի և վիսկոզի խառնուրդը ներկելիս ստացվում է երկտոն ֆոն, որը հարստացնում է գործվածքի տեսքը։ Բայց ացետատ մետաքսի մանրաթելն ու գործվածքները խիստ էլեկտրականանում են, բավարար չափով կայուն չեն բարձր ջերմաստիճանի նկատմամբ։

Արտադրվող քիմիական մանրաթելերից ամենադիմացկունը կապրոնն է։ Կապրոնի գործվածքներն անջրանցիկ են։ Դրանք անջրանցիկ վերարկուներ պատրաստելու անփոխարինելի նյութ են։ Այդպիսի վերարկուների համար կապրոն արտադրելիս պետք է պահպանել մետաքսյա գործվածքների արտադրության տեխնոլոգիական ռեժիմի հիմնական կողմերը, նկատի ունենալով նաև լրացուցիչ պայմանները՝ զանազան արտադրական պրոցեսներում։

Քիմիական մանրաթելերը վերամշակելու մեծ հնարավորություններ ունի տրիկոտաժի արդյունաբերությունը։

Կապրոնի մանրաթելը տրիկոտաժի արտադրության մեջ սկսել է գործածվել հետպատերազմյան շրջանում, հատկապես գուլպաների արտադրության մեջ։ Կապրոնն օգտագործվում է նաև բամբակյա և վիսկոզ մետաքսյա գուլպաների կրունկներն ու թաթերը ավելի դիմացկուն դարձնելու նպատակով։ Տրիկոտաժի արդյունաբերությունը վերամշակում է նաև մեծ քանակությամբ բարձր ոլորքի առաձգական կապրոն մետաքս։

Առաձգական կապրոն թելի գործվածքները 3—5 անգամ ավելի դիմացկուն են, քան բամբակյա գործվածքները։

Կապրոն մետաքսը, բացի գուլպայի արտադրությունից, գործածվում է նաև սպիտակեղենի, լողազգեստների և կանացի վերնաշապիկների արտադրության մեջ։ Հաճախ այն օգտագործվում է որպես զարդ կանացի արհեստական մետաքսյա սպիտակեղենի համար։

Վերջին տասնամյակներում մի շարք երկրներում տեքստիլ արդյունաբերության մյուս ճյուղերից բավականին առաջ է անցել տրիկոտաժի արդյունաբերությունը և այդ պատահական չէ։ Տրիկոտաժի հյուսվածքները համեմատած մյուս գործվածքների հետ, ունեն մի շարք առավելություններ։

Բնակչության պահանջները բավարարելու գործում տրիկոտաժը մեծ տեղ է գրավում։ Տրիկոտաժի արդյունաբերության մեջ ծավալային սինթետիկ մանվածքներից պատրաստվում են թեթև և աղվամազ գործվածքներ, որոնք թե՛ իրենց արտաքին տեսքով և թե որակով չեն զիջում բարակ մերինոսի բրդյա գործվածքներին և մեծ պահանջարկ ունեն։

Քլորին մանրաթելից արտադրվում է բուժիչ սպիտակեղեն, որն օգտագործվում է ռևմատիզմի, ռադիկուլիտի դեմ։

Հումքի բազայի ընդլայնման շնորհիվ զգալի չափով ավելացել է վիսկոզ, ացետատ և կապրոն մետաքսից արտադրվող տրիկոտաժեղենի, հատկապես կանացի սպիտակեղենի, տղամարդկանց վերնաշապիկների, ձեռնոցների արտադրությունը։ 1964 թվականին, 1963 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայի տրիկոտաժի ձեռնարկություններում զգալի չափով ավելացել է քիմիական մանրաթելի օգտագործումը գուլպա-տրիկոտաժի, սպիտակեղենի և վերնազգեստի արտադրության մեջ։

1963 թվականին ռեսպուբլիկայում արհեստական և սինթետիկ մետաքսից արտադրվել է 897 հազար հատ տրիկոտաժե վերնազգեստ, 5743 հազար հատ տրիկոտաժե սպիտակեղեն և 6040 հազար զույգ գուլպա։ 1960—1963 թվականների ընթացքում Հայկական ՍՍՌ-ում յուրացված է առաձգական կապրոնի մանրաթելից գործվող գուլպաների արտադրությունը. 1963 թ. այդ հումքից արտադրվել է 335 հազար զույգ գուլպա։

Երևանի նուրբ-բրդյա և մահուդի կոմբինատի հումքի 47,7 տոկոսը կազմում են քիմիական մանրաթելերը (կապրոն, լավսան և այլն)։

Կիրովականի ացետատ մետաքսի գործարանը շահագործման հանձնելուց հետո լայն հեռանկարներ են ստեղծվել ավելի ռացիոնալ օգտագործելու Վ. Ի. Լենինի անվան մետաքսի գործարանի հնարավորությունները և ապահովելու մետաքսի ու տրիկոտաժի արտադրության զարգացումը ռեսպուբլիկայում։

Քիմիական և բնական մանրաթելերի խառնուրդից պատրաստված մանվածքը և ծավալային թելի օգտագործումը մեծ չափով հարստացնում են գործվածքների և տրիկոտաժի ասորտիմենտը։



Մոսկվայի Շչերբակովի անվան կոմբինատում աշխատանքներ են տարվել ացետատի և պրոֆիլավորված հատվածքի կապրոն թելի վերամշակման և ներկված ացետատ մետաքսից բարձրորակ խավոտ գործվածքներ ստանալու ուղղությամբ։

Նորագույն մանրաթելերից է նիտրոնը, որն ունի հաճելի, բուրդ հիշեցնող տեսք և դիմացկունությամբ հավասարը չունի։

Եթե վուշը, մետաքսը, բամբակը արևի ճառագայթների երկարատև ներգործությունից կամ խոնավությունից քայքայվում են, ապա նիտրոնը $^3/_4$ տոկոսով պահպանում է իր սկզբնական դիմացկունությունը։

Սինթետիկ մանրաթելը (որպես ամենադիմացկունը) բացի հագուստեղենից օգտագործվում է առագաստային գործվածքների, ձկնորսական զանազան պիտույքների համար։

Սինթետիկ նյութերը հումքի մեծ աղբյուր են կոշկեղենի, արդուզարդի և այլ ապրանքների արտադրության մեջ։ Այժմ արդեն մեզ մոտ ամեն տարի արտադրվում է մոտ հարյուր միլիոն զույգ կոշիկ՝ արհեստական կաշվից վերնամասով և թեթևացրած միկրոծակոտկեն կոշկատակով։ Միկրոծակոտկեն կոշկատակը թեթև կաշի է, կաշվե կոշկատակից դիմացկուն, առաձգական և քիչ ջերմահաղորդ։ Արհեստական կաշվից պատրաստված արդուզարդի ապրանքները անջրանցիկ վերարկուները և թաղանթանյութերից պատրաստվող զանազան տնտեսական պիտույքներ մեծ պահանջարկ ունեն։

Արհեստական նյութերից արտադրված ժողովրդական լայն սպառման ապրանքների ասորտիմենտը հարստացնելու և դրանց թողարկումն ավելացնելու նպատակով 1966—1970 թվականներին նախատեսված է ՍՍՌՄ-ում 1,5—2,5 անգամ ավելացնել արհեստական կաշվի արտադրությունը (կոշկատակերի, ներքին դետալների և փափուկ կաշիների համար)։

1970 թվականին ժողովրդական լայն սպառման ապրանքների արտադրության մեջ այդ կաշիների և նյութերի օգտագործման շնորհիվ մեր Միությունում կարտադրվեն 360 միլիոն զույգ կոշիկ՝ թեթև ծակոտկեն և կաշվանման կոշկատակով, 1963 թվականի 115 միլիոն զույգի դիմաց, արհեստական կաշվե երեսով՝ 80 միլիոն զույգ կոշիկ, 1963 թվականի 15 միլիոն զույգի դիմաց. արհեստական ծակոտկեն կաշվից՝ 7,5 միլիոն վերարկուներ ու կուրտկաներ, 1963 թվականի 0,12 միլիոնի դիմաց։

Թեթև արդյունաբերության ձեռնարկություններում շատ բան է արվել դեֆիցիտային հումքի տնտեսման և սննդամթերքներն այլ նյութերով փոխարինելու ուղղությամբ։ Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատում սննդի օսլայի փոխարեն արհեստական մետաքսի հենքը շոհում են պոլիակրիլամիդով։

Խաղողի սպիրտը արտադրության մեջ փոխարինված է սինթետիկ սպիրտով։

Կոշկի Մասիս ֆիրմայում զգալի չափով կրճատվել են ներմուծվող բնական կաուչուկից, խեժից և դեֆիցիտային սննդամթերքներից պատրաստվող սոսնձի ծախսերը։

Կոշկեղենի արտադրության մեջ առաջին անգամն է գործադրվում կոշկեղենի վերամշակման ֆոտոքիմիական ձևը (ֆոտոֆիլմոտիպ)։

Երևանի Շահումյանի անվան կաշվի գործարանը և Կիրովի անվան գործարանը միասին աշխատանքներ են տանում ակրիլային էմուլսիան լաքերով փոխարինելու, ինչպես և կատիոնային լաքեր օգտագործելու ուղղությամբ։ 1964 թվականին գերշակի, ալիզարինի յուղերը և ձկան յուղը փոխարինվել են սինթետիկ ճարպերով։

Քիմիական նյութերի օգտագործումը զգալի չափով իջեցնում է ապրանքների ինքնարժեքը և միաժամանակ հնարավորություն ընձեռում մեծ մասշտաբներով ավելացնելու լայն սպառման առարկաների արտադրությունը, որն անհնար կլիներ հումքի միայն նախկին տեսակների օգտագործմամբ։

Նախատեսված է մինչև 1970 թվականը ներդնել 11 միլիարդ ռուբլուց ավելի գումարներ քիմիական և թեթև արդյունաբերության այն ճյուղերի զարգացման համար, որոնք թողարկում են արհեստական նյութերից պատրաստված սպառման առարկաներ։

Ն. ՇԱՀՆԱԶԱՐՅԱՆ

ԱՆՑՅԱԼԸ մեր հայացքով

Հ. ԹՈՒՐՇՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

# ՀՈԲԵԼՅԱՆԻՑ ՀԵՏՈ

Հայ ժողովուրդը թե մայր հայրենիքում և թե բովանդակ սփյուռքում նշեց իր մեծագույն երգիծաբանի՝ Հակոբ Պարոնյանի ծննդյան 120-ամյակը։ Լրագրերն ու ամսագրերը հոդվածներ տպագրեցին, թատերական կազմակեր-պությունները ներկայացումներ տվին, հանդիսավոր նիստեր գումարվեցին և ճառեր արտասանվեցին։ Դրվատվեց նրա դեմոկրատիզմը, նրա հաստատա-կամ պայքարը ամեն տեսակ չոչերի դեմ և նրա համակրանքը հասարակ մարդկանց նկատմամբ։ Ըստ արժանվույն գնահատվեց նրա ռեալիզմը գրա-կան ստեղծագործության մեջ և նրա ռեալիստական մտածողությունը՝ հայ ժողովրդին հուզող հասարակական-քաղաքական հարցերում։

Մոռացության չմատնվեց այն, որ Հակոբ Պարոնյանը գրական ասպարեզ էր մտել արևմտահայության հասարակական զարթոնքի ամենաբուռն և ամենահետաքրքրական շրջանում՝ ազգային սահմանադրության մեղրամիսին և հայկական հարցը դիվանագիտության առարկա դառնալու երկունքի շըր-ջանում։ Այս առնչությամբ շեշտվեց մեծ տերությունների քաղաքա-կանության սրամիտ մերկացումը Պարոնյանի կողմից, որին ոմանք խան-դավառորեն հագցրին կոմունարի գդակ, իսկ շատերը՝ հայդուկի փափախ։ Շատ խոսվեց նրա ծանր կացության, նրա նյութական ողբերգության և նրա կյանքը մաշող հիվանդության մասին, բայց խոսք չասվեց նրա այն մեծ ողբերգու-թյան մասին, որն արագացրեց նրա մահը, խոսք չասվեց այն մասին, որ ընդամենը 49 տարի ապրած հեղինակի գրական-հասարակական մահն ավելի շուտ էր վրա հասել, քան նրա ֆիզիկական մահը։

Անցյալի հայ հասարակական ու, մանավանդ, գրական գործիչները հա-ճախ են գանգատվել, որ մենք մեռել թաղելու և հոբելյան տոնելու գործում եռանդի պակասություն չենք ցուցաբերում։ Ի դեպ, Պարոնյանն էլ արժա-նացավ փառավոր թաղման։ Իր իսկ սուր գրչով սպանված, բայց չթաղված ազգային չոչերը մեկը մյուսի հետևից բեմ բարձրացան և գովաբանեցին նրա գրական-հրապարակախոսական գործունեությունը, որի սլաքներն ուղղված էին եղել հենց իրենց դեմ։ Գաղտնիք չէ, որ հենց պատրիարքարանի ցուցումով՝ մեծ շուքով կատարվեց Պարոնյանի թաղումը և պատրիարքարանի



ցուցումով էր, որ «քարոզ խոսելու մեծ փափագ» ունեցող Խորեն եպիսկոպոս Նարպեյը, որու «դամբանականները ազգային հիվանդանոցի մոմերուն պես կարգերու կբաժանվեին, մեկ ոսկի տվող մեռյալն բարեսիրտ կըլլար, երկու զրկողը բարեսիրտ և քիչ մ'ալ ազգասեր կհռչակվեր», առանց մի գրոշ ստանալու, առաջինը «սրտառուչ դամբանականով» դրվատեց Պարոնյանին։

Գաղտնիք չէ, որ ազգային չոչերին խարազանող Հակոբ Պարոնյանը ոչ թե հետմահու, այլ ի կենաց մի ամբողջ տասնամյակ արդեն ազգային չոչ էր դարձել և Ադրիանապոլսի հայ համայնքի կողմից Ազգային ժողովի երես-փոխան էր ընտրվել պատրիարքարանի գործունեությունը վերահսկելու լիազո-րությամբ, այն պատրիարքարանի, որի ոչ աննշան պաշտոնյաներից մեկն էր կարգվել նա մինչ այդ։ Բայց,— այս խիստ բնորոշ հանգամանք է,— տարիներ շարունակ պատրիարքարանի և Ազգային ժողովի գործունեությու-նը քննադատող, ծաղրող, ազգային չոչերին այպանող Պարոնյանը երեսփո-խանական աթոռը գրավելուց հետո ոչ մի խոսքով ու գործով ցույց չտվեց իր ներկայությունը հասարակական այդ հաստատությունում։ Ինչո՞ւ։

Այս և այլ ինչուների պատասխանը պետք է որոնել մեծատաղանդ գրո-ղի ռեալիզմի մեջ, ներկան ճիշտ գնահատելու և ապագան ճիշտ տեսնելու այն բացառիկ կարողության մեջ, որ հուսալքել ու մահվան էր դատապարտել նրան՝ նախքան վրա կհասներ նրա ֆիզիկական մահը։ Նրան մաշող ցավը ո՛չ թե թոքախտն էր, այլ բացառիկ իրատեսությունը, որ, մթագնելով նրա կյանքը, արագացնում էր հիվանդության ընթացքը։ Պարոնյանը տեսնում էր, որ ազգային սահմանադրությամբ կյանքի կոչված Ազգային երեսփոխա-նական ժողովն՝ այնտեղ բորբոքվող բուռն վեճերով, փոթորիկ էր վառոդի տակառի վրա դրված մի բաժակ ջրի մեջ և դրա համար էլ գերադասում էր լռել։ Այն, «ինչ ներելի էր նախքան Բեռլինի վեհաժողովը,— ասել է մեր պատմությանը շատ լավ իրազեկ Նիկողայոս Ադոնցը,— թերևս, աններելի էր նրանից հետո»։ Բայց Ադոնցից տասնամյակներ առաջ, Բեռլինի վեհաժողո-վից անմիջապես հետո, առաջինն այդպիսի եզրակացության էր հանգել Հա-կոբ Պարոնյանը։ «Մրչյուններուն գլխավորն (այսինքն՝ արևմտահայության պատրիարքը) սկսավ հորդորել յուր ժողովուրդն, որ այսուհետև փափագի այն բանին միայն, որուն հասնելու կարողություն ունի» (Հ. Պարոնյան, եր-կեր, ժող. հ. 5, էջ 29)։

Սակավաթիվ իրատեսների մեջ Պարոնյանն առաջիններից էր, որ տե-սավ կատարյալ մենակության դատապարտված իր ժողովրդի օրհասական անել վիճակն ու է՛լ ավելի հեռանկարազուրկ ապագան։ Սակավաթիվների մեջ նա առաջիններից էր, որ հասկացավ վիշապի բաց երախի մեջ սահմա-նադրություն խաղացող իր ժողովրդի ողբերգությունը, որ չէր կարող սրա-տես և ուղղամիտ Պարոնյանի անձնական ողբերգությունը չդառնալ և լռու-թյան չդատապարտել նրան։

***

Հայկական հարցը դիվանագիտության հարց դառնալուց դեռ շատ առաջ Հայկական բարձրավանդակում խաչաձևվում էին Անգլիայի և ցարական Ռու-սաստանի շահերը, որոնց տևական բախումը կապիտալիզմի պայմաններում անհնարին էր դարձնում «հայկական հարցի» բարեհաջող լուծումը և ապար-

դյուն ու աղետավոր՝ կատարյալ մենակության դատապարտված հայ ժողովրդի այնքան հերոսական ազատագրական ջանքերը։

1877—1878 թթ. պատերազմի ժամանակ ռուսական կովկասյան բանակն արագորեն գրավեց Կարս ու Էրզրում բերդաքաղաքները և մտադրություն չուներ դուրս գալու Հայկական բարձրավանդակից։ Ռուսական Բալկանյան բանակը Շիպկան գրավելով մոտեցավ Պոլսո մատույցներին և կմտներ օսմանյան կայսրության մայրաքաղաքը, եթե Անգլիան եվրոպական մեծ պետությունների համաձայնությամբ իր նավատորմը շարժման մեջ չդներ Պոլսո մատույցներում։ Այնուամենայնիվ, ռուսական հրամանատարությանը հաջողվեց Պոլսո մոտակա Սան-Ստեֆանո գյուղում հաղթողի իր կամքը թելադրել պարտված Թուրքիային։ Այդ գյուղի անունով հայտնի դարձած պայմանագրի 16-րդ հոդվածը, որով հայկական հարցը դարձավ դիվանագիտության հարց և մտավ դիվանագիտության պատմության մեջ,— Թուրքիային պարտավորեցնում էր բարենորոգումներ մտցնել հայաբնակ վիլայեթներում և նորմալ կյանք ապահովել հայերի համար։ Այդ հոդվածը ռուսական զորքին իրավունք էր վերապահում մնալ հայաբնակ վիլայեթներում մինչև բարենորոգումների իրականացումը։

Եվրոպայում և Աֆրիկայում կրած շարունակական պարտություններից հետո Թուրքիայի համար էլ անչափ մեծանում էր Հայկական բարձրավանդակի նշանակությունը։ Վեց հարյուրամյա ընդարձակ ու բազմազգ օսմանյան կրոնապետությունն ստեղծել էր ռազմական ֆեոդալիզմի իր յուրօրինակ վարչական ապարատը՝ արտոնյալ ազգությունից հավաքագրվող անսանձ պաշտոնեությամբ, որը լավ էր ապրել և ուզում էր լավ ապրել։ Նոր առաջացած թուրք ազգային բուրժուազիան ո՛չ միայն սերտաճել էր այդ պաշտոնեության հետ, այլ սերում էր նրանից՝ իր կապիտալի նախնական կուտակումը կատարելով կաշառակերության և անպատիժ թալանի՝ Թուրքիայում ավանդական դարձած հրեշավոր եղանակով։

Թուրք ազգային բուրժուազիան այնքան թույլ էր, որ կապիտալիստական նորմալ հարաբերությունների պայմաններում իր իսկ երկրում, իր ծննդյան առաջին իսկ օրից, խեղճացած էր հայ և հույն, թեև անարտոնյալ, բայց ավելի ճկուն և ուժեղ բուրժուազիայի առաջ։ Սակայն սերած լինելով ռազմավարչական պաշտոնեությունից, թուրք ազգային բուրժուազիան ամեն րոպե պատրաստ էր, չխորշելով և ոչ մի միջոցից, տնտեսական մրցությունը փոխարկել քաղաքական պայքարի և ֆիզիկական ոչնչացմամբ հաշվեհարդար տեսնել իրենից թեև տնտեսապես հզոր, բայց անարտոնյալ, հայ ու հույն մրցակիցների հետ։

Եվրոպական և աֆրիկյան ընդարձակ հողերի կորուստն այդ խիստ արտոնյալ, բայց շատ թույլ ազգային բուրժուազիային և շատ ուժեղ, բայց կապիտալիստական նոր հարաբերություններում արդեն իր դարն անցած ռազմա-վարչական պաշտոնեությանը մղում էր ավանտյուրաների ուղին։ Պանիսլամիզմի, ապա պանթուրքիզմի քարոզը գնալով ավելի մասսայական էր դառնում Թուրքիայում։ Պանթուրքիզմը դառնում էր և դարձավ պետական իշխող գաղափարախոսություն։ Այդ նոր բանդագուշանքի համար Հայկական բարձրավանդակը դառնում էր այն առաջին ու միակ կամուրջը, որն օսմանցիներին տերիտորիայով իբրև թե պիտի կապեր իրենց նախահայրենիքի հետ։ Եվ այդ միակ կամուրջը թեև գտնվում էր սուլթանական Թուրքիայի ձեռքին,



սակայն հուսալի չէր նրա համար, որովհետև Հայկական բարձրավանդակում թուրքերը կազմում էին ընդհանուր բնակչության փոքր մասը։

Անգլիան ի սկզբանե բացասական դեր է խաղացել հայկական հարցում։ Լլոյդ Ջորջն անգամ հետին թվով խոսելով հայկական հարցում Անգլիայի խաղացած այդ խիստ բացասական դերի մասին, հարկադրված է եղել խոստովանել, որ

«Սան-Ստեֆանոյի պայմանագրով ռուսական զորքերը պետք է օկուպացնեին Հայաստանը՝ մինչև անհրաժեշտ ռեֆորմների իրականացումը։ Այդ որոշումը վերացվեց Բեռլինի 1878 թվականի տրակտատով, որն ամբողջովին մեր սպառնագին ճնշման արդյունքն էր և մեր կողմից փառաբանվում էր որպես Անգլիայի մեծագույն հաղթանակ... Հայաստանը զոհ բերվեց մեր կանգնեցրած հաղթանակի զոհասեղանին։ Ռուսները հարկադրվեցին ետ գնալ. դժբախտ հայերը նորից ճզմված մնացին իրենց հին կեղեքիչների գարշապարի տակ... Բրիտանական կառավարության քաղաքականությունը ճակատագրական անխուսափելիությամբ հանգեցրեց 1895—1897 և 1909 թվականների սարսափելի սպանդներին և 1915 թվականի ամենասոսկալի կոտորածին» (Ллойд Джордж. «Правда о мирных договорах», т. 2, стр. 390)։

Բեռլինի կոնգրեսից հետո հայկական հարցի արծարծումն իրենց մենաշնորհը դարձրած հայ առանձին պարզամիտներ, իսկ այնուհետև հայ ամբողջ կազմակերպություններ Գլադստոնների և Ջեյմս Բրայսների քաղցրամեղցր ճառերից խաբված և տառապելով քաղաքական կուրությամբ չկարողացան արժանին հատուցել նենգ Ալբիոնին, սակայն իրատես Պարոնյանը դեռևս Բեռլինի կոնգրեսից չորս ամիս առաջ, 1878 թվականի հունվարի 31-ին, նշավակել է Անգլիայի կառավարության նենգ վարմունքը։

«Մեկ երկու օրեն ի վեր,— գրել է նա,— զրույց կպտտի թե՝ Անգլիո նավատորմիղը նեղուցեն մտեր է, թե նորեն ելեր է, թե ետքը դարձյալ մտեր է, թե՝ վերջը նորեն ելեր է։ Եթե այս զրույցներուն ամենն ալ իրավ են, ըսել կըլլա, թե Անգլիո նավատորմիղին հրամանատարը հրահանգ ընդունած է իր կառավարութենեն, որ պարապ չնստի ու նեղուցեն մեյ մը մտնի, մեյ մը ելնե։

Տար աստված, որ սա նավատորմիղին սպասելու տեղ մը որոշվեր ու մենք ալ գլխու ցավեն ազատեինք» (հատ. 4, էջ 13)։

Ընթերցողը, տարիե մը իվեր է այս նավատորմիղին խնդիրը գլուխնիս ուտեցուց։

Անգլիայի նախաձեռնությամբ Սան-Ստեֆանոյի պայմանագիրը պետք է վերանայվեր Բեռլինի կոնգրեսում (1878 թ. հունիս)։ Անգլիան Կիպրոսը փոխհատուցում ստանալով, իսկ Գերմանիան շատ հեռուն գնացող նկատառումներով, ստանձնում են Թուրքիայի «շահերի» պաշտպանությունը հաղթող Ռուսաստանի դեմ։ Բուլղարիային անկախություն տալով Բալկաններում ռուսական առաջխաղացման դեմ երկրորդ պատվար (առաջինը Ռումինիան էր) քաշելու հարցը վեճ չէր հարուցում։ Հիմնական հարցը ռուսական բանակը Էրզրումից ետ տանելն էր։ Այդ հարցում թուրքերին օգնելու գործում անհրաժեշտ էր, որ հայերն անխոհեմ քայլով սատար կանգնեին անգլիական դիվանագիտությանը։ Ինչպես երիտասարդ թուրքերի առաջին սերնդի՝ Միդհաթականների, այնպես էլ սուլթան Համիդի կողմից հայոց պատրիարքին թելադրվում է հայկական հատուկ պատվիրակություն ուղարկել Բեռլին՝ ինչպես բողոքելու քրդերի ու չերքեզների սանձարձակությունների դեմ, այնպես էլ բարենորոգումների իրականացման գործում խնդրելու դեսպանաժողովի վերահսկողությունը։

Համիդը նոր էր գահ բարձրացել և պատրաստվում էր երիտասարդ թուրքերի առաջին ղեկավարին՝ Միդհաթ փաշային չեզոքացնել, որպեսզի ինքնիշխան կառավարեր երկիրը։ Սակայն հայկական հարցում Համիդը կողմնորոշվում էր ո՛չ թե թուրք ֆեոդալների նախկին հանդուրժողականությամբ, այլ

սաղմնավորվող թուրք ազգային նոր բուրժուազիայի անհամբերատար ջղագարությամբ, այնպես որ հայկական հարցում նրա դիրքը համընկնում էր Միդհաթ փաշայի դիրքին։

«Միդհատ փաշան և իր խումբն,— *գրում է Ա. Սարուխանը*,— որ ամենից առաջ թուրք ազգայնականներ էին, բնականաբար ձգտում էին հայոց պատրիարքին և ղեկավարող շրջաններին, որոնք, աննկատ, գործում էին այն միջոցին նրանց ցանկությամբ» (Ա. Սարուխան, «Հայկական խնդիրն և ազգային սահմանադրությունը Թուրքիայում (1860—1910)», Թիֆլիս, 1912, էջ 129—130)։

*Խորհուրդ տալով հայկական հատուկ պատվիրակություն ուղարկել Բեռլին՝ դիվանագետ Համիդն ուզում էր, առաջին հերթին, որ Արևելյան վիլայեթներում բնակչության մեծամասնությունը կազմող հայերն ու քրդերը ո՛չ միայն երբեք չբարեկամանային, այլ, ընդհակառակը, թշնամանային։*

*Հայկական պատվիրակություն ուղարկելով Բեռլին՝ Համիդն այնուհետև ուզում էր, որ հայկական վիլայեթներում բարեփոխությունների իրական վերահսկողությունը վերցվեր ռուսական զորքի ձեռքից և հանձնվեր Պոլսո դեսպանաժողովին, որը երբեք չէր կարող միակամ լինել և չեղավ։*

*Այսպիսով*, Բեռլին մեկնող հայկական պատվիրակությունը փաստորեն պետք է ջուր լցներ սուլթանի ջրաղացին:

*Պատմությունն ասում է, որ հավասարակշռված պատրիարք Ներսես Վարժապետյանը սկզբում տրամադիր չէր հետևելու միդհաթականների ու Համիդի խորհրդին (փաստաթղթերի մեջ ասենք, որ վարչապետ Միդհաթ փաշան անձամբ էր շնորհ արել ժամանել հայոց պատրիարքարանը և այնտեղ «մտերմորեն» զրուցել հայոց պատրիարքի հետ, իսկ Համիդն իր մոտ էր հրավիրել հայոց պատրիարքին, որպես հավասարի նստեցրել իր դիմաց և Օսմանիե առաջին աստիճանի շքանշան կախել նրա վզից ու կոկորդիլոսի արցունք թափել «հավատարիմ հպատակ» հայ ժողովրդի «տառապանաց» վրա), սակայն Վարժապետյանին հավասարակշռությունից հանում է այն ժամանակ դեռևս չհավասարակշռված ռոմանտիկ գավառացի Մկրտիչ Խրիմյանը, որը Մաթեոս Իզմիրլյանի հետ միասին եպիսկոպոսական օպոզիցիա է սարքում քաղաքագետ պատրիարքի դեմ։*

*Ներսես Վարժապետյանը տեղի է տալիս, որովհետև նաև «Թուրք կառավարությունը համարյա թե ճնշում էր գործ դրել Ներսեսի վրա, որ սա եվրոպական տերությունների դիմի և բողոքի սլավ ցեղերի համար առանձնաշնորհյալ կացություն ստեղծելուն դեմ և նույնպիսի կացություն պահանջի նաև հայերու համար» (նույն տեղը, էջ 266)։ Եվ պատրիարք Ներսես Վարժապետյանը, որն, անտարակույս, քաղաքագետ մարդ էր, հարկադրված այսպիսի վարդագույն հայտարարություն է անում Ազգային երեսփոխանական ժողովում. «Հայոց խնդիրը իր արժանավոր կերպովը ներկայացած է թե Բարձր Դռան և թե եվրոպական տերությանց։ Բ. Դուռն (այսինքն՝ օսմանյան կառավարությունը,— Հ. Թ.) իր պաշտպանությունը խոստացավ, եվրոպական տերությունք ամենքն ալ իրենց համակրությունը հայտնեցին։ Եվ ամենեն ալ խոսք առած եմ, որ դեսպանաժողովին (Բեռլինի կոնգրեսին,— Հ. Թ.) մեջ նկատառության պիտի առնվի մեր ազգին վիճակն ալ. հասարակաց կարծիքն ալ այսօր եվրոպայի մեջ ոչ ևս անտարբեր է մեզի համար» (նույն տեղը, էջ 399)։*

*Այսպիսով կազմվում է Հայկական պատվիրակություն. Համիդը սիրով հեռագրական հատուկ ծածկագիր է տրամադրում նրան՝ եվրոպական մայրաքաղաքներից պատրիարքի հետ անմիջական կապ ունենալու համար, իր եվրոպական դեսպանությունների ու իր պատվիրակության հայ խորհրդականներին ու թարգմանիչներին կարգադրում է սպասարկել այլ լեզուներ չիմացող հայ պատվիրակներին։ Պատվիրակության երկրորդ անդամը՝ «ռուսասեր» Խորեն Նարպեյը Բեռլին է մեկնում Սանկ-Պետերբուրգի վրայով, պատվիրակության առաջին անդամ «անգլիասեր» Մկրտիչ Խրիմյանը Բեռլին պիտի հասներ Հռոմի, Փարիզի և ապա Լոնդոնի վրայով։ Ի պատիվ Խրիմյանի պետք է ասել, որ առաջին անգամ Եվրոպա ոտք դրած և առաջին անգամ դիվանագետների հետ շփվող գավառացի ռոմանտիկն անմիջապես, դեռ Բեռլին չհասած, Փարիզից պատրիարքին հեռագրում է իր փոխարեն Բեռլին ուղարկել մի քաղաքագետ մարդու՝ Նուբար փաշային։*

*Չելեբիական-ամիրայական կապիտալից սերած կամ նրա հետ սերտաճած պոլսահայ կոմպրադորական բուրժուազիան, որի օրիենտացիան թուրքական էր, ռոմանտիկ գավառացի Մկրտիչ Խրիմյանի բարձրացրած տագնապի վրա, հավանաբար նաև վախենալով «ռուսասեր» Խորեն Նարպեյից, մետասաներորդ ժամին շտապ Բեռլին է ուղարկում Խրիմյանի վաղեմի հակառակորդ և ժամանակին նրան պատրիարքական աթոռից ցած իջեցրած «լեզվագետ» Ստեփան Փափազյանին։ Բայց այդ ամենը միանգամայն ավելորդ էր։ Բեռլինի կոնգրեսն իր դռներն ամուր փակել էր հայկական պատվիրակության առաջ՝ նրան վերապահելով սոսկ միայն դռան տակից աղերսագիր-հուշագիր ներկայացնելու իրավունքը։*

*Բեռլինի կոնգրեսին մասնակցող բոլոր վեց պետություններից և ոչ մեկի համար հայկական հարց գոյություն չուներ։ Վեցից հնգին մտահոգում էր միայն մի բան՝ կասեցնել Հայկական բարձրավանդակի վրայով ռուսների առաջխաղացումը դեպի Միջերկրական ծով։ Օբյեկտիվությունը պահանջում է ասել, որ Բեռլինի կոնգրեսը լիովին բավարարեց դռան տակից մատուցված հայկական աղերսագիր-հուշագիրը, որը գրված էր Համիդի ցուցումով և համընկնում էր արևմտահայ կոմպրադորական բուրժուազիայի տեսակետին։ Սակայն այդ բավարարումը ոչ թե օգուտ, այլ վնաս պիտի բերեր և բերեց գավառի հայ ժողովրդին։ Ռուսաստանը Էրզրումից և Բայազեդից ետ տարավ իր զորքը։ Բեռլինի կոնգրեսը հեռացնելով ռուս զորքին՝ բարենորոգումների վերահսկողությունը հանձնեց Պոլսո դեսպանաժողովին, որը չէր կարող միակամ լինել և երբեք միակամ չեղավ,* այնինչ ռուսական զորքի ներկայությունը հայաբնակ վիլայեթներում բարենորոգումների իրագործման միակ ռեալ երաշխիքն էր:

*Բեռլինի կոնգրեսն իր որոշման մեջ հոլովելով քրդերի և խիստ փոքրաթիվ չերքեզների անունը՝ նպաստեց հայ-քրդական թշնամության խորացմանը և հավերժացրեց օսմանյան քաղաքական գերիշխանությունը հայկական բարձրավանդակի վրա։*



*Բեռլինում հավաքված եվրոպական մեծ պետությունների ներկայացուցիչները ո՛չ միայն հիմնովին շուռ տվին Սան-Ստեֆանոյի պայմանագրի՝ հայկական հարցին նվիրված հոդվածի բովանդակությունը,— այդ նրանց շահերն էին թելադրում այդպես վարվել,— այլև շուռ տվին անգամ նրա համարը՝*

16-րդ հոդվածը դարձնելով 61-րդ: Սա արդեն ծաղր էր: «Ուրիշներու ծաղրու նշավակ լինելն,— եզրակացնում է այդ առթիվ Հ. Պարոնյանը,—բարոյական մեծ կորուստ է» (հ. 5, էջ 29):

Իրատես Պարոնյանի համար առեղծվածային ոչինչ չկար այդ ժամանակ: Նա տեսնում էր, որ հայկական հարցը փաստորեն գոյություն չուներ, որ քննվում էր միմիայն Ռուսաստանին ազատ ծով դուրս գալու հնարավորություն տալու հարցը, որի շուրջը Ռուսաստանի դեմ միացած էին մնացած հինգ մեծ պետությունները Անգլիայից հետո:

«Գերմանիա գործին չզար եղեր,— գրում է Պարոնյանը,— որ Դարդանելի բանալին Ռուսիո ձեռքը անցնի և ուզածին պես բանա ու գոցե անոր դռները:

Աղեկ ա՛, ասոր դյուրին ճամփան կա, բանալին թող դարձյալ մեր ձեռքը մնա, և առաջ-ժան պես, ձեր ուզածին պես, բանանք, գոցենք, կամ ո՛չ բանանք, ոչ ալ գոցենք» (ն. 4, էջ 33):

Պարոնյանը տեսնում էր, որ Սան-Ստեֆանոն ավարտելով միայն ռուս-թուրքական պատերազմը, սկիզբ էր դնում մի նոր պատերազմի, որի մեջ Ռուսաստանի դեմ միանում էին արևմտյան հինգ պետությունները:

«Իմ կարծյոքս, հաշտության պայմաններուն վրա հաշտութենեն ետքը պիտի բանակցին, և այս բանակցությունը մեր կարծածեն ավելի երկար պիտի տևե...» (ն. 4, էջ 32):

Պարոնյանն այս խոսքերը գրել է Բեռլինի կոնգրեսից դեռևս չորս ամիս առաջ, 1878 թվ. փետրվարի 17-ին:

Եվրոպական դիվանագիտության օրակարգում դրված էր Սան-Ստեֆանոյի պայմանագրի վերանայման նոր վայրի ընտրության փափուկ հարցը: Այնքան, որքան հակառուսական միացյալ ճակատը գլխավորում էր Անգլիան, Ռուսաստանը պահանջում էր, որ «դեսպանախորհուրդը» գումարվի ոչ թե Լոնդոնում, այլ որևէ չեզոք երկրում:

«— Ո՛չ, Ռուսիան կառաջարկե եղեր,— գրում է Պարոնյանը,— գումարել այնպիսի երկրի մեջ, որ Արևելյան խնդիրեն բնավ շահ չունենա:

— Եվ չեն կրցած մինչև հիմա անանկ երկիր մը գտնել:

— Ո՛չ:

— Հայաստանի մեջ գումարեն թող,— իրատես մարդու դառն սարկազմով եզրակացնում է նա,— որ առայժմ բնավ շահ մը չունենալեն զատ բավական վնաս ալ տեսավ» (հ. 4, էջ 28):

Եվ ահա «Արևելյան խնդիրեն բնավ շահ» չտեսած և «բավական ալ վնաս» տեսած ու տեսնող հայ ժողովուրդը նախապես խաբված իր պատգամավորներին էր ուղարկում Բեռլին:

Պարոնյանին ծանոթ չէին իմպերիալիզմ, իմպերիալիստական քաղաքականություն և այլ այժմ հանրածանոթ տերմինները: Իմպերիալիզմն իր նորագույն իմաստով նոր էր երևան գալիս նրա օրոք: Երգիծաբանի ելակետը հրատակ իրատեսությունն էր՝ զերծ տիրացուական-վարժապետական ռոմանտիկայից, որ հաճախ մեր իսկ բարձրացրած և թանձրացրած մշուշով մշուշապատել էր ու դեռևս պիտի մշուշապատեր մեր ուղին: Նա քաջ գիտեր, որ «քրիստոնէաց խնամակալությունը» մեր հնարածն է, որ եվրոպական պետությունների համար կարևորը շահն է, վաճառահանման շուկաներ և հումքի աղբյուրներ նվաճելը: Թեև «Մենք՝ ներկա պատերազմը քրիստոնեից վիճակին բարելավության համար կարծելով, ինչպես որ դարձյալ այնպես կկարծենք, և Դարդանելին ալ քրիստոնյա ըլլալը մեր մտքեն անցած չըլլալով, աստնկ հարցումի մը բնավ չէինք սպասեր» (հ. 4, էջ 29): Բայց նա գիտեր, որ քրիստոնյաների պաշտպանությունը, քաղաքակրթության տարածումը և նման գեղեցիկ խոսքերը սոսկ վարագույր են մեծ պետությունների արյունոտ գործերը քողարկելու համար:



Պետություններն իրենց քաղաքականությունն ունեն և իրենց քաղաքականությունն անցկացնելու համար կանգ չեն առնում ոչ մի խոչընդոտի առաջ, ամբողջ ժողովուրդների բնաջնջման առաջ:

«— Քաղաքակա՞ն...— հարց է տալիս Պարոնյանը,— քաղաքական սա ունիմ, որ սա կռիվը լմննալեն վերջը դիվանագետներուն յուրաքանչյուրին մեյմեկ մենյան պիտի կառուցանեմ, ամենուն արձաններն այդ մենյաններուն մեջ պիտի կանգնեցնեմ, և գլուխս բացած, անոնց երկրպագություն պիտի ընեմ: Անոնք մեր գիտցած ու ճանչցած չաստվածներեն շատ վեր են: Աստվածները կենդանիներ կզոհեին, ասոնց մարդ կզոհենք ու հարյուր հազարներով կզոհենք: Ես անոնցմե վախցա: Մնաք բարով» (ն. 4, էջ 27—28):

Այս տողերը, որոնք գրված են Բեռլինի վեհաժողովից ամիսներ առաջ, 1878 թվականի փետրվարի 13-ին,— պատիվ են բերում Պարոնյանի իրատեսությանը: Բայց նա էլ, որպես հայ մտավորական, որպես ցրված հոտի, անպետական ժողովրդի զավակ, հակառակ իր պայծառ իրատեսությանը, չի կարողանում որոշ տուրք չտալ հայկական այն ինքնախաբեությանը, որի կլասիկ ձևավորումն այդ օրերին տվել էր Մարսիլիայի հայ գաղութը՝ գերմանական կայսրուհուն ուղարկած նամակում՝ «հայերուս մեջ խաբվելե չհոգնելու ամենակարովի առաքինությունը կա և կմնա»:

Բազմիցս խաբված և շարունակ խաբվող ժողովրդի արդեն ազգային դարձած այդ գծին տուրք տալով է միայն Պարոնյանը գրել այս տողերը.

«Հայկական խնդիրն յուր կարգին կսպասե, որ լուծվի: Նախ, Գարատաղի խնդիրն պիտի լուծվի, ետք Հունաստանի խնդիրն և վերջը Հայաստանինը:

...Վարժապետին մեկը տղու մը ձեռքը քերական մը տալով՝ կհրամայե անոր, որ այբ ըսե: Տղան այբ չըսեր... Երբ պատճառը կհարցվի տղուն՝ սա պատասխանը կտրվի, թե եթե այբն ըսեմ ետևեն բեն, գիմն, դան և մինչև և օ ֆ ըսել պիտի տաք ինծի...

Մեր կառավարությունն ալ չուզեր Գարատաղի խնդիրը լուծել, ուրեմն մյուսներն ալ լուծելու չստիպվի... բայց... վարժապետը ճաստատամտությամբ մինչև և օ ֆ ըսել տված է տղուն:

Եվ կլասրքնը, որ այդ վարժապետեն ավելի ճաստատամիտ է, ոչ թե միայն մինչև և օ ֆ-ն, այլ ընթերցարան իսկ պիտի կարդացնե բուրք կառավարության» (հատ. 4, էջ 108—109):

Պարոնյանի կողմից Գլադստոնի ճառերին այսպիսի հավատ ընծայելն իր բացատրությունն ունի: 16 թե 61, բայց և այնպես հայկական հարցը դիվանագիտության հարց էր դարձել և Բեռլինի վեհաժողովից փոխադրվել Պոլսո դեսպանաժողովը, իսկ Համիդն առայժմ հարկ էր համարում իրեն պահել ստվերի տակ՝ նորանոր դավեր նյութելու համար:

Բայց քաղաքական մանկամտության արգասիք պատրանքների մեղրամիսն անցավ:

Թուրքիայի հասարակական զարգացման ընդհանուր մակարդակը դեռևս արևմտահայերի ղեկավարներին հնարավորություն չէր ընձեռում դասակարգային պայքարի տեսանկյունից ըմբռնելու այն մեծ հուսախաբությունը, որ տիրել էր նրանց. սակայն նրանցից սակավաթիվ իրատեսները, այդ թվում ամենից առաջ Հ. Պարոնյանը պարզորոշ տեսնում էին, որ մեծ տերությունների հակոտնյա շահերի բարդ խաչաձևումը Հայկական բարձրավանդակում անհնարին էր դարձրել հայկական հարցի բարեհաջող լուծումը տիրող փոխհարաբերությունների պայմաններում:

Ամենից առաջ հարկավոր էր մերկացնել արևմտյան տերությունների շահամոլությունը, կեղծավորությունը, գիշատիչ բնությունը: Եվ Պարոնյանն իր սուր գրիչը գործի դրեց ինչպես արևմտյան տերությունների քաղաքականության մերկացնելու, այնպես էլ հայ ժողովրդին ինքնաճանաչողության մղելու համար:

Հին հայ ժողովրդին նա անվանում է մրջյուններ—աշխատասեր, բայց անզոր, իսկ արևմտյան մեծ տերություններին՝ փիղ ու եզ: Մրջյունները թեև շատ հին ժողովուրդ են, «առաջին գաղթականներուն հետ երևացած են երկրին վրա և իրենց գոյությունն պահած լինելով՝ իրավունք ունեն հզոր կենդանիներուն համակրությանը»: Բայց, «ամեն օր, ամեն տեղ, մանավանդ փողոցներուն մեջ ոտնակոխ կըլլան ոտից տակ»: Կամուրջ հանդիսացող իրենց բնօրրանում «առաթուր կոխվելով» նրանք իրենց «բողոքարկու» երկու պատգամավորներն են ուղարկել» «կենդանիներու ավագաժողովին»՝ Բեռլինի կոնգրեսին: Սակայն «մրջյուններու պատգամավորներուն» թույլ չի տրվում ներկա լինելու «կենդանիներու ավագաժողովին», նրանց միայն «արտոնություն կտրվի դոնեն դուրս նստիլ աթոռի մը վրա և վիճաբանության վրա իրենց դիտողություններն, եթե ունին, ներկայել դռնապանին»: Սակայն այս արհամարհական վերաբերմունքը չի զգաստացնում ո՛չ քաղաքական միամտությամբ օժտված «պարզամիտ» մրջյուններին, ո՛չ էլ նույն ցավով տառապող նրանց պատգամավորներին: Ընդհակառակը, նրանք այդ նվաստացումը դիտում են որպես «շնորհ», որն «ուրախություն, ցնծություն և բերկրություն» է պատճառում բոլոր մրջյուններին:

Թեև տխուր, բայց ճշմարիտ եզրակացության է հանգում Պարոնյանը նկարագրելով մրջյունների բողոքագրի քննարկումը: «Այն աննշան ազգերն, որ կցավին պատմության մեջ իրենց աննշան էջ մը տրված լինելուն վրա, համոզվելու են մի անգամ ընդմիշտ», որ «փղի պես ապրիլ փափագող մրջյունն՝ փղի ուժն ունենալու է» (հ. 5, էջ 26—29):

Սա իր ճշմարտացիության մեջ դառն, միակ ուսանելի եզրակացությունն էր, որ դժբախտաբար, անտես առնվեց հայ իրականության մեջ:

Բեռլինի կոնգրեսի գումարման օրերին, 1878 թվականի հունիսի 16-ին, նախապես վստահ լինելով, որ հայ պատվիրակները ոչ մի լավ բան չեն բերի «կենդանիներու այդ ավագաժողովեն», Պարոնյանն իր որոշումն է կայացնում. նա գրում է.

«Ես ալ իմ որոշումս տվի Հայաստանի նկատմամբ:
Իմ՛ճօրհնությունս տվի Հայաստանին:
Գնա ա՛ռ, եթե կարող ես» (հ. 4, էջ 53):

Հայկական հարցի դիվանագիտական սկզբնավորումը, որ դժբախտաբար «կատակերգության նյութ միայն կրնար ըլլալ», բարոյական տխուր պարտություն էր, որ չէր կարող չվերաճել քաղաքական պարտության և նորանոր աղետներ չբերել հայ ժողովրդին: Պարոնյանը նախատեսում էր այդ նորանոր աղետները: Իր նշանավոր «Ազգային ջոջերում» խոսելով Խորեն Նարպեյի մասին՝ Պարոնյանը թվարկում է այդ աղետները:

«1878-ին իբրև ազգային պատվիրակ, Խրիմյանի հետ Պերլինի ավագաժողովը ղրկվեցավ: Թեպետև չզիտցվեցավ, թե ինչու չկրցին ավագաժողովին ներկայանալ, սակայն շատերը պնդեցին, թե ազգը մեծ օգուտ քաղեց անոնց ուղևորութենեն, թե ձայն հանելու չէ, այդ օգուտին ինչ ըլլալը վերջեն պիտի հասկցվի: Ասոր համար է, որ շատերն իրենց բերանը բացած՝ գործերուն վերջը դիտելու կպատրաստվին: Եթե այս օգուտներուն երևակայականն մեկդի նետելով իրականին դառնանք, սա օգուտը կգտնենք, որ առաջ գավառներու մեջ եթե տարին հարյուր հոգի կսպաննվեին, այսօր հազար հոգի կսպաննվին, և այս ալ մեծ օգուտ է անշուշտ անոնց, որք բազմութենեն չեն ախորժեր»:

Բեռլինի կոնգրեսը միանգամայն պարզ ու որոշակի ցույց տվեց, որ



իմպերիալիստական տերություններից և ոչ մեկը շահագրգռված չէ հայկական հարցի բարեհաջող լուծմամբ:

Բեռլինի կոնգրեսի ժամանակաշրջանում Համիդը, շատ շուտ հաշվելով արևմտյան տերությունների ատամները, անմիջապես ցույց տվեց իր ժանիքները՝ վարելով մի քաղաքականություն, որը պատմության մեջ մտել է «զուլում» անունով: Ջենամուխ լինելով զուլումի քաղաքականության, Համիդն առաջին հարվածն ուղղել էր սաղմնավորվող թուրք ազգային բուրժուազիայի առաջին գաղափարախոսների դեմ: Նրանց հետ հաշիվը փակելուց հետո միայն Համիդն սկսեց ծավալել իր հայահալած քաղաքականությունը, պատմականորեն ասելով, որ ի ծնե թույլ թուրք ազգային բուրժուազիան կարիք ունի ոչ թե ինչ-որ ապակենտրոնականությունից ճառող թուրք գաղափարախոսների սահմանադրության, այլ հունքյար (արնախում) ֆաթիհների արյունոտ տրադիցիայի հավատարիմ մնացող սուլթանի դայակության:

Օսմանյան թվականներից, երբ հայ ազատագրական շարժումը դեռևս չէր թևակոխել իր կազմավորման շրջանը, արդեն մշակված էր համատարած կոտորածով հայկական հարցը լուծելու դժոխային ծրագիրը: Թուրք թույլ ազգային բուրժուազիան ուրիշ կերպ չէր կարող իր ձեռքը վերցնել իր իսկ երկրի տնտեսական լծակները:

Այս դժոխային ծրագիրը գաղտնիք չէր հայ հասարակական գործիչների համար: Եթե մոռացության տրվեին մամուլում երևացած առանձին ահազանգումները, ապա առօրյա կյանքն ամեն օր այդ էր ապացուցում: Մանավանդ Բեռլինից հետո դժվար չէր տեսնել, թե ո՞ւր է գնում Թուրքիան և թե որքա՞ն անել վիճակ է ստեղծված արևմտահայության համար: Եվ հայ հասարակական գործիչներից առավել իրատեսները միակ փրկությունը տեսնում էին հայքրդական դժվարին բարեկամությունը դարբնելու մեջ:

Պարոնյանը տեսնում էր, որ «շատերը» բերանը «առ ժամս» փակելու փոխարեն շարունակ «իրենց բերանը բացած» խենթերի պատմություն են դարձրել հայոց պատմությունը: Գաղտնիք չէ, որ Համիդի օրոք ազգային սահմանադրությունը աչքակապության նման մի բան էր, նպատակ ունենալով ինչպես խաբել արևմուտքի հասարակական կարծիքը, այնպես էլ սնել այն քաղաքական միամտությունը, որից զերծ չեն անպետական ժողովուրդները:

Նիկողայոս Ադոնցը, անդրադառնալով առաջին համաշխարհային պատերազմի տարիներին հայ ժողովրդի ծանր կորուստներին, գրել է.

«...Ավանդություն չենք սիրում, հայրերի խրատը հարգ չունի որդիների աչքում: Ամեն սերունդ իջնում է գործունեության ասպարեզ առաքելական հավակնությամբ, վստահ, որ մութ երկնակամարում նոր աստղեր է գտնելու և անոնց հորիզոններում նոր դռներ բանալու...

Ապրած սարսուները—եզրակացրել է նա,— մնում են անկշիռ և հին սայթաքումները կրկնվում են ավելի ծանր հետևանքներով»:

Այստեղ պետք է որոնել հայ իրատես գրական ու հասարակական գործիչների մեջ ամենից ավելի իրատեսի ողբերգությունը: 80-ական թվականների սկզբից արդեն պարզ էր 78-ի վրիպումը, էլ չասենք այն, որ Պարոնյանի նման ճշմարիտ իրատեսների համար ամեն ինչ պարզ էր դեռ 78-ին և նրանից էլ առաջ: Հույսն ու հավատը շատ լավ բաներ են: Ընդհանուր խանդավառության պայմաններում հույս ու հավատ տածելն իր բացատրությունն ունի գողգոթա-

ների ճանապարհների վրա միշտ խաչված հայ ժողովրդի և նրա ոչ միայն սոսկ «խիզախ, անմիտ պատանի»-ների համար. սակայն, ինչպես նկատեցինք, Պարոնյանը Ադոնցից դեռ հինգ տասնամյակ առաջ էր ասել, թե այն, ինչ ներելի էր 78-ից առաջ, ներելի չէր 78-ից հետո։

Կրկնում ենք, հայ ժողովրդի այս անել և անհեռանկար վիճակի մեջ պետք է որոնել Պարոնյանի ողբերգության հիմնական պատճառը։ Ես չգիտեմ անցյալի որևէ հայ գրող, որը միայն գրական աշխատանքով կարողանար կուշտ կյանք ապահովել իր և իր ընտանիքի համար։ Նրանք ապրում էին մեկենասների օգնությամբ կամ թե որևէ այլ կողմնակի աշխատանքով։ Պարոնյանի համար, իր թշնամացնող գրչով, մեծ հասարակությունների մեջ անգամ դժվար կլիներ իր ապրուստը հայթայթել զուտ գրական վաստակով։ Սակայն ավանդական լեգենդա է նրան ներկայացնել որպես ծայրահեղ աղքատության դատապարտված։ Ճիշտ է, հիվանդության զարգացման շրջանում, այսինքն՝ նրա կյանքի վերջին ամիսներին նրա նյութական վիճակն աննախանձելի էր։ Սակայն, ինչպես ասացինք, իր կյանքի վերջին տասնամյակում նա արդեն ազգային ջոջ էր դարձել, իր ծննդավայրը նրան ընտրել էր պատրիարքարանում ամեն ուրբաթ իր նիստերը գումարող ազգային երեսփոխանական ժողովի անդամ, իսկ մինչ այդ պատրիարքարանը կայուն ռոճիկով նրան դարձրել էր իր մշտական աշխատակիցը, նա պաշտոնավարում էր առևտրական հիմնարկում և դասավանդում էր ժամանակի ամենահայտնի դպրոցում։ Այդ շրջանում նա նույնիսկ մտածում էր Պոլսում սեփական տուն գնելու մասին, սակայն հայ ժողովրդի անհեռանկար և անել վիճակը նրան ստիպում էր շարունակ լուռ մնալ երեսփոխանական ժողովում, բայց օղու շշի առաջ բացվել արհեստավորական խավի գինետներում։

Հլատակ փոքր ժողովուրդների կյանքում ժամանակաշրջաններ կան, երբ հարկավոր է գլուխ պահել։

Այդպես չվարվեցին մեր «խիզախ, անմիտ» պատանիները։ Դաշնակցությունն այսօր իր պատմությունն ու նախապատմությունն է գրում և կեղծում է պատմությունը, Վարժապետյանին, Խրիմյանին, Րաֆֆուն և շատ ուրիշների հայտարարելով իրենց բարձրացրած շարժման նախակարապետներ։ Պատմությունը հակառակն է ասում։ Խրիմյանը՝ ոչ ուշ քան 1882 թվականը,— իր աշակերտ Սրվանձտյանի հետ հայ-քրդական համերաշխության ջատագով էր դարձել։ Ներսես Վարժապետյանը դեռ Խրիմյանից առաջ էր հանգել այդ նույն տեսակետին։

Րաֆֆին հանդիսանալով հայ ազատագրական շարժման ռահվիրան՝ հայ ժողովրդի միակ հնարավոր դաշնակիցը համարում էր քրդերին։ Հայ ազատագրական շարժումն իր սկզբնավորման առաջին իսկ օրից կտրուկ կերպով պիտի հրաժարվեր «խիզախ, անմիտ» ելույթներով արևմտյան պետությունների ուշադրությունը հայկական հարցի վրա հրավիրելու, նրանց «միջամտությունը իբրև թե «հասունացնելու» կործանարար կուրսից և շեշտը միայն ու միայն պետք է դներ հայ-քրդական դժվարին բարեկամությունը ամեն գնով կռելու և կոփելու, այլ ոչ թե ինչ-որ խանասորներ կազմակերպելու և նման անխոհեմ քայլերով երկու հարևան ժողովուրդների միջև թշնամությունը բորբոքելու վրա՝ կատարյալ մենակության դատապարտելով հայ ժողովրդին։

Բանն այն է, որ դաշնակցությունը չընթացավ այս միակ ճիշտ ուղիով, որ պատմությունը մատնացույց էր արել նրան, որ ամեն օր նրան հիշեցնում էին



տաղանդավոր հայ ժողովրդի աջ ու ձախ հոսանքներին պատկանող առանձին ողջախոհ զավակներ։

Դաշնակցության հիմնադիրներից ու տեսաբաններից առաջինը, իբրև թե ամբոխային տրամաբանության դեմ ուղղված իր դիվային տրամաբանությամբ, պատգամեց.

«Հեղափոխական գործնական ընթացքը քննադատելիս պետք է իսկապես հեղափոխական ճանաչված ձեռնարկները գնահատվեն կոտորածներից դուրս» (Քր. Միքայելյան, «Ամբոխային տրամաբանություն, էջ 52)։

Պարոնյանը իր կյանքի վերջին տասնամյակում արդեն տեսնում էր, որ ութսունական թվականներին սկսում էին երևան գալ այս դիվային տրամաբանության անվերապահ ունկնդիրները, որոնք շուտով հիմարանոցի պատմության մեկ բաժին պիտի դարձնեին հայոց պատմությունը։ Դա սարսափեցնում էր սակավաթիվ իրատեսների և հեռատեսների մեջ՝ ամենից ավելի իրատեսին ու հեռատեսին: Այստեղ պետք է որոնել նրա անզոր լռության ողբերգությունը:

Բայց «ավանդություն» չսիրողների գաղափարախոսը հակառակ ամեն մի տրամաբանության և հակառակ պատմության բոլոր դառն դասերին պիտի շարունակեր բարբառել։

«Բայց մենք ունեցանք և մի ուրիշ նպաստավոր հանգամանք,— կարդում ենք առողջ տրամաբանության դեմ ամբոխային տրամաբանությամբ տոգորված այդ հավակնոտ գրքույկում,— որը վերջապես պիտի որոշեր, արագացներ հայության ելքը այդ տատանման շրջանից։ Այդպիսի մի հանգամանք եղավ Բեռլինի դաշնագիրը իր 61-րդ հոդվածով... Այդ հոդվածով հայությունը իրեն արդեն դաշնակից է տեսնում եվրոպական ամբողջ վեց պետությունների («Ամբոխային տրամադրություն», էջ 37)։

«Ի՞նչ էր ուրեմն մեր շարժման նպատակը,— հարց է տալիս իրեն Քր. Միքայելյանը ու պատասխանում,— ուրիշ ոչինչ, եթե ոչ կազմակերպված ու բռնի ուժով կռվել, բողոքել Տաճկաստանում տիրող սպանիչ կարգերի դեմ, մինչև որ վեց պետությունների երաշխավորված միջամտությամբ այդ կարգերը դեպի լավը կփոխվեն» (նույն տեղը, էջ 42)։

Ինչպես Ադոնցն էր ասել,— (որ իրենց իսկ ամսագրում են զետեղել— Հայրենիք, 1928, հունիս),— «Հայրերի խրատը հարգ չունի որդիների աչքում։ Ամեն սերունդ իջնում է գործունեության ասպարեզ առաքելական հավակնությամբ»։

Դաշնակցականներին ընդունված է վարժապետներ անվանել։ Վարժապետները, լավ թե վատ, որևէ դասընթաց ավարտած մարդիկ են։ Տաղանդավոր իրատեսները պատմությունից ինչպիսի դաս էլ որ առած և ավանդած լինեին նրանց, պատմությունն իր ընթացքով ամեն օր և ամեն ժամ, որքան էլ հաստատեր իրատեսների ավանդած դասի ճշտությունը, միևնույն է, վարժապետը վարժապետ է, նա չի կարող իր կոչման բարձրությունից իջնել և ինչ-որ նոր դաս առնել. նա կարող է միայն դաս տալ՝ եթե ունկնդիրներ ճարվեն։

Վարժապետների վարժապետին չվիճակվեց երկար ապրել։ Սակայն նրա աշակերտները Բանկ Օթոմանից մինչև Կարսի երկրորդ անկումը ամենևին չտեսան իրենց ավետարանի խոստացած առատավոր հանգամանքը, երբեք դաշնակից չտեսան եվրոպական ո՛չ վեց և ոչ էլ գոնե մեկ պետություն, իսկ պաշ-

տոնապես դաշնակից անունով 1919—1920 թթ. իրենց մոտ եկածների մասին
Պարոնյանի խոսքերով ասենք՝ բարով-խերով չգային։
1926—1928 թվականներին, երբ քաղաքական ոչ մի գերիմաստություն
այլևս չէր կարող ցավին որևէ դարման անել,— որովհետև այլևս հայ չէր
մնացել Արևմտահայաստանում,— դաշնակցության տեսաբան ու պատմաբան
դարձած Կ. Սասունին, ի տես քրդական ծավալուն ապստամբության, որն
ուղղված էր միևնույն ռեակցիոն ուժի դեմ, գլխին վայ տալով գրում է.
«Թուրքական կառավարությունն ուղղակի և անուղղակի թելադրանքներ
ըրավ Հայոց պատրիարքարանին, թե ծուռ աչքով չպիտի նայի հայերուն, եթե
պատգամավորություն մը ղրկեն Բեռլինի վեհաժողովին՝ բարենորգումներու
և ապահովության հարցը արծարծելու ընդդեմ քյուրտերուն...
Բեռլինի դաշնագրությունը կուգար, ուրեմն, ավելի լայնցնելու հայերու և
քրդերու ներքին խրամատը, որմե օգտվողը կըլլար Թուրքիան, նյութելով այդ
երկու ազգերուն բնաջնջումը» (Կ. Սասունի, «Քյուրտերու և հայերու ազատա-
գրական շարժումներու փուլերը և անոնց փոխհարաբերությունները», Հայրե-
նիք, 1930, № 5, էջ 142)։ Այս նույն բանն է ասում նաև հետին թվով գերի-
մաստնացած Ս. Վրացյանը (տե՛ս, Հուշապատում, էջ 56)։
Առածն ասում է լավ է ուշ՝ քան երբեք։ Բայց այս առածն այս դեպքում
գործադրելի չէ, որովհետև անկեղծությունը չէ, որ սասունիներին և վրացյան-
ներին հարկադրել է կատարելու այս ինքնամերկացումը։ Եթե նրանք առաջ-
նորդված լինեին օբյեկտիվ անկեղծությամբ, ապա այբ-ն ասելուց հետո բեն-ն
էլ կասեին և կասեին, որ սուտ է եղել իրենց ուսուցչի «ուսմունքը», որին զոհ
բերին մի ամբողջ ժողովուրդ։ Կասեին, որ ոչ ոք իրավունք չէր տվել նրանց
Միխայլովսկու և Լավրովի սուբյեկտիվ ապուրաջրով սնուցել հայկական ծայ-
րավալականությունը, որն ահավոր ցավեր պատճառեց հայ ժողովրդին, մի ժո-
ղովուրդ, որին նրանք սիրում էին դիտել «Ամբոխային տրամաբանության»՝
որևէ տրամաբանությունից զուրկ տիրացուի աշտարակից։
Եվ եթե այսօր դաշնակցության զառամյալ պարագլուխներից ոմանք Սո-
վետական Հայաստանի վիթխարի նվաճումներից փոքր-ինչ ակնածելով, «ինք-
նաքննադատական» քրթմնջոցներ են հանում, ապա դա միայն նրա համար,
որպեսզի արդարացնեն արևմտյան իմպերիալիզմին համհարզելու իրենց գար-
շելի պրակտիկան։ Գործակցելով իմպերիալիզմի հետ, դաշնակցությունն ակա-
մա ցույց տվեց, որ «տիեզերական թութակ»-ների փիլիսոփայությունը նրան
վերջնականորեն նետեց իմպերիալիզմի հայադավ բանակը։ Ահա թե ինչու
մենք իրավունք ունենք նրա քաղաքական և բարոյական խորտակման չարա-
բաստիկ սերմերը որոնել «հայկական հարցի» պղտոր ակունքներում։



## ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

Պարտիական կազմակերպական աշխատանքի ծավալման կարևոր պայմաններից մեկը սկզբնական պարտիական կազմակերպության ղեկավարության մակարդակի բարձրացումն է։

Այս առիթով ցանկանում ենք պատմել Հոկտեմբերյանի շրջանի Նալբանդյան գյուղի կոլտնտեսության պարտկազմակերպության աշխատանքի փորձի մասին։

Նալբանդյան գյուղի կոլտնտեսությունը այն խոշոր տնտեսություններից մեկն է, որն իր արտադրանքով Հոկտեմբերյանի շրջանի էկոնոմիկայում մեծ տեսակարար կշիռ ունի։ Կոլտնտեսության ընդհանուր հողային տարածությունը հասնում է 2000 հեկտարի, որի կեսից ավելին վարելահողեր են։ Այստեղ կա 217 հեկտար խաղողի և պտղատու այգի։ Կան խոշոր կաթնաապրանքային, ոչխարաբուծական, խոզաբուծական, ինչպես նաև թռչնաբուծական ֆերմաներ։ Կոլտնտեսության մեքենատրակտորային պարկը ապահովված է գյուղատնտեսական տեխնիկայով։

Սակայն մինչև վերջին տարիներս կոլտնտեսության մեջ եղած նյութատեխնիկական բազան ինտենսիվ չէր օգտագործվում, տնտեսությունն աշխատում էր իր հնարավորություններից ցածր և փաստորեն ոչ շահութաբեր։ Ցածր էր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասունների մթերատվությունը, բարձր էր արտադրված մթերքների ինքնարժեքը։ Կոլտնտեսությունը շատ գծերով արտադրական պլանները չէր կատարում և այլն։

Այժմ խիստ փոխվել է Նալբանդյան գյուղի կոլտնտեսության պատկերը. եկամուտներն զգալիորեն ավելացել են, տնտեսապես կոլտնտեսությունը մեծ չափով հզորացել է։ Կոլտնտեսության դրամական եկամուտները 1963 թվականին կազմում էին 991.500 ռուբլի, 340.000 ռուբլով այդ ավելի է 1960 թվականի եկամուտներից։ Վերջին տարիներս կոլտնտեսության մեջ խոշոր առաջընթաց է նկատվում. ավելացել է անասնապահական մթերքների և բուսաբուծության մթերքների արտադրությունը, հատկապես հացաբույսերի, բոստանա-բանջարանոցային կուլտուրաների, խորդենու, կաթի և ձվի արտադրությունը։ Այս ամենի շնորհիվ կոլտնտեսությունն իր սոցիալիստական պարտավորությունները հաջողությամբ է կատարում։ Այսպես՝ 1964 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, պետությանն ավելի է վաճառվել 888 ցենտներ հաց, 4789 ցենտներ խորդենի, 7512 ցենտներ բանջարեղեն, 13060 ցենտներ բոստանային կուլտուրաներ, 48 հազար հատ ձու, 503 ցենտներ կաթ և գյուղատնտեսական այլ մթերքներ։

Վերջին տարիներս ձեռք բերված հաջողությունները գլխավորապես ար-
դյունք են այն բանի, որ կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը
(քարտուղար ընկ. Թադևոս Խոսրովի Մկրտչյան) հմտորեն, բանիմաց ձևով է
ղեկավարում տնտեսությունը, խորապես ու բազմակողմանիորեն թափանցում
է կոլտնտեսության էկոնոմիկայի մեջ, երևան հանում ներքին ռեզերվները,
ձգտում ավելի բարձրացնել հողագործության ու անասնաբուծության կուլտու-
րան, կազմակերպում պայքարը աշխատանքային կարգապահության ամրա-
պնդման և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար:

Բնական հարստությունների և արտադրողական ուժերի ինտենսիվ ու խե-
լամիտ օգտագործումը տնտեսության գլխավոր խնդիրն է: Սրա մասին անցյա-
լում Նալբանդյան գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպությու-
նում շատ էր խոսվում, բայց կոնկրետ արդյունքի չէին հասնում: Դրա հիմնա-
կան պատճառն այն էր, որ կոմունիստները լիովին չէին ապահովում իրենց
առաջավոր դերը արտադրության մեջ, նրանց խոսքն ու գործը չէին համապա-
տասխանում իրար:

Անհրաժեշտ եղավ Թարմացնել պարտիական կազմակերպության ղեկա-
վարությունը, որն ավելի մտահոգվեց կոմունիստների դաստիարակության,
պարտիական և աշխատանքային կարգապահության բարձրացման, արտել-
առջև դրված տնտեսական խնդիրների լուծման հարցերով: Պարտիական կազ-
մակերպությունը կոնկրետ միջոցառումներ մշակեց և բոլոր կոմունիստների
ու ամբողջ կոլեկտիվի ուշադրությունը հրավիրեց այդ միջոցառումների կենսա-
գործման վրա: Դրա համար առաջին հերթին արտադրության մեջ վերադա-
սավորվեցին կոմունիստների և կոմերիտականների ուժերը: Կոմունիստներն
ապահովելով իրենց ավանգարդային դերը, բոլոր ջանքերը գործադրեցին առաջ
մղելու տնտեսությունը: Արդեն կոլտնտեսության պարտկազմակերպության
կատարած աշխատանքների արդյունքներն ակնհայտ են: Այսպես, խաղողի
այգիների խտությունն անցյալում միջին հաշվով կազմում էր հեկտարին
1100 վազից ոչ ավելի, մինչդեռ նորման՝ 1800—2000 վազ է: Հասկանալի է,
որ այգիների այսպիսի նոսրության պայմաններում խաղողի բարձր բերք ստա-
նալու մասին խոսք անգամ լինել չէր կարող: Բայց ահա արդեն երկրորդ տա-
րին է, ինչ կոլտնտեսությունը այգիների մասսայական նորոգում է կատարել
և տնկել է ավելի քան 20 հազար վազ:

Բանջարաբուծությունն ու բոստանաբուծությունը շատ աշխատատար, բայց
և բացառիկ եկամտաբեր ճյուղեր են, մանավանդ Արարատյան դաշտի պայ-
մաններում: Առաջներում Նալբանդյան գյուղի կոլտնտեսությունում պատշաճ
ուշադրություն չէր նվիրվում այս կուլտուրաների մշակությանը: Այսպես՝ 1960
թվականին բանջարաբոստանային կուլտուրաների ընդհանուր ցանքատարա-
ծությունը կազմում էր ընդամենը 48 հեկտար, իսկ անցյալ տնտեսական տա-
րում այն հասցվել է 126-ի: Դեռ ավելին. կոլտնտեսության պարտիական կազ-
մակերպությունը և վարչությունը բացառիկ կարևոր նշանակություն են տալիս
արտադրության աշխատատար պրոցեսների, մանավանդ բանջարաբուծության
ու բոստանաբուծության մեքենայացմանը: Այժմ համարյա բոլոր բանջարա-
բոստանային կուլտուրաների ցանքը և միջշարային մշակության աշխատանք-
ները կատարվում են մեքենայով, իսկ այդ զգալի չափով բանվորական ուժ է
տնտեսում, կրճատում է մեկ միավոր արտադրանքի համար կատարվող տնտե-



սական ծախսերը և իջեցնում արտադրանքի ինքնարժեքը: Այսպես, օրինակ,
եթե մեկ ցենտներ բանջարեղենի ինքնարժեքը 1960 թվականին կազմում էր
10 ռ. 20 կոպեկ, ապա 1963 թվականին այն իջեցվել է մինչև 3 ռ. 90 կոպեկի,
բոստանային կուլտուրաներինը, համապատասխանաբար՝ 3ռ. 30 կոպեկից
2 ռ. 10 կոպեկի և այլն:

Հատուկ ուշադրության է արժանի կոլտնտեսության պարտիական կազմա-
կերպության և վարչության գործունեությունը արտադրության մեջ ագրոզո-
տեխնիկական կանոնների պահպանման ուղղությամբ: Օրինակ, հողին հան-
քային ու տեղական պարարտանյութեր տալը միշտ էլ նախատեսվել է կոլ-
տնտեսության արտադրական պլաններում: Սակայն այդ աշխատանքը կատար-
վել է պրիմիտիվ եղանակով և առանց հաշվի առնելու հողի պահանջը: Կոլ-
տնտեսության պարտիական կազմակերպությունը, առաջնորդվելով ՍՄԿՊ
Կենտկոմի դեկտեմբերյան (1963 թ.) և փետրվարյան (1964 թ.) պլենումի
որոշումներով, միջոցառումներ մշակեց, և այդ զգալի չափով նպաստեց տնտե-
սությունն առանձին պահանջներին համապատասխան վարելու գործին: Այժմ
կոլտնտեսությունն ունի իր ագրոքիմիական քարտեզը: Դաշտերի պարարտա-
ցումը կատարվում է բացառապես գիտական հիմունքներով, ըստ այդ քար-
տեզի: Ընդ որում հաշվի են առնվում ամեն մի հողակտորի պահանջը, գյուղա-
տնտեսական կուլտուրաների ու հանքային պարարտանյութերի տեսակը, պահ-
պանվում են հողային պարարտանյութեր տալու կարգն ու ժամկետները:

Պարտիական կազմակերպությունն իր մշտական վերահսկողության ներքո
է պահում արտադրության վճռական տեղամասերը, ուսումնասիրում և տա-
րածում է աշխատանքի լավագույն փորձը, գիտության ու տեխնիկայի նվաճումները,
թյունները, առաջավոր կոլտնտեսությունների ու սովետական տնտեսություն-
ների նվաճումները: Խրախուսվում են այն աշխատողները, ովքեր նորի, առա-
ջադիմականի նախաձեռնողն ու պաշտպանն են:

Արարատյան դաշտի պայմաններում, որտեղ ընդարձակ արոտավայրեր
չկան, մեծ նշանակություն ունի կթու կովերին կանաչ կերով ապահովելը՝ մինչև
նրանց սար տանելը: Այդ նպատակով պարտիական կազմակերպության և վար-
չության նախաձեռնությամբ վերջին երկու տարիներս կոլտնտեսությունը 5
հեկտար տարածության վրա շաբդար կերաբույս է ցանում: Այդ բարձր բեր-
քատու բույսը, լավ խնամքի դեպքում, հեկտարից 7—8 հազար ցենտներ խոտ
է տալիս. այն վաղահաս է, բերքը հավաքվում է մայիս ամսին և հնարավոր է
լինում նույն հողամասում, կերի բերքը հավաքելուց հետո, բանջարեղեն մշա-
կել և տարվա մեջ երկրորդ բերքն ստանալ:

Նալբանդյան գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպությու-
նում ամբողջ ներպարտիական աշխատանքը պլանավորվում է օրվա պահանջ-
ներին համապատասխան: Խստորեն պահպանվում են պարտիական ժողովներ
գումարելու ժամկետները, ապահովվում է կոմունիստների ակտիվ մասնակ-
ցությունը կարևորագույն հարցերի քննարկմանն ու լուծմանը: Ընդունվում են
կոնկրետ ու գործնական որոշումներ:

Այստեղ միշտ գործարար աշխատանք է տարվում մասսաների շրջանում:
Ամբողջ ներպարտիական աշխատանքի կենտրոնում մարդն է: Պարտիական
կազմակերպությունն ամուր և հաստատորեն հենվում է ամբողջ կոլեկտիվի
վրա, ճանաչում յուրաքանչյուր կոլտնտեսականին, գիտե նրա թույլ և ուժեղ
կողմերը, հետաքրքրվում է ո՛չ միայն այն բանով, թե ինչպես է աշխատում

նա արտադրության մեջ, այլև նրանով, թե ինչպես է դրսևորում իրեն հասարակական կյանքում, ինչ է կարդում և ինչով է հետաքրքրվում։

Աշխատավորների հետ տարվող քաղաքական մասսայական աշխատանքով գլխավորապես զբաղվում է պարտկազմակերպության ագիտկոլեկտիվը, ուր ընդգրկված են գյուղի 24 պատրաստված ու հեղինակություն վայելող մարդիկ, որոնք աշխատում են դպրոցի դիրեկտոր ընկ. Միսակ Գրիգորյանի ղեկավարությամբ։

Քաղաքական ու մասսայական-բացատրական աշխատանքի հիմնական թեմաներն են՝ ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, պարտիայի Կենտկոմի որոշումները, ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում կոմունիստական պարտիայի և սովետական պետության գլխավոր գծի էությունն ու բովանդակությունը։

Հաճախ ագիտատորների զրույցները նվիրվում են սոցպայմանագրով ստանձնած պարտավորությունների կատարման արդյունքներին, գյուղատնտեսական արտադրության առաջավոր մարդկանց փորձին, ինչպես նաև կուլտուր-կենցաղային հարցերին։ Ագիտատորներ ընկ. ընկ. Միհրան Գինոսյանը, Ժորա Անդրեասյանը, Հակոբ Հակոբյանը և ուրիշներ վայելում են իրենց ունկնդիրների մեծ հարգանքը։

Պարտիական կազմակերպությունը մեծ ուշադրություն է նվիրում կոմունիստների քաղաքական լուսավորության հարցերին։ Ընթացիկ ուսումնական տարում պարտիական լուսավորության ցանցում, երբ քաղխմբակներում ընդգրկված են 80 մարդ. պարապմունքներն ընթանում են կազմակերպված և գաղափարական բարձր մակարդակով։ Այստեղ կոմունիստների կողմից մարքս-լենինյան տեսության ուսումնասիրությունը սերտորեն կապվում է կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ։

Կադրերի ընտրությունը, տեղաբաշխումն ու դաստիարակությունը ներպարտիական աշխատանքի կարևորագույն բնագավառն են։ Որքան ավելի ճիշտ են ընտրվում կադրերը և որքան եռանդով են գործում նրանք, այնքան ավելի բեղմնավոր է լինում արդյունքը։

Այդ է պատճառը, որ պարտիական կազմակերպությունը բացառիկ կարևոր նշանակություն է տալիս կադրերի հետ կատարվող աշխատանքին, հոգում նրանց ճիշտ տեղաբաշխման, կոլտնտեսային ղեկավար կադրերի խելամիտ օգտագործման մասին և սիստեմատիկ ու ջանադիր աշխատանք է կատարում նրանց քաղաքական ու տնտեսական գիտելիքները հարստացնելու ուղղությամբ։

Կոլտնտեսության վարչության նախագահ ընկ. Վազգեն Եփրեմյանը գյուղատնտեսական բարձրագույն կրթություն ունի և՝ պարտիական, սովետական, կոմերիտական ու տնտեսական ղեկավար աշխատանքի մեծ փորձ։ Նալբանդյան գյուղի կոլտնտեսությունում նա իրեն դրսևորել է որպես լավ տնտեսավար։ Գյուղատնտես ընկ. Թադևոս Մկրտչյանը, առաջ քաշվելով որպես գլխավոր գյուղատնտես, նվաճել է կոմունիստների վստահությունը և 1963 թվականին ընտրվել կոլտնտեսության պարտիական կազմակերպության քարտուղար։ Բրիգադավարներից հինգը գյուղատնտեսության մասնագետներ են։ Անասնաբուծական ֆերմաների անասնաբուծական-անասնաբուժական սպասարկումը հանձնարարված է գյուղատնտեսական բարձրագույն կրթություն ունեցող մասնագետների։ Կոմունիստների ուժերի տեղաբաշխումը և արտադրության մեջ նրանց ավանգարդային դերի ապահովումը կազմակերպական աշխատանքի հիմնական բնագավառներից մեկն է։



Կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը բաղկացած է 70 կոմունիստներից, որոնց մեծ մասն աշխատում է անմիջականորեն արտադրության մեջ։ Նրանցից շատերը՝ Բ. Վասիլյանը, Ռ. Մարգարյանը, Ս. Ղազարյանը, Հ. Հակոբյանը և ուրիշներ կոլտնտեսության առաջավորներ են և մյուսների համար օրինակ են ծառայում։

Կոմերիտականը մեր ժամանակի առաջավորն է, ամեն մի նորի ու առաջադիմականի նախաձեռնողն ու համարձակ իրականացնողը։ Լինել կոմերիտական՝ նշանակում է ակտիվ ու անձնվիրաբար պայքարել պարտիայի և կառավարության բոլոր որոշումների ու ցուցումների իրականացման համար։ Ահա թե ինչու կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը միշտ առաջնակարգ խնդիր է համարում կոմերիտական կազմակերպությանը պատշաճ ղեկավարություն ցույց տալը, հոգ է տանում գյուղի բոլոր պատանիների ու աղջիկների կոմունիստական դաստիարակության մասին։ Երիտասարդության դաստիարակությունը քաղաքական մեծ կարևորություն ունեցող գործ է։

Կոլտնտեսության կոմերիտական կազմակերպության (քարտուղար Հ. Ավետիսյան) գրեթե բոլոր անդամները (117 հոգի) անմիջականորեն աշխատում են արտադրության մեջ։ Նրանցից շատերը խաղողի այգիներում, բամբակենու պլանտացիաներում և անասնաբուծական ֆերմաներում աչքի են ընկնում իրենց աշխատանքային սխրանքներով։ Գյուղում հիացմունքով են խոսում կոմերիտականներ Ազատ Դարբինյանի, Սարիբեկ Սարգսյանի, Թամարա Ռուսյանի և ուրիշների մասին, որոնք բարեխիղճ աշխատանքի լավագույն օրինակ են ցույց տալիս։

Պարտիական կազմակերպությունը մեծ հոգատարություն է ցուցաբերում երիտասարդության քաղաքական, գեղագիտական ու ֆիզիկական դաստիարակության նկատմամբ։ Ընթացիկ ուսումնական տարում կազմակերպության բոլոր անդամներն ընդգրկվել են կոմերիտական լուսավորության ցանցում։ Երիտասարդության համար պարբերաբար կազմակերպվում են թեմատիկ երեկոներ, կարդացվում դասախոսություններ, զեկուցումներ, ցուցադրվում են կինոնկարներ։ Երգի ու պարի, ինչպես և թատերական խմբակներում ընդգրկված են 30 պատանի ու աղջիկ։ Գյուղում հաճախ կարելի է ականատես լինել ֆուտբոլի, վոլեյբոլի, բասկետբոլի և սպորտային այլ մրցումների։

Սակայն պետք է նշել, որ վերոհիշյալ հաջողությունների հետ Նալբանդյան գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպության գործունեության մեջ նկատվում են թերություններ։

Գլխավոր թերությունն այն է, որ դեռևս չի ապահովվում տնտեսության համակողմանի վերելքը։ Օրինակ, շահութաբերությունը տնտեսական ցուցանիշ է, որը բնորոշում է կոլտնտեսության պարտկազմակերպության ու վարչության գործունեությունը, տնտեսությունը վարելու արդյունավետությունը։ Արտելի տնտեսական հզորությունը շատ ավելի մեծ կլիներ, եթե կոլտնտեսության բոլոր տեղամասերը շահութաբեր աշխատեին։ Այս, ամենից առաջ, վերաբերում է կոլտնտեսության անասնաբուծությանը։ Թեև, 1960 թվականի համեմատությամբ, անասնապահությունից ստացվող եկամուտները մեծ չափով ավելացել են, սակայն անասնաբուծության գծով ընդհանուր տնտեսական ծախսերն առաջվա պես զգալիորեն գերազանցում են նրա եկամտից։

*Այստեղ առանձնապես աչքի են ընկնում կաթնաապրանքային և թռչնաբուծական ֆերմաները։ Օրինակ, եթե կաթնաապրանքային ֆերմայից 1963 թվականին կոլտնտեսությունն ստացել է 85.000 ռուբլի եկամուտ, ապա այդ ֆերմայի պահպանման համար ծախսվել է 92000 ռուբլի։*

*Մեր կարծիքով խաղողագործությունն ու այգեգործությունը պետք է դառնան կոլտնտեսության բուսաբուծության հիմնական ճյուղերը։ Թեև այս բնագավառում զգալի գործ է կատարված (ամենից առաջ այգիների ու հին պլանտացիաների վերականգնման ուղղությամբ), բայց բոլորովին չի կարելի հաշտվել այն մտքի հետ, որ կոլտնտեսությունում բավարար է այգետարածությունների ընդարձակման գործը։*

*Ինքնարժեքի իջեցման և տնտեսության շահութաբերության բարձրացման գործում մեծ նշանակություն ունի արտադրանքի որակը։ Սակայն կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը և վարչությունը դեռևս ինչպես հարկն է չեն զբաղվում բուսաբուծության ու անասնաբուծության արտադրանքի որակի բարձրացման հարցերով, հասարակական կարծիք չի ստեղծվում այս կարևոր խնդրի լուծման ուղղությամբ։ Երբեմն պետությանը հանձնած կաթի յուղայնությունը սահմանված նորմայից պակաս է լինում, միսը՝ միջին գիրությունից ցածր, հանձնվում են ոչ ստանդարտ խաղող, պտուղ, բանջարեղեն, բոստանային բույսեր և այլն։*

*Ուրախալի է, որ Նալբանդյան գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը չի բավարարվում ձեռք բերածով, աշխատում է ավելի բարձրացնել ներպարտիական աշխատանքի մակարդակը, ավելի լավ ղեկավարել արտադրությունը և ապահովել տնտեսության բարձր ապրանքայնությունն ու հաստատուն շահութաբերությունը բոլոր բնագավառներում։*

Զ. ՍՈՒԼԹԱՆՈՎ

ՀԿՊ Կենտկոմի պարտիական օրգանների տեսուչ

# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

## ԱՐԱԲԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԷՈՒԹՅՈՒՆԸ

Մեր մի քանի ընթերցողներ, նամակով դիմելով խմբագրության, հարցնում են, թե որն է «արաբական սոցիալիզմի էությունը:

Ստորև տպագրում ենք նրանց հարցի պատասխանը:

*Վերջին ժամանակներս շատ է գրվում և խոսվում ազգային սոցիալիզմի տարատեսակների մասին։ Ազգային քողով պարուրված սոցիալիզմը Ասիայի և Աֆրիկայի նոր անկախություն ձեռք բերած երկրներում չի առաջադրվում որպես զուտ տեսական պոստուլատ, այլ բարձրացվել է պետական քաղաքականության աստիճանի և հռչակվել որպես ազգային նվիրական իղձ։ Եվ ահա հրապարակ են իջել ուրույն, սպեցիֆիկ, ազգային «սոցիալիզմի» բազմազան ու բազմապիսի վարիանտներ, ինչպես՝ հնդկական, ինդոնեզական, բիրմայական, աֆրիկյան «սոցիալիզմը» և այլն։ Դրանց կողքին հանդես է եկել նաև «արաբական սոցիալիզմը»։*

*Այդ յուրահատուկ ձևով հասկացված ու հռչակված «սոցիալիզմի» պաշտպանությամբ հանդես են գալիս ո՛չ միայն դեմոկրատական ու հանրապետական տարբեր ուժերը, այլև ազգային բուրժուազիան, իսկ առանձին դեպքերում նաև ֆեոդալ-կալվածատերերի և հոգևորականության որոշ ներկայացուցիչներ։ Անհերքելի մի իրողություն է այս, որի պատճառները պետք է փնտրել համաշխարհային նշանակություն ունեցող այն փոփոխությունների մեջ, որոնք վերջին ժամանակաշրջանում տեղի ունեցան ինչպես միջազգային, այնպես էլ արաբական երկրների ներքին կյանքում։*

***

*Սոցիալիզմի գաղափարների տարածման և ազգային բուրժուազիայի կողմից սոցիալիզմի լոզունգի որդեգրման պատճառները հիմնականում հետևյալներն են. առաջին. դա կապված է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ձևավորման և Սովետական Միության ու սոցիալիստական մյուս երկրների համաշխարհային պատմական հաջողությունների հետ։ Սոցիալիստական երկրներում մարդու կողմից մարդու շահագործման, նրանց տնտեսական հետամնացության, աղքատության ու թշվառության վերացումը, վիթխարի նվաճումները գիտության ու մշակույթի բնագավառում դարագլուխ կազմող հաջողություններ են, որոնք մեծ չափով նպաստեցին սոցիալիզմի գաղափարների տարածմանը։ Այդ ապացուցում է Վ. Ի. Լենինի այն մտքի ճշտությունը, որ իշխանությունը վերցնելուց հետո համաշխարհային պատմության զարգացման վրա մենք հիմ-*

նականում ազդելու ենք մեր տնտեսական քաղաքականությամբ։ Եվ այսօր
պատմական անհերքելի իրողությունն այն է, որ սոցիալիզմի լոզունգն ամենա-
ժողովրդական լոզունգն է ասիական ու արաբական մի շարք երկրներում, որ
աշխատավորական մասսաները սոցիալիզմի հետ են կապում իրենց տնտեսա-
կան առաջընթացի և կյանքի պայմանների բարելավման հույսերը։
Երկրորդ. արաբական երկրները տնտեսապես հետամնաց և թույլ զարգա-
ցած երկրներ են, որի պատճառներից մեկը արևմտյան իմպերիալիստական
տերությունների գաղութարարական քաղաքականությունն էր։ Այժմ արաբա-
կան երկրների առջև կանգնած է մի բարդ ու դժվարին խնդիր՝ տնտեսական ան-
կախություն ձեռք բերելու, իրենց տնտեսական հետամնացությունը հաղթահա-
րելու և ազգային տնտեսությունը զարգացնելու խնդիրը։ Այդ հարցը նրանք
պետք է լուծեն պատմական կարճ ժամանակամիջոցում։ Արաբական երկրները
որպես օրինակ իրենց առջև ունեն ինչպես կապիտալիստական, այնպես էլ սո-
ցիալիստական փորձը։ Միմյանց հետ համեմատելով զարգացման այդ երկու
ուղիները, նրանք ավելի ու ավելի են հակվում դեպի ոչ կապիտալիստական
ուղին կամ փորձը։ Դա պետք է բացատրել նրանով, որ կապիտալիստական
ուղին դժվարին, երկար ու տանջալի ուղի է և չի համապատասխանում ժողո-
վրդական մասսաների շահերին։ Մինչդեռ, ինչպես ցույց է տալիս պրակտի-
կան, սոցիալիստական ուղին հնարավորություն է ընձեռում պատմական կարճ
ժամանակաշրջանում հսկայական թռիչք գործելու և հաղթահարելու տնտեսա-
կան դարավոր հետամնացությունը։ Ահա թե ինչու արաբական աշխատավորա-
կան մասսաները և դեմոկրատական լայն շրջաններն իրենց երկրների տնտե-
սական զարգացումը իրավացիորեն կապում են սոցիալիստական սկզբունքների
կիրառման հետ։
Երրորդ. «արաբական սոցիալիզմի» լոզունգի հռչակումը ուղղակիորեն
կապված է ազգային-ազատագրական շարժումների և, հատկապես, դրանց
ներկա էտապի հետ։ Ազգային-ազատագրական ռևոլյուցիաների շնորհիվ արա-
բական մի շարք երկրներ թոթափեցին իմպերիալիզմի լուծը և նվաճեցին քա-
ղաքական անկախություն։ Այդ ռևոլյուցիաների շնորհիվ վերոհիշյալ երկրնե-
րում իշխանությունն անցավ ազգային-բուրժուազիայի ձեռքը, որը ռևոլյու-
ցիայի ընթացքում պաշտպանում էր ազգային-ազատագրական շարժման բո-
լոր կարևոր լոզունգները։ Իսկ այդ լոզունգներն իրենց մեջ ընդգրկում էին ինչ-
պես քաղաքական, այնպես էլ սոցիալ-տնտեսական կարևոր պահանջներ։ Քա-
ղաքական խնդիրները, որոնց մեջ ամենակարևորը քաղաքական անկախություն
ձեռք բերելն էր, լուծվեցին ազգային-ազատագրական պայքարի առաջին էտա-
պում, որն Արաբական արևելքում հիմնականում ավարտվեց 1958 թվականին։
Դրանից հետո սկսվում է նոր էտապ, երբ առաջին պլանի վրա են քաշվում
սոցիալ-տնտեսական պրոբլեմները։ Եվ ահա այս էտապում պարզ երևաց, որ
ազգային դեմոկրատական ռևոլյուցիաների հետագա զարգացումը չի մտնում
ազգային բուրժուազիայի ծրագրի մեջ։ Ուստի, պատահական չէ, որ մինչև օրս
Արաբական արևելքում չեն լուծվել հողի, աշխատանքի, հացի, ազատության
ու դեմոկրատիայի խնդիրները։
Ինչպես մյուս երկրների, այնպես էլ արաբական երկրների հետպատերազմ-
յան քսան տարիների փորձը աշխատավորական զանգվածներին համոզեց, որ
իրենց կենսական պահանջները կարող է լուծել միայն սոցիալիստական հա-
սարակարգը։ «Արաբական երկրների ժողովրդական զանգվածները,— նշում է



Լարբի Բուհալին,— արդեն այժմ դատապարտում են զարգացման կապիտա-
լիստական ուղին և դիմում ոչ կապիտալիստական ուղուն», («Проблемы
мира и социализма», 1962 г., № 1, стр. 25)։ Իսկ այդ նշանակում է սպառ-
նալիք ազգային բուրժուազիայի տիրապետությանը, բուրժուազիա, որը նոր է
վերցրել իշխանությունն իր ձեռքը և բավարար չափով չի ամրապնդել այն։
Բուրժուազիան, անշուշտ, քաջատեղյակ է ժողովրդական զանգվածների այդ
տրամադրություններին ու ցանկություններին։ Եվ իր իշխանությունը պահպա-
նելու համար նա օգտագործում է ո՛չ միայն պետական ապարատը, բանակն ու
ոստիկանությունը, այլև դիմում է խորամանկ քայլերի՝ դեմագոգիկ նպա-
տակով շահագործում ժողովրդական դարձած գաղափարներն ու լոզունգները։
Հենց այդ նպատակն է հետապնդում նրա կողմից սոցիալիզմի լոզունգի օգ-
տագործումը։ «Ազգային» կամ «արաբական սոցիալիզմը» ազգային բուրժուա-
զիան առաջ քաշեց որպես ալտերնատիվ գիտական սոցիալիզմին, կոմունիզ-
մի տեսությանը։ Դրա օգնությամբ նա ձգտում է թուլացնել ժողովրդական
զանգվածների և դեմոկրատական ուժերի պայքարի թափը, նրանց մոլորության
մեջ գցել և շեղել հարվածի ուղղությունը։
«Արաբական սոցիալիզմի» լոզունգի որդեգրումը ազգային բուրժուազիա-
յի, միջին խավերի, ինչպես նաև կալվածատերերի և հոգևորականության որոշ
մասի կողմից վկայում է, մի կողմից, նրանց թուլության, իսկ մյուս կողմից՝
արաբական աշխատավորական զանգվածների կազմակերպվածության, նրանց
ուժի ու դերի աճման մասին։
Եվ վերջապես, չորրորդ, «արաբական սոցիալիզմի» գաղափարների տարա-
ծումը կապված է արաբական երկրներում մեծաքանակ միջին խավի կամ մանր
բուրժուազիայի առկայության հետ։ Մանր բուրժուազիան միշտ էլ, ինչպես
Եվրոպայում, այնպես էլ Ասիայում, հանդես է եկել յուրովի հասկացած ու
ըմբռնած «սոցիալիստական» լոզունգներով։ Այդ հանգամանքի վրա ուշադրու-
թյուն են դարձրել գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսը և Ֆ. Էն-
գելսը, որոնք իրենց Կոմունիստական պարտիայի մանիֆեստ-ում հատուկ բա-
ժին են նվիրել մանրբուրժուական սոցիալիզմի «տեսության» վերլուծմանը։
Զգտելով նպաստավոր պայմաններ ստեղծել իր գոյության ու զարգացման հա-
մար, մանր բուրժուազիան երբեմն-երբեմն հանդես է գալիս «արդարության
ու հավասարության», սոցիալիզմի պահանջով, որի մեջ նա ուրույն բովան-
դակություն է դնում։ Դրանով իսկ նա փորձում է ազդեցություն ձեռք բերել
ժողովրդական մասսաների վրա, նրանց դնել շարժման մեջ և տանել իր
հետևից՝ իր նեղ սոցիալական խնդիրները լուծելու համար։
Արաբական մի շարք երկրներում մանր բուրժուազիան բավականին ազ-
դեցիկ է։ Նա որոշակի դիրք ունի պետական ապարատում, բանակում և այլուր։
Այս հանգամանքը, անկասկած, խաղում է իր դերը ազգայնական սոցիալիզմի
լոզունգի առաջքաշման գործում։
Այսպիսով կարելի է ասել, որ «արաբական սոցիալիզմի» հրապարակ գալը
արդյունք էր, մի կողմից՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ձևավոր-
ման, սոցիալիստական երկրների տնտեսական ու քաղաքական հաջողություն-
ների, որոնց շնորհիվ լայնորեն տարածվեցին մարքս-լենինյան գաղափարները
և մեծացավ հետաքրքրասիրությունը այդ գաղափարների նկատմամբ, իսկ
մյուս կողմից՝ արաբական երկրների ներքին զարգացման, ազգային դեմոկրա-
տական ռևոլյուցիայի խնդիրներն իրականացնելու գործում ազգային բուր-

ժուազիայի անընդունակության և աշխատավորական մասսաների դերի բարձրացման։



«Արաբական սոցիալիզմը» մի ամբողջական ու մշակված տեսություն չէ։ Նրան հատուկ է էկլեկտիզմը, որոշ հարցերի մշուշապատ ու ոչ հստակ լինելը, որը, հասկանալի է, որոշակի դժվարություն է ներկայացնում հետազոտողի համար։ Այդ տեսության կողմնակիցները որոշ բան վերցրել են գիտական սոցիալիզմից, որոշ բան՝ Արևմուտքում տարածված ռեֆորմիստական, այսպես կոչված «դեմոկրատական սոցիալիզմից» և որոշ բան էլ ավելացրել են իրենք, ելնելով իրենց ազգային միջավայրից, սպեցիֆիկ պայմաններից ու խնդիրներից։

«Արաբական սոցիալիզմը» ո՛չ միայն մի ամբողջական տեսություն չէ, այլև չի ներկայացվում մի հոսանքի կողմից։ Նրա պաշտպանությամբ հանդես են գալիս արաբական տարբեր քաղաքական ուժեր, պարտիաներ ու հոսանքներ, որոնցից յուրաքանչյուրն իր պատկերացումներն ու հասկացողությունններն է մուծում «արաբական սոցիալիզմի» գաղափարի մեջ։ Իհարկե, այդ չի բացառում ընդհանրությունը և որոշ հարցերում նրանց միատեսակ կարծիքներ արտահայտելը։ Այժմ մեր նպատակը չէ կանգ առնել այդ բոլոր հոսանքների վրա, մեր խնդիրն է պարզաբանել եգիպտական սոցիալիզմի, արաբական վերածննդի սոցիալիստական՝ բաաս պարտիայի, ինչպես նաև Լիբանանի սոցիալիստական-առաջադիմական պարտիայի կողմից հասկացվող ու պաշտպանվող «արաբական սոցիալիզմի» էությունը։

Սոցիալիզմի ուսմունքի մեջ ամենակարևորը դասակարգային պայքարի, իշխանության և սեփականության հարցերն են։ Գիտական կոմունիզմի հիմնադիրները սոցիալիզմի կենսագործումն ուղղակիորեն կապում են դասակարգային պայքարի (խաղաղ կամ զինված), բանվոր դասակարգի քաղաքական տիրապետության հետ, գտնելով, որ պրոլետարիատը, իր դասակարգային դրության շնորհիվ միակ ուժն է, որ ընդունակ է կենսագործելու արմատական ու ռևոլյուցիոն վերափոխումներ և կառուցելու սոցիալիստական հասարակարգ։

Իսկ ինչպե՞ս է դրվում դասակարգային պայքարի հարցը ըստ «արաբական սոցիալիզմի» «տեսության»։ Այդ հարցին հստակ ու աներկբա պատասխանում են այն պաշտոնական փաստաթղթերը, որոնք ընդունվել են վերջին տարիներին Արաբական Միացյալ Ռեսպուբլիկայում, Իրաքում և Սիրիայում։ 1962 թ. մայիս-հունիս ամիսներին Կահիրեում գումարվեցին ԱՄՌ-ի ազգային կոնգրեսի նիստերը։ Կոնգրեսն ընդունեց ազգային խարտիա։ Ազգային խարտիայում պաշտոնապես արձանագրվեց, որ Եգիպտոսն ընթանալու է սոցիալիզմի ուղիով։ Այդ հարցի կապակցությամբ բազմիցս հանդես եկավ ԱՄՌ-ի պրեզիդենտ Նասերը։ Թե՛ Նասերը և թե Ազգային խարտիան դեմ են դասակարգային պայքարին։ Նասերը տարբեր առիթներով ընդգծել է, որ իրենք չեն բաժանում դասակարգային պայքարի թեորիան և չեն գտնում, որ դասակարգային պայքարը անհրաժեշտություն է սոցիալիզմի կառուցման գործում։ Նասերն ընդհանրապես հանդես է գալիս դասակարգային պայքարի տեսության դեմ։ 1962 թ. մայիսի 21-ին հանդես գալով Ազգային կոնգրեսի դեպուտատների առջև, նա հայտարարեց, որ ինքը դասակարգային պայքարը չի համարում ռևոլյուցիայի շարժիչ ուժը, որ դասակարգային պայքարը Եգիպտոսում անխուսա-



փելիորեն կհանգեցներ արյունահեղության (Նյու-Յորք թայմս, 27 մայիսի,
1962 թ.)։ Այլ կերպ ասած, Նասերը հանդես է գալիս հանուն «դասակարգային
համերաշխության»։ Եվ, պետք է նշել, որ հակագիտական այդ «տեսությունը»
այսօր բավականին լայն տարածում է գտել արաբական տարբեր շրջաններում։
Այդ տեսությունը փոքր-ինչ այլ կերպ պաշտպանում է բաաս պարտիան։ Նրա
հայտնի «տեսաբան» ու ղեկավար Միշել Աֆլակը գրում է. «Կարող ենք խոս-
տովանել, որ արաբական նացիոնալիզմը ներևայումս հոմանիշ է սոցիալիզ-
մին, նացիոնալիստների և սոցիալիստների միջև չկա ո՛չ հակասություն, ո՛չ
հակամարտություն և ոչ էլ կռիվ» (տե՛ս, Ջամիլ Շաքիր, Արաբական բաասը
տեսության և իրականության միջև, «Գործեր և օրեր», Բեյրութ, № 10, հունիս-
սեպտեմբեր, 1963 թ., արաբերեն)։
Ինչպես տեսնում ենք, նա հավասարության նշան է դնում սոցիալիզմի և
նացիոնալիզմի միջև, որի դրոշի ներքո հավաքվել են բուրժուազիան, ֆեոդալ-
շեյխերը, հոգևորականությունը, համարյա բոլոր շահագործողական և նույնիսկ
ռեակցիոն տարրերը, և հայտարարում է, թե այդ շահագործողական տարրերի
ու աշխատավորական մասսաների միջև չկա ոչ մի հակամարտություն ու պայ-
քար։ Բաասը արաբական ազգը դիտում է որպես մի համասեռ ամբողջություն
և դրանով իսկ ժխտում դասակարգային պայքարի հնարավորությունը։ Եվ պա-
տահական չէ, որ բաաս պարտիայի մյուս աչքի ընկնող գործիչը՝ Սալահ Բի-
թարը, մարոկկոյական «Աթ-Թահրիր» թերթին տված ինտերվյուի մեջ հայ-
տարարեց. «Մենք տարաձայնություններ ունենք կոմունիզմի, կամ, ավելի ճիշտ,
մարքսիզմի՝ որպես ռևոլյուցիոն գործունեության ուղեցույցի հետ» (տե՛ս,
«Բաաս», Դամասկոս, 5 ապրիլի, 1963 թ.)։ Սալահ Բիթարի այդ հայտարարու-
թյունն, իհարկե, խիստ բնորոշ է։ Այն պարտիան, որ մի կույտի մեջ է հա-
վաքում, մի կողմից՝ ռևոլյուցիոն ու սոցիալիստական ուժերին, իսկ մյուս
կողմից՝ շահագործողական ու ռեակցիոն տարրերին և ժխտում նրանց միջև
պայքարի հնարավորությունն ու առկայությունը, չէր կարող հակասության մեջ
չգտնվել ռևոլյուցիոն մարքսիզմի տեսության հետ, որի կարևոր դրույթներից
մեկը ուսմունքն է դասակարգային պայքարի մասին։
Դասակարգային պայքարի ժխտմամբ է հանդես գալիս նաև Լիբանանի
սոցիալիստական-առաջադիմական պարտիան, որն Ասիական սոցիալիստա-
կան կոնֆերենցիայի անդամ է։ Դա, փաստորեն, ասիական աջ սոցիալիստ-
ների ինտերնացիոնալն է, որ ստեղծվել է 1953 թվականին։ Նրա մեջ մտնում
են Բիրմայի, Հնդկաստանի, Ինդոնեզիայի, Ճապոնիայի, Իսրայելի, Լիբանանի,
Մալայայի, Նեպալի և այլ երկրների սոցիալիստական պարտիաները։ Այն ըստ
լության հակադրվում է գիտական սոցիալիզմին և իր խնդիրն է համարում
«դեմոկրատական սոցիալիզմի» կառուցումը Ասիայում։ Ասիական սոցիալիս-
տական կոնֆերենցիան մշակել է իր քաղաքական ծրագիրը, որի միջուկը կազ-
մում է դասակարգային պայքարի ժխտումը։ Մերժելով ռևոլյուցիոն դասակար-
գային պայքարը, նա դրա փոխարեն առաջ է քաշում ռեֆորմների և, հատկա-
պես, կուլտուր-լուսավորչական ռեֆորմների և բարոյական կատարելագործման
հարցը։ «Պայքարի» միայն այդպիսի մեթոդներով է այդ կազմակերպությունը
ձգտում կառուցել «սոցիալիստական» հասարակարգ։
«Դասակարգային համերաշխության» տեսությունը «արաբական սոցիա-
լիզմի» կողմնակիցների կողմից առաջադրվում է մի այնպիսի հասարակարգի
համար, որն ունի որոշակի դասակարգային բաժանում։ Արաբական հասարա-

կության ներսում կան և՛ կապիտալիստներ ու կալվածատերեր, և՛ բանվորներ ու գյուղացիներ, որոնք շահագործվում են առաջինների կողմից։ Ուստի, խոսել նրանց համերաշխության ու միասնության մասին լոկ այն պատճառով, որ նրանք միևնույն ազգին են պատկանում, անմտություն է։ Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ միասնականությունը, իրական միասնականությունը հնարավոր է ոչ թե ազգային, այլ դասակարգային հիմքի վրա։ Այդ է ապացուցում սոցիալիստական շարժման ամբողջ համաշխարհային պատմական փորձը։

Այսպիսով, կարելի է ասել, որ Արաբական արևելքի առավել զարգացած երկրների՝ ԱՄՌ-ի, Սիրիայի, Իրաքի և Լիբանանի այն ուժերը, որոնք պաշտպանում են «արաբական սոցիալիզմի» լոզունգը, տարբեր ձևերով ժխտում են դասակարգային պայքարի (թե՛ զինված և թե խաղաղ) տեսությունը և ուղղակիորեն հակադրվում գիտական սոցիալիզմի դրույթներին, մարքս-լենինյան տեսությանը։ Այդ ժխտումը արտացոլումն է բուրժուազիայի մտածելակերպի և հոգեբանության, բուրժուազիա, որը սարսափում է ժողովրդական մասսաներից, այդ մասսաների պայքարից և ազգի տարբեր սոցիալ-քաղաքական ուժերի «շահերի միասնության» միասնական «կամքի», «ազատության» և «եղբայրության» բուրժուական լոզունգներով փորձում է մոլորեցնել աշխատավորական մասսաներին, ձգտում է գոնե այդ սոցիալիստական շարժումը դնել իր համար «ընդունելի» և ոչ այնքան սարսափելի շրջանակների մեջ, զրկել այն հակաբուրժուական բովանդակությունից։

Այսպիսով, գիտական սոցիալիզմի և «արաբական սոցիալիզմի» միջև եղած առաջին տարբերությունը և հակադրությունը կայանում է դասակարգային պայքարի տեղի ու դերի ըմբռնման մեջ։



Մյուս կարևոր հարցը, որն օգնում է հասկանալու «արաբական սոցիալիզմի» էությունը, իշխանության հարցն է, որն ինչպես հայտնի է, շատ կարևոր ու սկզբունքային տեղ է գրավում մարքս-լենինյան թեորիայի մեջ։ Մարքսիզմ-լենինիզմը սոցիալիզմի կառուցումը կապում է պրոլետարիատի քաղաքական տիրապետության, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման հետ։

Իսկ ինչպե՞ս է այդ հարցը դրվում «արաբական սոցիալիզմի» տեսության մեջ։ Այդ տեսության պաշտպանները դեմ են պրոլետարիատի դիկտատուրային։ Այդ բանը նրանք արտահայտում են ընդհանրապես դիկտատուրայի դեմ հանդես գալով։ Գամալ Աբդել Նասերը 1962 թ. մայիսի 21-ին ազգային կոնգրեսում ունեցած իր ելույթում ուղղակի հայտարարեց. քաղաքական դեմոկրատիան անհնար է մի դասակարգի տիրապետության ժամանակ (տե՛ս, Նյու-Յորք թայմս, 27 մայիսի, 1962 թ.)։ Այս տեսակետն ավելի որոշակի ու կտրուկ արտահայտվեց 1963 թ. ապրիլի 17-ին Կահիրեում ստորագրված եռակողմ դեկլարացիայում։ Այդ դեկլարացիան ստորագրեցին ԱՄՌ-ը, Իրաքը և Սիրիան։ Նրա նպատակն էր այդ երեք պետությունները միավորել ֆեդերատիվ հիմունքներով։ Դեկլարացիան ստորագրողներն արձանագրեցին, որ իրենց նպատակն է սոցիալիստական հասարակարգի կառուցումը, սակայն իրենք ժողովրդի թշնամի են համարում «յուրաքանչյուրին, ով օժանդակել կամ օժանդակում է մի դասակարգի տիրապետության հաստատմանը» (Ալ-Ախբար,



Բեյրութ, 26 մայիսի, 1963 թ.)։ Այս դրույթն ուղղված է բանվոր դասակարգի դեմ, նրա քաղաքական իշխանությունն ընդունելու և գիտական սոցիալիզմի դեմ, որովհետև հանրահայտ ճշմարտություն է, որ պրոլետարիատի դիկտատուրայի մասին ուսմունքը մարքս-լենինյան թեորիայի անկյունաքարն է։

Այս տեսակետից որոշակի հետաքրքրություն է ներկայացնում ԱՄՌ-ի ժամանակավոր կոնստիտուցիան, որը պրեզիդենտ Նասերը ստորագրեց 1964 թ. մարտի 23-ին և ուժի մեջ մտավ մարտի 25-ին։ Այդ կոնստիտուցիայի առաջին հոդվածը Արաբական Միացյալ Ռեսպուբլիկան հռչակեց «ժողովրդի աշխատավորական ուժերի դաշինքի վրա հիմնված դեմոկրատական սոցիալիստական պետություն» (տե՛ս, Новое время, № 16, 1964, էջ 28)։

Իսկ սոցիալ-դասակարգային ինչպիսի՞ ուժեր են մտնում «ժողովրդի աշխատավորական ուժեր» հասկացողության մեջ։ Ինչպես նշված է կոնստիտուցիայում, նրանում «մտնում են բանվորները, գյուղացիները, զինվորները, ինտելիգենցիան և ազգային բուրժուազիան»։ Կոնստիտուցիայում ազգային բուրժուազիան և բանվորներն ու գյուղացիները համարվում են «աշխատավորական ուժեր»։ Սա, նախ՝ ուտոպիական սոցիալիզմի հեռավոր արձագանքն է աֆրիկյան այդ երկրում. նրանցից ոմանք նույնպես թե՛ բուրժուաներին և թե բանվորներին համարում էին աշխատավորներ։ Երկրորդ, ինչպես կոնստիտուցիայից, այնպես էլ 1963 թ. ապրիլի 17-ի դեկլարացիայից պարզ երևում է, որ «արաբական սոցիալիզմի» կողմնակիցներն իշխանության հարցում հանդես գալով «ընդհանրապես» դիկտատուրայի դեմ և «ընդհանրապես» ազատության ու հավասարության լոզունգներով, պաշտպանում են բուրժուազիայի (այստեղ կարևոր չէ, թե նրա որ խավերի) շահերը։ «Ընդհանրապես» դիկտատուրայի դեմ դուրս գալը վարագույր է բուրժուազիայի դիկտատուրան ծածկելու, այն համաժողովրդական դիկտատուրա ներկայացնելու և ժողովրդական մասսաներին շփոթեցնելու համար։ Ալ-Ախբար թերթը շատ սրամիտ կերպով նկատում է. «Դեկլարացիան (1963 թ. ապրիլի 17-ի—Ն. Հ.) ո՛չ միայն դատապարտում է յուրաքանչյուրին, ով բանվոր դասակարգին համարում է իսկական սոցիալիզմի կառուցման գլխավոր ու հիմնական ուժը, այլև նրան սպառնում է ճնշումներով։ Կարծես թե կապիտալիստներն ու խոշոր հողատերերն են հանդիսանում այն դասակարգը, որի վրա կարելի է հենվել սոցիալիզմի կառուցման գործում» (Ալ-Ախբար, Բեյրութ, 26 մայիսի, 1963 թ.)։

Իշխանության և սոցիալիզմի կառուցման գործում բանվոր դասակարգի դերի մասին «արաբական սոցիալիզմի» «տեսաբանների» այս յուրահատուկ տեսակետները չի կարելի արդարացնել ազգային ոչ մի յուրահատուկ կամ սպեցիֆիկ պայմաններով։ Մարքսիզմ-լենինիզմը չի ժխտում ազգային յուրահատկությունները և երբեք չի նշել, որ սոցիալիզմի կառուցման մեթոդներն ու ուղիները բոլոր երկրների համար միատեսակ են։ Վ. Ի. Լենինը նշելով, որ բոլոր ազգերն էլ անխուսափելիորեն կգան դեպի սոցիալիզմ, ընդգծում էր, որ բոլորը միևնույն ձևով չեն գնա։ Յուրաքանչյուր ազգ կբերի իր ինքնատիպությունը և իր առանձնահատկությունները՝ դեմոկրատիայի այս կամ այն ձևով։ Սակայն ընդունելով հանդերձ այդ բոլոր առանձնահատկությունները և ազգային ինքնատիպությունները, Վ. Ի. Լենինը շեշտում էր, որ իշխանության ձևը բոլոր դեպքերում լինելու է մեկը՝ այն է պրոլետարիատի դիկտատուրան։

Այսպիսով, իշխանության հարցը մյուս կարևոր հարցն է, որ գիտական սոցիալիզմը բաժանում է «արաբական սոցիալիզմից»։

***

Սոցիալիստական արտադրաեղանակը պահանջում է արտադրության մի-
ջոցների մասնավոր սեփականության վերացում և համաժողովրդական սեփա-
կանության հաստատում թե՛ արդյունաբերության և թե գյուղատնտեսության
բնագավառում։
«Արաբական սոցիալիզմի» կողմնակիցներն այս սկզբունքային հարցում
ևս տարակարծիք են գիտական սոցիալիզմի հետ։ Եվ նրանք այդ բանը չեն
թաքցնում։ Բաաս պարտիան «արաբական սոցիալիզմը» հակադրելով գիտա-
կան սոցիալիզմին, նշում է, որ այն սոցիալիզմը, որ կառուցվել է Սովետական
Միությունում և կառուցվում է մյուս սոցիալիստական երկրներում, սոցիալիզմ
չէ։ Նասերը 1962 թ. պաշտոնապես հայտարարեց, որ «արաբական սոցիալիզ-
մը» «ներմուծված գաղափարախոսություն» չի լինելու։ Նույն միտքը վերջերս
ընդգծեց Իրաքի պրեզիդենտ Արեֆը։ Այս ակնարկը, հասկանալի է, նկատի
ունի մարքս-լենինյան տեսությունը։ Այդ դեպքում նրանք ինչպե՞ս են պատ-
կերացնում սոցիալիզմը որպես սեփականության ձև։ Բաաս պարտիայի ծրա-
գիրը սոցիալիզմը հռչակում է որպես արդարություն և հնարավորություն-
ների հավասարություն։ Ծրագիրը պահանջում է ոչ թե մասնավոր սեփականու-
թյան վերացում, այլ «մասնավոր սեփականության սահմանափակում մինչ այն
աստիճան, որ ոչնչանա նրա շահագործման ունակությունը» (Ալ–Ախբար, 26
մայիսի, 1963 թ.)։ Այլ կերպ ասած, այս պարտիան դնում է ոչ թե մասնավոր
սեփականության, որպես սեփականության ձևի վերացման հարցը, ինչպես
պահանջում է գիտական սոցիալիզմը, այլ ձգտում է միայն սահմանափակել և
հսկողության տակ վերցնել այն։
Նման տեսակետներ է պաշտպանում նաև Նասերը։ Նա սկզբունքորեն դեմ
չէ մասնավոր սեփականության պահպանմանը, ինչպես գյուղատնտեսության,
այնպես էլ արդյունաբերության մեջ։ Ուստի, պատահականություն չէ, որ
ԱՄՌ-ի, Սիրիայի և Իրաքի ներկայացուցիչները 1963 թ. ապրիլի 17-ին, ստո-
րագրելով վերևում արդեն հիշատակված դեկլարացիան, դարձյալ դրեցին ոչ
թե մասնավոր սեփականության բոլոր ձևերի վերացման, այլ նրա վրա հըս-
կողություն սահմանելու հարցը։ Այդ կապակցությամբ դեկլարացիայում աս-
ված է. «Ժողովուրդը պետք է հսկողություն սահմանի արտադրության վրա»,
«մասնավոր սեփականությունը և մասնավոր կապիտալը պետք է դրվեն այն-
պիսի դրության մեջ, որ անթույլատրելի լինի մոնոպոլիայի և շահագործման
գոյությունը» (Ալ–Ախբար, 26 մայիսի, 1963 թ.)։ Եվ սա ներկայացվում է
որպես սոցիալիստական միջոցառում ու սոցիալիզմի կառուցում։ Այս սկըզ-
բունքը պահպանվել է նաև ԱՄՌ-ի ժամանակավոր կոնստիտուցիայում, որը
թեև ԱՄՌ-ն հռչակել է սոցիալիստական, նրա տնտեսական հիմքը համարում
է սոցիալիստական սիստեմը, սակայն համաժողովրդական և կոոպերատիվ
սեփականությունների կողքին թույլատրվում է նաև մասնավոր սեփականու-
թյունը (տե՛ս Правда, 25 մարտի, 1964 թ.)։
Ինչպես տեսնում ենք, այս հարցում ևս «արաբական սոցիալիզմը» սկըզ-
բունքորեն տարբերվում ու հակադրվում է գիտական սոցիալիզմին։ Այն մի-
ջոցառումները, որ ձգտում են իրականացնել այդ երկրներում, պրոգրեսիվ մի-
ջոցառումներ են, սակայն հեռու են սոցիալիստական լինելուց։ Ուստի, այդ
հարցում չպետք է շփոթության մեջ ընկնել և այդ երկրներում կատարվող փո-



փոխությունները ներկայացնել սոցիալիստական։ Սակայն այդ վերափոխում-
ներն արտաքին ու ներքին մի շարք գործոնների առկայության դեպքում և,
հատկապես, դեմոկրատիայի զարգացման և աշխատավորական մասսաների
դերի բարձրացման դեպքում լավ հող կարող են հանդիսանալ, օրինակ, Եգիպ-
տոսում, ոչ կապիտալիստական, այլ կերպ ասած, սոցիալիստական զարգաց-
ման համար։
«Արաբական սոցիալիզմի» կողմնակիցները հանդես են գալիս հանուն
եկամուտների հավասար ու արդարացի բաշխման և «հավասար հնարավորու-
թյունների»։ Սակայն նրանց այդ պահանջը մնում է մի ուտոպիկ պահանջ,
որովհետև բաշխման եղանակը կախված է արտադրաեղանակից, իսկ արաբա-
կան երկրներից և ոչ մեկում այսօր գոյություն չունի այնպիսի արտադրաեղա-
նակ, որն ապահովեր եկամուտների հավասար ու առավել ևս արդարացի բաշ-
խում բոլորի համար։ Ինչպե՞ս կարելի է եկամուտների հավասար բաշխման
մասին խոսել, երբ Իրաքում և Սիրիայում, չնայած երկուսն էլ իրենց համարում
են սոցիալիզմի ուղիով ընթացող երկրներ, յուրաքանչյուր կալվածատիրոջ
ձեռքում կենտրոնացված են մի քանի հարյուր հեկտար հողատարածություն-
ներ, իսկ դրանց կողքին գոյություն ունի հողազուրկ գյուղացիների բազմամի-
լիոն բանակ։ Այդ երկրների կառավարությունները փաստորեն ոչ մի պրակտիկ
քայլի չեն դիմում ագրարային հարցը լուծելու համար։ Բացի այդ, վերոհիշյալ
երկու երկրներում էլ տնտեսական ուժեղ դիրքեր է պահպանում բուրժուազիան։
Եկամուտների արդարացի ու հավասար բաշխում չկա նաև Եգիպտոսում, թեև
այնտեղ, համեմատած արաբական մյուս երկրների հետ, ավելի առաջադիմա-
կան ու արմատական վերափոխումներ են տեղի ունեցել։ Սակայն այնտեղ կալ-
վածատերը պաշտոնապես կարող է ունենալ 100 ֆեդդան կամ 42 հեկտար հո-
ղատարածություն այն դեպքում, երբ միլիոնավոր գյուղացիներ հողազուրկ են,
իսկ մի մասն էլ ունի ընդամենը մեկ ֆեդդան կամ կես հեկտար հողակտոր։
Սրան պետք է ավելացնել նաև մանր ու միջին բուրժուազիային և ավելի պարզ
ու հասկանալի կդառնա, որ գոյություն ունեցող արտադրական հարաբերու-
թյունների բազայի վրա անհնար է հավասար հնարավորությունների ապա-
հովումը։ Եկամուտների արդարացի՝ սոցիալիստական բաշխման համար ան-
հրաժեշտ է սահմանել սոցիալիստական արտադրաեղանակ։ Իսկ Արաբական
արևելքի երկրներից և ոչ մեկի մասին այսօր չի կարելի ասել, թե այն սոցիա-
լիստական է։
«Արաբական սոցիալիզմի» մյուս բնորոշ կողմը նրա ընդգծված հակա-
կոմունիզմն է։ Արաբական բոլոր երկրներում կոմունիստական պարտիաներն
արգելված են և շատ տեղերում նրանք ենթարկվում են դաժան ճնշումների ու
հետապնդումների։ Բոլորի հիշողության մեջ դեռևս թարմ է արյան այն բաղ-
նիքը, որ կոմունիստների համար իր արյունարբու ռեժիմի օրերին Իրաքում
սարքեց իրեն սոցիալիստական համարող Բաաս պարտիան։ Նա անհաբեկման
մթնոլորտ է ստեղծել նաև Սիրիայում։ Երկար ժամանակ կոմունիստներին հա-
լածում ու հետապնդում էին Եգիպտոսում։ Արաբ մարքսիստները զրկված են
խոսքի, մամուլի և ժողովների ազատությունից, լեգալ գործելու իրավունքից։
Նրանց ներկայացնում են որպես «հակաազգային» և «ժողովրդի դավաճան»
ուժեր, օտարերկրյա պետության «գործակալներ»։ Այս փաստը ինքնին բացա-
սական կողմից է բնութագրում «արաբական սոցիալիզմը»։
«Արաբական սոցիալիզմին» բնորոշ է մի առանձնահատկություն ևս։ Դա

Նրա և կրոնի փոխհարաբերության հարցն է: Նրա «տեսաբանները» զարմանալի
կերպով «սոցիալիզմն» ու կրոնը հաշտեցրել են և վերջինս համարվում է
«արաբական սոցիալիզմի» անբաժան մասը: Թե՛ ԱՄՌ-ում և թե Սիրիայում,
որոնք իրենց պաշտոնապես հայտարարել են սոցիալիստական պետություններ,
ինչպես նաև Իրաքում, կոնստիտուցիայով իսլամը հայտարարված է պետա-
կան կրոն:

Այսպիսով, «արաբական սոցիալիզմը» առաջանալով արաբական աշխար-
հում սոցիալիստական գաղափարների տարածման բազայի վրա և որոշ բան
վերցնելով սոցիալիստական ուսմունքից, առ այսօր սկզբունքային մի շարք
հարցերում տարբեր է և հակադրվում է գիտական սոցիալիզմին: Սակայն այն
առաջադիմական երևույթ է այդ երկրների համար, որովհետև, վերջին հաշ-
վով, արտացոլում է արաբ աշխատավոր մասսաների տարերային ձգտումը
դեպի սոցիալիզմ և մի խոստովանություն է այն մասին, որ կապիտալիզմը
համաշխարհային մասշտաբով իրեն սպառել և հեղինակազրկել է: Բացի այդ,
եթե այսօր արաբական երկրների ղեկավարները դնում են ոչ թե «արաբական
կապիտալիզմի», այլ «արաբական սոցիալիզմի» հարցը, ապա այդ ցույց
է տալիս, որ այդ երկրների կյանքում տեղի են ունենում մեծ տեղաշարժեր,
աճում ու հասունանում են դեմոկրատական ուժերը, բարձրանում են աշխա-
տավորական մասսաների գիտակցությունն ու կազմակերպվածությունը և դրա
համեմատ՝ նրանց դերը արաբական երկրների հասարակական-քաղաքական
կյանքում, որոնք և ի վերջո ուղի կհարթեն գիտական սոցիալիզմի համար:

Ն. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Պատմական գիտությունների թեկնածու





# ԱՆՏԱՌԸ ՎԱՌՎՈՒՄ Է[1]

Ավագ քաղղեկ Գևորգ Քացախյանը ականա-
ձիգներին, կապավորներին, սակրավորներին ու
հետախույզներին մի ջոկատի մեջ խմբավորելով
կարգավորեց կապը հենակետերի հետ, հրամա-
նատար նշանակեց ավագ լեյտենանտ Ալեքսեյ
Ֆյոդորովիչ Ռուբցովին և խնդիր դրեց հոյս-
խա լեռան կողմից պաշտպանել դիմադրության
գումարտակային հանգույցների թիկունքը: Ավագ
քաղղեկի շուրջն ստեղծվեց օպերատիվ մի
խումբ:

Թշնամու օղակն ընկած մեր հրաձգային գու-
մարտակները զրկվել էին ռազմամթերք ստա-
նալու և վիրավորներին էվակուացնելու հնարա-
վորությունից: Միակ ելքը շրջանաձև պաշտպա-
նությունն էր, որն իրեն զամեց գերմանացիների
լանցովյան խմբի մի զգալի մասը:

Գրավելով 670-րդ գնդի հրամանատարական
կետը, երկրորդ էշելոնի պաշտպանության շրջան-
ները, գերմանացիները սխալվեցին իրենց հա-
շիվներում: Նրանք թուլացրին ճնշումը մեր գու-
մարտակների վրա, որոնք ետ մղեցին հակա-
ռակորդի ճակատային գրոհները և ուժեղացան
շրջապատումից դուրս եկած, ցաք ու ցրիվ եղած
ստորաբաժանումների հաշվին: Երկրորդ գիշերը
գերմանացիները փոքր-ինչ հանդարտվեցին: Հրա-
ձգությունը դադարեց: Ավագ քաղղեկ Քացախ-
յանը ստորաբաժանումների ղեկավարներին հա-
վաքեց խորհրդակցության:

— Գունդը ցրված է, հրետանի, ականանետներ
չունենք, «մաուզեր» հրացաններով ու մի քանի
գնդացիրներով, այն էլ այսքան քիչ փամփուշտ-
ներով կռվելու հնար չկա, չենք կարող դիմանալ,
հարկավոր է այստեղից դուրս պրծնել,— ասում
էին ոմանք:

— Թշնամին սարսափում է իր թիկունքից,
բայց և վախենում է խորանալ անտառի մեջ:
Չենք գնա, կկռվենք, քանի դեռ ուժ ունենք:
Իսկ փամփուշտը հենց թշնամուց կխլենք,—
պնդում էին ուրիշները:

Բոլորի հայացքներն ուղղված էին Քացախ-
յանին: Նրանք գիտեին, որ այդ բարձրահասակ,
սակավախոս, ակնոցավոր սպան խոսքը քամուն
չի տալիս, սիրում է խորհրդակցել, կարծիքներ
լսել, բայց եթե մի բան վճռեց, էլ առարկու-
թյուն չի ընդունում: Մարտը պահանջում է ամուր
ձեռք, հրամանների անվերապահ կատարում, այլ
կերպ լինել չի կարող...

—Ռազմամթերքը, ուտելիքի պաշարը շատ քիչ
է,— ասաց Քացախյանը,— հակառակորդն ուժեղ
է: Բայց ետ չենք քաշվի, դիրքերը չենք թողնի,
ֆաշիստներին թույլ չենք տա ռեզերվները հովիտ
հասցնել: Պետք է շարունակենք կռվել:

Խորհրդակցությունը որոշեց թշնամուն դի-
մադրել մինչև վերջին շունչը, բարձունքը չհանձ-
նել:

Հրամանատար նշանակվեց մայոր Մելնիկովը,
որն աչքի էր ընկել վերջին կռիվներում, շտաբի
պետ՝ Մերգելոշվիլին, կոմիսար՝ Քացախյանը:
Կրտսեր հրամանատարական կազմը լրացրեց
շարքից դուրս եկած սպաներին:

— Առանց հրամանի ոչ մի քայլ ետ, աննպա-
տակ ոչ մի կրակոց: Յուրաքանչյուր գնդակը
ոսկի է, ամեն մի գնդակ պետք է նպատակին
հասնի:

— Քանի որ այս բարձունքն այդքան կարևոր
է, կմեռնենք, բայց թշնամուն չենք զիջի,— Այս-
պիսի խոհերով էին ապրում ու մարտնչում գնդի
մարդիկ: Ամբողջ գիշերը մինչև լույս Մելնիկովը,
Քացախյանը, Մերգելոշվիլին մեկը մյուսից բարդ
խնդիրներ էին լուծում... ծրագրում անելիքները,
պլանավորում վաղվա օրը:

Անհանգիստ դադար... Զարզուրելի լռություն
ու խավար: Երկնքում չեն փայլում աստղերը,
գլխավերևում լուսավորող հրթիռներ չկան:
Լեռներն էլ ասես համրացել են: Սառած գետինն
է միայն ճաճռում: Խարույկի մասին մտածելն

[1] Այս ակնարկը մի հատված է Հայրենական պատերազմի տարիներին գործող 408-րդ Հայկական դիվիզիայի քաղբաժնի պետ, ներկայումս պահեստի գնդապետ Ս. Սարգսյանի կողմից տպագրության պատրաստվող «408-ը Կովկասի համար մղվող մարտերում» գրքից:

կոծիչների համար։ Ազորյան կղզիների ռազմածովային բազան հարմարեցվա՛ծ է «Պոլարիս» հրթիռներ կրող ատոմային սուզանավերի սպասարկմանը։ ԱՄՆ-ը ավելի քան 100 միլիոն դոլար է ծախսել այդ երկու բազաների սարքավորման վրա։

Ազորյան կղզիների բազաները ԱՄՆ-ի ձեռքն էին ընկել Պորտուգալիայի հետ կնքած այն ռազմական համաձայնագրով, որ ստորագրվել էր 1951 թվականի սեպտեմբերին և հետագայում երկարաձգվել էր մինչև 1962 թվականի դեկտեմբերի 31-ը։ Այդ ժամանակվանից ի վեր համաձայնագիրը պաշտոնապես չէր երկարաձգվում, որքան էլ ԱՄՆ-ը ձգտում էր այդ բանին։ Բայց դա չէր նշանակում, թե Սալազարի կառավարությունը մտադիր էր ամերիկյան զինված ուժերը վռնդել այդ կղզիներից։

Դեռևս 1964 թվականի գարնանը Պորտուգալիայի արտաքին գործերի մինիստր Նոգեյրան հավաստիացնում էր Պենտագոնի ստրատեգներին, թե «Ազորյան կղզիներում ԱՄՆ-ի զինված ուժերի մշտական ներկայությունն ապահովվում է ժամանակավոր համաձայնություններով»։ Սակայն պորտուգալական իշխանություններն իրենց լիովին հաշիվ էին տալիս, թե ավիաբազան ինչպիսի նշանակություն ունի Միացյալ Նահանգների համար և այդ կապակցությամբ ամեն կերպ ձգձգում էին նոր համաձայնագրի պաշտոնական ձևակերպումը, ճգնելով, գլխավորապես, բարձրացնել դրա գինը։ Սկզբում, երբ նոր միայն դրվեց բազաների վարձակալության ժամկետը երկարաձգելու հարցը, նրանք պահանջեցին տարեկան 80 միլիոն դոլար։ Թե կողմերը ինչ գումարի վրա են կանգ առել անցած հոկտեմբեր ամսին, առայժմ չի հաղորդում ո՛չ ամերիկյան, ո՛չ էլ պորտուգալական մամուլը։

Բայց առաջներում էլ պարզ էր, որ Պենտագոնը կանգ չի առնի գնի առջև։ Մանավանդ որ Սալազարի ֆաշիստական դիկտատուրայի անդրօվկիանոսյան հ. վանավորները վերջին ժամանակներս աճող մրցության են հանդիպում Ֆրանսիայի և Արևմտյան Գերմանիայի ռազմամոնոպոլիստական շրջանների կողմից։ Այդ երկրներն այժմ Պորտուգալիային վաճառում են մեծ քանակությամբ զենք և զանազան զինամթերք, որպիսիք Պորտուգալիան նախկինում սովորաբար գնում էր ԱՄՆ-ից։ Ինչպես վերջերս հաղորդեց «Նյու-Յորք թայմսի» Լիսաբոնի թղթակիցը, դա նշանակում է, որ Միացյալ Նահանգները հավանորեն կկորցնեն 50—100 միլիոն դոլար։ Բոլորովին վերջերս Ֆրանսիան պորտուգալական կառավարության հետ կնքեց մի համաձայնագիր՝ Ազորյան կղզիներից մեկում՝ Ֆլորես կղզում եղած բազան օգտագործելու, հրթիռներին հետևելու և ռազմածովային ավիացիան տեղադրելու վերաբերյալ, դրա փոխարեն պորտուգալական ռազմածովային նավատորմին տալով չորս ականակիր և չորս սուզանավ։

Սալազարի կառավարությունը ճգնում է երկիրը կապկպել ամեն տեսակ պայմանագրերով ու «պայմանավորվածություններով» ՆԱՏՕ-ի իր ամենից ավելի ուժեղ դաշնակիցների՝ ԱՄՆ-ի՝ Արևմտյան Գերմանիայի և Ֆրանսիայի հետ։

Ամենաթույլ գաղութատիրական տերությունը՝ Պորտուգալիան, հենց այն պատճառով է մինչև վերջին ժամանակներս կարողանում պահպանել իր գաղութները, որ գլխավոր օգնությունը այդ հարցում նա ստանում է իմպերիալիստական ուժեղ պետություններից, գրում էր վերջերս Դարէս-Սալամում լույս տեսնող «Վիջիլենս» ամսագիրը։ Ինչպես նշում էր այդ ամսագիրը, անգլիական, ամերիկյան և արևմտագերմանական կապիտալի դիրքերը այնքան ուժեղ են Անգոլայում և Մոզամբիկում, որ այդ գաղութները, ըստ էության, դժվար է զուտ պորտուգալական տիրապետություններ համարել։

Ձգտելով պահպանել և ավելացնել իրենց «բաժինը» գաղութային ժողովուրդների շահագործման ասպարեզում օտար, տվյալ դեպքում սալազարյան ցուցանակով, իմպերիալիստական խոշորագույն տերությունները և, ամենից առաջ, ԱՄՆ-ը, նոր գործարքներ են կնքում ֆաշիստական դիկտատորի հետ։

Այդպիսի կործանարար գործարք է նաև Ազորյան կղզիների ռազմական բազաների վարձակալության ժամկետը երկարաձգելու վերաբերյալ ԱՄՆ-ի ու Պորտուգալիայի կառավարությունների այսպես կոչված «պայմանավորվածությունը»։

Լ. ԲՈԲՐՈՎ

## ՖՐԱՆՍԻԱ

## ԻՆՉ Է ՆՇԱՆԱԿՈՒՄ ԱՆՎՍՏԱՀՈՒԹՅԱՆ ՔՎԵ

Ընթացիկ 1965 թվականը պրեզիդենտական ընտրությունների տարի կլինի Ֆրանսիայի համար։ Ուստի, զարմանալի չէ, որ քաղաքական պարտիաները, արհմիությունները, հասարակական կազմակերպությունները ավելի ու ավելի հաճախ են քննարկում այն հարցը, թե դըգոլյան ռեժիմի առաջին վեց տարին ինչ է բերել Ֆրանսիային և ապագայում ինչ է սպասվում երկրին։ Բնակչության առանձին խավերը տարբեր կերպով են գնահատում հինգերորդ ռեսպուբլիկայի անցած ուղին։

Ֆրանսիական խոշորագույն մոնոպոլիաների ներկայացուցիչները, հատկապես նրանք, ովքեր կապված են արտադրության նորագույն ճյուղերի հետ և ներգրավված են միջուկային հարվածային ուժեր ստեղծելու ակտիվ պրոցեսի մեջ, բոլոր հիմքերն ունեն գոհ լինելու կառավարական քաղաքական գծից։

Ֆրանսիական մոնոպոլիաները հուսով են, որ իրենց գործերը հաջող կընթանան նաև հետագայում, համենայն դեպս, անցյալ տարվա վերջերին առաջ քաշված կայունացման պլանը ցույց է տալիս, որ ֆրանսիական կառավարությունը մտադիր չէ նեղություն պատճառելու մոնոպոլիաներին և տրամադրված է բոլոր դժվարությունները դնելու աշխատավորների ուսերին։

Գործարար շրջանների կարծիքով, խոշոր կապիտալի այդ հույսերի իրականացման հաստատ երաշխիքն այն փաստն է, որ Ֆրանսիայի պետական ապարատում ղեկավար դեր են գրավում այդ շրջանների շահերն արտահայտող մարդիկ։ Ամենից առաջ ֆրանսիական մոնոպոլիաների վստահելի անձ է հանդիսանում Ֆրանսիայի պրեմիեր մինիստր Ժորժ Պոմպիդուն։ Վերջին ժամանակներս Պոմպիդուին ավելի ու ավելի համառորեն են անվանում դը Գոլի հավանական հետնորդ պրեզիդենտի պոստում։ Արդեն բավական ժամանակ է, ինչպես նշում է բուրժուական մամուլը, որ Պոմպիդուն սկսել է պարբերաբար երևալ հեռուստացույցների էկրանների վրա և ուղեկցել պրեզիդենտին երկրում կատարած նրա շրջագայությունների ժամանակ։ Ենթադրում են, որ դը Գոլը Լատինական Ամերիկա մեկնելիս Պոմպիդուին նշանակել էր իրեն ժառանգորդ։

Ուստի, երբ 1964 թ. հոկտեմբերին պրեմիեր-մինիստրը Բուրբոնյան պալատ եկավ ազգային ժողովին հաղորդում անելու իր գլխավորած կառավարության գյուղատնտեսական քաղաքականության մասին, նա առանձնապես չէր վախենում առանձին անախորժություններից։ Ֆրանսիայի բուրժուական շրջաններում գտնում էին, որ այլևս չեն կարող կրկնվել այն իրադարձությունները, որպիսիք տեղի ունեցան ազգային ժողովում 1962 թվականի հոկտեմբերի 5-ի լույս 6-ի գիշերը, երբ 280 դեպուտատներ անվստահության քվե տվեցին կառավարությանը։ Այն ժամանակ պրեզիդենտը ցրեց ըմբոստացած ազգային ժողովը։ Այդ ժամանակվանից հետո նոր ընտրություններ են անցկացվել և, թեպետ կառավարող շրջանները չեն ստացել ընտրողների ձայների նույնիսկ կեսը, այնուամենայնիվ դեպուտատական տեղերի կեսից ավելին պատկանում է նրանց։

Սակայն այս անգամ պրեմիեր-մինիստրին վիճակվեց հանդիպել խիստ օպոզիցիայի, որը չափազանց բնորոշ է Ֆրանսիայի արդի ներքին-քաղաքական իրադրության համար։ Պառլամենտի երեք օպոզիցիոն խմբի ներկայացուցիչները կառավարության նկատմամբ անվստահության բանաձև մտցրին։ Օպոզիցիայի բոլոր դեպուտատները միաբերան քվեարկեցին Պոմպիդուի կառավարությանը վստահություն հայտնելու դեմ։ Եվ թեպետ այս անգամ էլ քվեարկության մեքենան գործեց «ժառանգորդի» օգտին, և պրեմիեր-մինիստրը մնաց իր պոստում, այնուամենայնիվ Ֆրանսիայում գտնում են, որ այդ քվեարկության ժամանակ հասարակայնությունը աներկմիտ կերպով արտահայտեց իր բացասական վերաբերմունքը կառավարության քաղաքականության նկատմամբ ոչ միայն գյուղատնտեսության բնագավառում։ Ազգային ժողովում կատարված քվեարկության նշանակությունը դուրս է գալիս եզակի փաստի շրջանակներից։

Հիրավի, Ֆրանսիան վերջին ժամանակներս ապրել է գյուղացիների ոչ միայն «գինու, կարտոֆիլի և կաթի խռովություններ»։ Այնտեղ տեղի են ունենում ուսանողների բազմահազարանոց միտինգներ, որոնք իրենց դժգոհությունն են արտահայտում կառավարության քաղաքականությունից կրթության բնագավառում, դասախոսների և ծառայողների միտինգներ, որոնք պահանջում են ավելացնել աշխատավարձը։ Վերջին տարիներս ամբողջ երկրում տարածվեց բանվորների գործադուլների ալիքը և միայն այդ գործադուլները բավական են բուրժուական պրոպագանդայի այն պնդումները հերքելու համար, թե երկրում մարում է դասակարգային պայքարը։ Ֆրանսիական պրոլետարիատի հզոր ձայնը՝ ածխահատների 35-օրյա գործադուլի և երկաթուղայինների գործադուլի ժամանակ անցյալ տարի ահարեկեց բուրժուազիային, ցույց տալով, որ ֆրանսիական պրոլետարիատը լի է վճռականությամբ շարունակելու պայքարը աշխատավորների քաղաքական և սոցիալ-տնտեսական պահանջները բավարարելու համար։

Այս բոլոր իրադարձությունները վկայում են միայն մի բան. Ֆրանսիայի կառավարող շրջանների քաղաքականությունը գնալով ավելի ու ավելի վճռական կերպով է դատապարտվում ֆրանսիական ժողովրդի լայն շրջանների կողմից։

«Международная жизнь» ամսագիր, 1964 թվ. № 12։

Վ. ԱՆԴՐԵԵՎ

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ՆՐԱՆՔ ԱՆՀԵՏ ՉԿՈՐԱՆ

Մենք միտումնավոր կերպով տվեցինք սույն վերտառությունը գրախոսականին այն գրքի, որ կրում է «Անհայտ կորած մարդիկ» անունը[1]։ Եվ այդ ոչ թե հեղինակին հակադրվելու համար։ Ասենք նման հակադրություն չի էլ կարող լինել, որովհետև, ինչպես գրում է ինքը՝ հեղինակը, «անհայտ կորած անվանումը» պայմանական է՝ կապված այն իրողության հետ, որ «պատերազմի տարիներին այդպես էին կոչում նրանց, ում ճակատագիրը, իրոք, հայտնի չէր»։ Մեր այդ վերտառության նպատակն է պարզապես սկզբից ևեթ զգուշացնել ընթերցողին, որ այս գրքի հերոսները ևս անհայտ չեն կորել, թեև ճակատագրի բերումով և անհատի պաշտամունքի մղձավանջային ծանր շրջանում նրանց անունները տարիներ շարունակ մնացել էին անհայտ։

Առաջին միտքը, որ համակում է ընթերցողին գիրքը կարդալուց հետո, դա հեղինակի նշանաբանն է՝ արտահայտված Յուլիուս Ֆուչիկի հետևյալ խոսքերով. «Մի բան եմ խնդրում ձեզ, դո՛ւք, որ կապրեք այս ժամանակներից հետո։ Չմոռանա՛ք։ Չմոռանաք ո՛չ բարիներին, ո՛չ չարերին։ Համբերությամբ հավաքեցեք վկայություններ նրանց մասին, ովքեր ընկան իրենց համար և ձեզ համար»։ Հեղինակը հավատարիմ է մնացել այդ նշանաբանին։ Նա իրոք համբերությամբ հավաքել է բազում վավերագրեր, հուշեր և այդ բոլորին տալով որոշակի ձև ու ոճ՝ ստեղծել է մի գիրք, որը կարդացվում է մեծ հետաքրքրությամբ։ Նրա նյութերը զուտ արխիվային բնույթի չեն, և ոչ էլ հատկապես արխիվային։ Նա դժվարին և ծանր գործ է կատարել՝ նախ փնտրել, գտել է կենդանի մնացած հերոսներին, խոսել նրանց հետ, գրավոր հուշեր վերցրել...

Նյութեր և փաստեր հավաքելիս հեղինակը չի սահմանափակվել Հայաստանով և Սովետական Միությունով։ Նա նյութեր է ձեռք բերել մեր երկրի սահմաններից դուրս, արտասահմանում ապրող մարդկանցից, որոնք իր հերոսների հետ միասին ճաշակել են ֆաշիստական բանտախցերի դառնությունը և իրենց ուժերի ու կարելության չափ մաքառել ընդհանուր թշնամու դեմ։ Եվ, հիրավի, սովորականից դժվար է ծնվել վավերագրական ակնարկների այս ժողովածուն։ Հեղինակը հանդիպել է հարյուրավոր մարդկանց, թերթել բազմաթիվ հուշագրություններ, ժողովել անտիպ ու տպագիր նյութեր, լուսանկարներ, բախել շատ ու շատ դռներ։ Եվ, ինչպես ասում են, նրա չարչարանքը ապարդյուն չի անցել. հայ ընթերցողի սեղանին նա դրել է բովանդակալից ու ինքնատիպ մի գիրք՝ որպես հերոսական օրերի հերոս մարդկանց մի գողտրիկ հուշարձան։

Մեզանում կարծես թե ընդունելի կանոն է դարձել այսօրինակ թեմաները չոր ու ցամաք, այսպես կոչված, «գիտական» խիստ ոճով շարադրելը։

Այլ ճանապարհով է գնացել Մ. Հակոբյանը։ Նա ընտրել է գեղարվեստական ակնարկի ժանրը, ամենևին չմեղանչելով ոչ գիտականության, ոչ էլ վավերագրային նյութի առջև։ Եվ աշխատությունը շահել է թե՛ ձևով, թե՛ բովանդակությամբ։ Այս գրքի կարևոր արժանիքներից մեկն է։

Ում և ինչի մասին է պատմում Մ. Հակոբյանի գիրքը։ Թեման հայրենական պատերազմն է։ Բայց գործողությունները տեղի են ունենում ոչ թե ռազմաճակատի առաջին գծում, այլ դրանից հեռու՝ ֆաշիստական գնդաններում։ Գործող անձինք գերի ընկած սովետական քաղաքացիներ են, ազգությամբ հիմնականում հայեր։ Գերության անասելի ծանր պայմաններում,

[1] Մ. Հակոբյան, Անհայտ կորած մարդիկ, Երևան, 1964 թ.։



ֆաշիստական համակենտրոնացման ճամբարներում հայ ռազմագերիները կարողանում են ստեղծել իրենց հակաֆաշիստական ընդհատակյա հայրենասիրական կազմակերպությունը և պայքարել թշնամու դեմ։

Ընթերցողը ծանոթանում է ընդհատակում գործող անձնվեր հայրենասերներ Ալեքսանդր Ղազարյանի, Հարություն Խաչատրյանի, Ստեփան Ցաղչյանի, Ավետիս Կարապետյանի, Վահան Վարդանյանի, Արտեմ Բաբայանի, Ալեքսանդր Վարդանյանի, Դավիթ Մինասյանի, Ենոք Խաչատրյանի, Քրիստափոր Ալավերդյանի, Բարթուղ Պետրոսյանի և շատ ու շատ այլ անձանց հետ, որոնք արհամարհելով մահը, հայրենիքի սիրով տոգորված, խիզախորեն մաքառում են ֆաշիստ դահիճների դեմ։ Նրանց գործողության վայրերը Բորիսով-Բենիամինովո, Դեմբլին, Պուլավի քաղաքներն են։ Վարշավայից ոչ հեռու գտնվող Բենիամինովոյի համակենտրոնացման ճամբարում է ծնունդ առնում հայրենասիրական կազմակերպությունը։ Նրա նախաձեռնողները մինչ այդ ստեղծված հայրենասիրական խմբի անդամներն էին։ Պատմելով կազմակերպության անդրանիկ նիստի մասին, հեղինակը ընթերցողին ծանոթացնում է կազմակերպության մշակած ծրագրին, նրա ընտրած բյուրոյին, որի մեջ մտնում էին Ալեքսանդր Ղազարյանը, Ավետիս Կարապետյանը, Դավիթ Մինասյանը, Ստեփան Ցաղչյանը, Վահան Ոսկանյանը (Վարդանյանը), բոլորն էլ սովետական բանակի կադրային սպաներ, որոնք դաժան հանգամանքների բերումով ընկել էին ֆաշիստների ճիրանները։ Կազմակերպության նպատակն էր՝ գերիների շրջանում հակաֆաշիստական պրոպագանդա մղել, ֆաշիստներից թաքցնել քաղաշխատողներին և հրեա ռազմագերիներին, կապ հաստատել ընդհատակում գործող լեհ կոմունիստների, ինչպես նաև տարբեր ազգի ռազմագերիների հետ, հարմար պահին ապստամբել ֆաշիստների դեմ։

Գրքում բավականին հանգամանորեն նկարագրված է հայ ռազմագերիների վիճակը Դեմբլինի (Լեհաստանում) համակենտրոնացման ճամբարում, նրանց մղած ընդհատակյա պայքարը։ Այստեղ ֆաշիստները մոտ հազար հայ ռազմագերիների բաժանում են երեք խմբի։ Չնայած այս հանգամանքը դժվար կացություն ստեղծեց ընդհատակյա կազմակերպության համար, բայց բյուրոյի անդամները տարբեր խմբերում էլ շարունակում էին իրենց գործունեությունը։ Մ. Հակոբյանը փաստական նյութերով ցույց է տալիս, թե ինչպես են ձախողվում ֆաշիստների պլանները՝ Լեհաստանից Մայկոպի մոտ փոխադրված հայ ռազմագերիների գումարտակը սովետական բանակի դեմ շարժելու ուղղությամբ։ Ֆաշիստական հրամանատարությունը տեղեկանում է սովետական բանակի կողմն անցնելու մասին գումարտակի պլաններին և այն ետ է բերում թիկունք ու զինաթափում։ Գումարտակի ընդհատակյա խմբի շատ ղեկավարներ, այդ թվում՝ Ենոք Խաչատրյանը, Ժորա Գրիգորյանը, Գրիշա Հովհաննիսյանը, Արմո Ավետիսյանը և Սերգո Բարսեղյանը կախաղան են բարձրացվում, շատերը դատապարտվում երկարամյա բանտարկության։ Չնայած դրան, գումարտակի մոտ 200 ռազմագերիների այնուամենայնիվ հաջողվում է ճեղքել ռազմաճակատը և միանալ յուրայիններին։

Հեղինակի ասելիքը, սակայն, չի սպառվում դրանով։ Գրքի մի զգալի մասը նվիրված է Դեմբլինում և Պուլավիում հիտլերականների ստեղծած հայկական լեգեոնում գործող հայ հայրենասերների ընդհատակյա գործունեության լուսաբանմանը, լեհ հայրենասերների հետ նրանց հաստատած կապերին, ազգությամբ հրեա սովետական ռազմագերիներին հիտլերականների խոշտանգումներից փրկելու համար ծավալած դժվարին ու վտանգներով լի գործունեությանը։ Ահա այդպիսի բաների համար ֆաշիստները բանտ են նետում տասնհինգ հայ ընդհատակային գործիչների, որոնց թվում նաև Ստեփան Ցաղչյանին ու Ավետիս Կարապետյանին. նրանց ձերբակալությունը թեև ծանր հարված էր ընդհատակյա կազմակերպությանը, բայց վերջինս չդադարեց գործելուց։ Պուլավիում հայ ռազմագերիների պայքարը գնալով նոր թափ է ստանում. ընդհատակյա բյուրոն 1943 թ. ամռանն ու աշնանը պայքարի մեջ է ներգրավում հայ նոր ռազմագերիների, որոնց այլ ճակատներից փոխադրել էին Պուլավի։

Օգտագործելով ակնարկային ժանրի ընձեռած հնարավորությունները՝ հեղինակը հետադարձ հայացք է նետում մի քանի ռազմագերիների կյանքի անցյալ, նախապատերազմյան ուղու վրա և ցույց տալիս, որ նրանք բոլորն էլ եղել են սովետական հասարակարգում դաստիարակված ու կոփված անձնվեր քաղաքացիներ։ Ահա նրանցից մեկը՝ Ավետիս Կարապետյանը։ Փորձված ժուռնալիստի հմտությամբ Մ. Հակոբյանը ընթերցողին տանում է նրա կյանքի ուղիներով... Ավետիս Կարապետյանն ապրում է անցյալի վերհուշը։ Դա բազմահազար հայ որբերից մեկի չարքաշ կյանքի ուղին է. միայն սովետական կարգերի շնորհիվ է նա կարողանում կրթություն ստանալ և դառնում է բանակի սպա։ Պատերազմը Ավետիսը դիմավորում է կապիտանի աստիճանով և աչքի է ընկնում մի շարք մարտերում։ Սեպտեմբերի 20-ին Չենիգովի մոտ ծանր վիրավոր և ուշաթափ Ավետիսն ընկնում է ֆաշիստ դահիճների ձեռքը։ Այդ օրվանից էլ սկսվում է նրա կյանքի ամենածանր շրջանը։

*Մենախցում նա վերհիշում է Գոմելի, Բոբրույսկի մահվան ֆաշիստական ֆաբրիկաները, որոնցից անցնելով եկել հասել էր Բենիամինովո և ապա Պուլավի... բայց ֆաշիստները չհամարձակվեցին գնդակահարել նրան... Ըստ երևույթին հիտլերականները տակավին չէին հրաժարվել հայկական լեգեոնն օգտագործելու մտքից։ Չէ՞ որ այդ գնդակահարությունը կարող էր բորբոքել գերիների ցասումը։ Եվ Ավետիսը կենդանի է մնում։*

*Ուշագրավն այն է, որ այդ օրերի մասին հերոսը պատմում է արդեն Թբիլիսիում՝ իրենց տանը։ Այդ պատմությունը լրացնում են տեխնիկական գիտությունների դոկտոր Ֆրանտիշեկ Դոստալի և բժիշկ Էմիլ Ժալմանի նամակները, մարդիկ, որոնց հետ նա տանջվել է ֆաշիստական զնդաններում և հույս ներշնչել, պայքարի մղել։*

*Գիրքը՝ մարդկային անասելի մաքառումներով, սխրանքներով ու անձնազոհություններով հարուստ մի պատմություն է ֆաշիստական ճիրաններում մարտնչող մեր մարդկանց մասին։ Տարբեր են մարդիկ, բայց կա բնավորության մի գիծ՝ անսահման նվիրվածությունը սովետական հայրենիքին, որն ընդհանուր է բոլոր հերոսների համար։*

*Գրախոսվող աշխատությունը առաջինն է, որ վեր է հանում հայ ռազմագերիների ընդհատակյա պայքարի հերոսական պատմությունը, որի լուսաբանումը դժվարին ու պատասխանատու, բայց և պատվավոր գործ է։ Բնավ նպատակ չունենալով ստվեր գցելու հեղինակի տքնաջան և գովելի աշխատանքի վրա, պետք է նշենք, որ գրքի ընթերցումից հետո ծագում են մի քանի հարցեր, որոնց հեղինակը չի պատասխանել։*

*Ինչպես նշվեց, հեղինակը պատմում է այն մասին, որ ֆաշիստական զինվորական տրիբունալը բանտարկել էր մի խումբ հայրենասերների՝ նախ Մայկոպում և ապա՝ Պուլավիում։ Վեր հանելով նրանցից մեկի՝ Ավետիս Կարապետյանի տոկունությունը, նրա անդուլ պայքարը ֆաշիստական 14 զնդաններում, ցույց տալով, թե ինչպես նա իր օրինակով պայքարի է կոչել ուրիշների, մասնավորապես չեխ ու գերմանացի կալանավորների, աչքաթող է արել մյուսներին։ Հարց է առաջանում. հապա մյուսնե՞րը՝ Արսեն Բաբայանը, Վահան Վարդանյանը, Ռուբեն Գալստյանը, Անդրես Բաշիկյանը և ուրիշներ։ Գրքում ոչ մի խոսք չկա նրանց հետագա ճակատագրի մասին։ Ընթերցողը ցանկանում է իմանալ, թե նրանցից ո՞վ վիճակվեց ողջ մնալ, շարունակել պայքարը, ինչպե՞ս և որտե՞ղ։*

*Ժամանակին մամուլում հենց նույն գրքի հեղինակի հրապարակած մի ակնարկից մեզ հայտնի է երրորդ գումարտակի հայրենասերների ընդհատակյա ուշագրավ գործունեությունը նաև Լեհաստանում և ապա Կիրովոգրադի մարզում։ Այդ գումարտակի մի խումբ հայրենասերներ, Գալուստ Ստեփանյանի և այլոց գլխավորությամբ, անցնելով մարզում գործող պարտիզանների կողմը, խիզախության հիանալի օրինակներ են ցույց տվել։ Անհասկանալի է, թե ինչու հեղինակը չի խոսել նրանց մասին, չի տվել նրանց պայքարի պատմությունը։*

*Հեղինակը հետևողականություն չի ցուցաբերել նաև հայ ընդհատակայինների կապը լեհ հայրենասերների հետ լուսաբանելու հարցում։ Թվում է, թե գիրքը կշահեր, եթե հեղինակը գրքի մեկ-երկու ձգձգված հատվածների հաշվին, ոչ թե միայն նշեր հայ և լեհ հայրենասերների համագործակցության մասին, այլ ցույց տար և փաստերով հիմնավորեր այդ, մանավանդ որ հեղինակը գրում է, թե շատ հայ մարտիկներ են մասնակցել լեհ պարտիզանների մղած պայքարին։*

*Ընտրելով վավերագրական ակնարկի ժանրը, հեղինակն անկասկած, շատ դժվարությունների է հանդիպել։ Հեղինակը ձգտել է նյութը տալ այնպես, որ այն հեշտ ընթերցվի։ Չնայած դրան, դեռ որոշ աշխատանք պահանջվում է, որպեսզի վավերականությունը պահպանելով հանդերձ գրքի առանձին հատվածներ չկորցնեն իրենց գեղարվեստական մակարդակը։*

*Գիրքը կարդալուց հետո զգում ես, որ Հակոբյանը դեռևս ասելու բան շատ ունի, մանավանդ «նոր երկնքի տակ, նոր իրադրության մեջ» հայ ռազմիկների գործունեության մասին։ Այդ նոր երկինքը հարավային Ֆրանսիան էր, Չեխոսլովակիան, Հոլանդիան և այլ վայրեր, ուր ֆաշիստները տեղափոխեցին նրանց։*

*Ընթերցողը հաճույքով սպասում է ուշագրավ և արժեքավոր այս գրքի հեղինակի այդ նոր խոսքին։*

*Վ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

# ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ

*Վերջերս խմբագրությունը նամակներ ստացավ երեք ուսուցիչներից (Վ. Սերոբյան, Զ. Գևորգյան և Խ. Պետրոսյան), որոնք խնդրում էին մամուլի էջերում մտքերի փոխանակություն կազմակերպել իրենց հուզող հարցերի շուրջ։ Նշված նամակների հիմնական առանցքը՝ դա ուսուցչի ու աշակերտի փոխհարաբերությունն է, որի տարբեր ըմբռնումը ակներև է և այդ նամակներում։*

*Խմբագրությունը գտավ նպատակահարմար այդ հարցի ստեղծագործական քննարկումը վարել, հաշվի առնելով երեք նամակներում շոշափված խնդիրները։ Միաժամանակ անհրաժեշտ համարեց դրանք ի մի բերել և քննարկման մոտավոր պլանը հրապարակել այն ընկերների համար, որոնք կուզենային հանդես գալ ամսագրի էջերում։ Ցանկալի կլիներ, որ հանդես եկող ընկերները, հնարավորին չափ, արծարծեին ներքոհիշյալ պլանում տեղ գտած հարցերը, որոնց պատասխանը սպասում են վերոհիշյալ նամակների հեղինակները։*

## ՈՒՍՈՒՑԻՉՆ ՈՒ ԱՇԱԿԵՐՏԸ

### 1 Սովետական ուսուցչի կերպարը

ա) հարուստ և բազմակողմանի գիտելիքներ.
բ) կայուն գիտական աշխարհայացք.
գ) մանկական հոգու իմացություն և վարվեցողության տակտ.
դ) ոչ միայն ուսուցող, այլև հեղինակավոր դաստիարակ.
ե) հմայիչ մարդ և օրինակելի քաղաքացի.
զ) աշակերտի ընկեր և ոչ թե հրամայող.
է) մանկասիրության դերը ուսուցչի հեղինակության գործում.
ը) ուսուցչի և աշակերտի անհատականությունների բախումը և դրա տխուր հետևանքները.
թ) հիշաչար ուսուցիչ և չարաճճի աշակերտ.
ժ) ուսուցչի կերպարը որպես աշակերտի անմիջական իդեալ.

### 2 Այսօրվա աշակերտը

ա) մեծ փոփոխություններ արդի մանկական աշխարհում և սահմանափակ մտածողության տեր ուսուցիչը.
բ) մանկական հոգեկան աշխարհի շրջանակների ընդլայնումը և դասագրքերի նեղ շրջանակները.
գ) մանուկների ֆիզիկական և մտավոր վաղաժամ հասունության տենդենցը.
դ) պատանիների ինքնության և ինքնագործունեության զարգացումը և ուսուցչի անտարբերությունը.
ե) մանկական ներքնաշխարհի դինամիկան և որոշ ուսուցիչների նահապետական մտավոր ստատիկան.
զ) աշակերտը որպես ընտանիքի տրամադրությունների արտահայտիչը դըպրոցում.

է) պատանու բնավորության դաստիարակությունը և նրա ինքնադաստիարակության մեթոդները.

ը) գնահատականները և ուսումնական քննությունները որպես ապաշնորհ ուսուցչի ներգործուն «զենք»:

թ) ի՞նչ պետք է սովորի ուսուցիչն աշակերտից.

*Ահա այն հարցերը, որոնք արտացոլվել են ստացված նամակներում։ Հրապարակելով դրանք սույն պլանում ամփոփված, խմբագրությունը հրավիրում է ամսագրի ընթերցողներին արտահայտվել այս ամենի շուրջ՝ դուրս գալով մանկավարժական դոգմաների սահմաններից։ Եթե հոդվածագիրները խույս տան վերացական դատողություններից և իրենց մտքերը փաստարկեն տվյալ դպրոցի և մանկավարժական կոլեկտիվի այսօրվա փորձից ելնելով, կարելի է հուսալ, որ մտքերի փոխանակությունն արդյունավետ կլինի։*

*«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ*
*ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ*

---

*ՈՒՂՂՈՒՄ*

*Մեր ամսագրի 1964 թ. № 12-ի 40-րդ էջի ներքևից 23-րդ տողից պետք է կարդալ «1950 թվականին մարդատար ավտոտրանսպորտով փոխադրվել են 9982, 1960 թվականին՝ 91607, իսկ 1964 թվականին՝ 170800 հազար ուղևոր». 41-րդ էջի 3-րդ ենթավերնագիրը՝ «Տրանսպորտի աշխատանքում գլխավորը էկոնոմիան է» ու այնուհետև ինչպես տեքստում։*

---

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԳՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր)
ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ս., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ.,
ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ.,
ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ս. Մ.,
ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.:

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Լ. ԽՈՒԴՈՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02 24

*Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении тел. 2-02-24*

Տիրաժ 9400 Գինը 25 կոպ.

ՎՖ 05293 Պատվեր 3577

Ստորագրված է տպագրության 29/XII 1964 թ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ:

*Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։*

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Ընտիր երկեր *երեք հատորով, հատոր երկրորդ։ Ե., Հայպետհրատ. 1964 թ., 984 էջ։*

*Հատորում զետեղված են այն աշխատությունները, որոնք գրվել են 1918 թ. հուլիսից մինչև 1923 թ. մարտն ընկած ժամանակամիջոցում։ Վ. Ի. Լենինը այդ աշխատություններում մշակում է մարքսիստական ուսմունքի կարևորագույն դրույթները, լուսաբանում սոցիալիստական հայրենիքի պաշտպանության հարցերը, գծում սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ուղիները, ձևակերպում է կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականության, Սովետական Միության արտաքին քաղաքականության սկզբունքները և այլն։*

Դիալեկտիկական մատերիալիզմի հարցերը: *«Միտք» հրատ, 1964, 345 էջ։*

*Ժողովածուում զետեղված են մի խումբ հեղինակների հոդվածները դիալեկտիկական մատերիալիզմի կարևորագույն հարցերի մասին։ Գիրքը ձեռնարկ է ԲՈՒՀ-երի ուսանողների և ինքնուրույն ուսումնասիրողների համար։*

Բանվոր դասակարգի միջազգային ռևոլյուցիոն շարժումը *(I ինտերնացիոնալի հարյուրամյակի առթիվ)։ Մ. Պետքաղհրատ, 1964, 440 էջ։*

*ՍՍՌՄ գիտությունների ակադեմիայի համաշխարհային տնտեսության և միջազգային հարաբերությունների ինստիտուտի մի խումբ աշխատակիցների պատրաստած այս ժողովածուում կկարդաք համաշխարհային սոցիալիստական ռևոլյուցիայի նախադրյալների ու շարժիչ ուժերի, բանվոր դասակարգի համաշխարհային պատմական դերի, միջազգային ռևոլյուցիոն շարժման վերելքի, մարքսիզմ-լենինիզմի հաղթական ընթացքի և այլ հարցերի մասին։*

Վ. Կ. ՉԱԼՈՅԱՆ—Հայկական ռենեսանս: *Ե., Հայպետհրատ, 1964, 353 էջ։*

*Սա առաջին խոշոր մենագրությունն է ոչ եվրոպական ժողովուրդներից մեկի վերածնության դարաշրջանի մասին։ Հեղինակը կրոնի, փիլիսոփայության, գրականության և արվեստի նյութերի հիման վրա բազմակողմանիորեն քննարկում է հայկական վերածնության հարցերը՝ կապված երկրի համապատասխան ժամանակաշրջանի սոցիալ-տնտեսական պատմության հետ։*

Ի. Ի. Զիլբերֆարբ—Շարլ Ֆուրիեի սոցիալական փիլիսոփայությունը և նրա տեղը 19-րդ դարի առաջին կեսի սոցիալիստական մտքի պատմության մեջ: *Մ., «Наука» հրատ., 1964, 556 էջ։*

*Ուսումնասիրությունը նվիրված է Շարլ Ֆուրիեի գաղափարական ժառանգության այն կողմին, որ Էնգելսն անվանել է «սոցիալական փիլիսոփայություն»։ Գրքում խոսվում է այդ փիլիսոփայության էության, ծագման, զարգացման և Ֆրանսիայում, Եվրոպայում ու այլ երկրներում նրա ազդեցության տարածման մասին՝ որպես գիտական սոցիալիզմի աղբյուրներից մեկի։*

Ս. Ս. ԴԱՆԳՈՒԼՈՎ—Լենինը խոսում է Ամերիկայի հետ: *Ե., Հայպետհրատ, 1964, 343 էջ։*

*Արխիվային փաստաթղթերի, հուշագրությունների և այլ նյութերի հիման վրա հեղինակը ընթերցողին է ներկայացնում Վ. Ի. Լենինի կյանքի ու գործունեության վառ պատկերներ և ուշագրավ դեպքեր։*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՎԻՏԱՄԻՆՆԵՐ ՄՆԱՑՈՐԴՆԵՐԻՑ

*Առաջինը Մերձբալթիկայում, Կալկունի սպիրտի գործարանում շարք մտավ $B_{12}$ վիտամինի արտադրության մեքենայացված ցեխը։ Այդ վիտամինի մեկ գրամը բավական է 50 տոննա խտացված կերը մշակելու համար։ Զնչին դոզաներով ավելացվելով անասնակերին, այն նպաստում է խոզերի և ընտանի թռչունների աճին։ Այդ գործարանում վիտամին $B_{12}$ ստացվում է սպիրտի արտադրության մնացուկներից։ Թեև նոր ցեխի տարեկան արտադրանքը մոտ 55 կիլոգրամ է, բայց այդ բավական է մերձբալթյան երեք ռեսպուբլիկաների կոլտնտեսությունների ու սովխոզների անասնապահական ֆերմաներում օգտագործվող կերի վիտամինացման համար։*

## ՎԻԲՐԱՑԻԱՅԻ ՉԱՓԻՉՆԵՐ

*Վիբրացիան լայնորեն օգտագործվում է երկաթբետոնային շինվածքների արտադրության, բժշկության մեջ և գիտական հետազոտություններում։ Սակայն այն ո՛չ միայն օգուտ է բերում, այլև վնաս։ Հատկապես մեր՝ բարձր արագությունների և հզորությունների դարում, այն ժամանակից շուտ է շարքից հանում սարքավորումները։ Ուստի, անհրաժեշտ է հըսկողություն և հետևապես՝ վիբրացիայի չափում։ Վիբրացիայի չափիչ սարքավորումների մշակմամբ զբաղվում է ՍՍՌՄ գիտությունների ակադեմիայի Սիբիրի բաժանմունքի ավտոմատիկայի ու էլեկտրամետրիայի լաբորատորիաներից մեկը. Նրա աշխատակիցներն ստեղծել են պորտատիվ և հուսալի սարքեր, որոնց միջոցով հնարավոր է չափել վիբրացիայի տատանումը 0,001 միլիմետրից մինչև 3 մետր։ Դրանով կարելի է չափել և՛ սեղանի տատանումները, երբ նրա վրա ընկնում է ծծիչ թուղթը, և՛ նավի ճոճումը փոթորկի ժամանակ։*

## ԼԱՄԻՆԻՆ—ԴԵՂԱՆՅՈՒԹ ՀԻՊԵՐՏՈՆԻԱՅԻ ԴԵՄ

*Հայտնի է, որ լամինարիա տեսակի գորշ ծովային ջրիմուռը պարունակում է ինչ-որ նյութ, որն իջեցնում է արյան ճնշումը։*

*Ճապոնական հետազոտող դոկտոր Ցունեմացու Տակեմոտոյին հաջողվել է ջրիմուռից անջատել սուբստանցիա, որն ստացել է լամինին անունը։ Կենդանիների վրա կատարված փորձերը ցույց են տվել, որ լամինինը խիստ արդյունավետ կերպով բուժում է հիպերտոնիան։ Դժբախտաբար, դեռևս փոքր է այն հիվանդների թիվը, որոնց վրա փորձարկվել է լամինինի ազդեցությունը, որը թույլ չի տալիս վերջնական եզրակացություն անել նոր դեղանյութի արդյունավետության մասին։*

*Բանն այն է, որ ջրիմուռից ստացած լամինինի քանակը շատ փոքր է։ Սակայն դոկտոր Տակեմոտոն գտնում է, որ հնարավոր է լամինին ստանալ նաև արհեստական եղանակով, քանի որ նրա մոլեկուլը համեմատաբար պարզ է (9 ատոմ ածխածին, 22 ատոմ ջրածին, 3 ատոմ թթվածին և 2 ատոմ ազոտ)։*

## ՀՈԴԵՐ ՊԼԱՍՏԻԿԱՅԻՑ

*Նովոսիբիրսկի տուբերկուլյոզի գիտահետազոտական ինստիտուտի գիտնականները մշակել են վիրահատման նոր տեսակ, որը կոչվում է ալոարտրոպլաստիկա։ Այդ օպերացիայի ժամանակ վիրահատման դանակը թափանցում է հոդի ներսը, հեռացնում տուբերկուլյոզային օջախը և հոդի վնասված մասը փոխարինում է պենոպոլիվինիլֆորմալ պլաստիկայով։ Վիրահատման ժամանակ պլաստիկայի թերթիկը դրվում է տուբերկուլյոզային օջախից մաքրված ոսկորի կամ կրճիկի վրա։ Տակոտկեն պլաստիկան արագ միահյուսվում է միացնող հյուսվածքին, և հոդն սկսում է աշխատել»։*